## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկեճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մատենությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և . յաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Նույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ 1971

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание





# ՊԱՏՄԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՆՈՐ ՓՈՒԼ

Վերջերս ավարտված ՍՄԿԿ XXIV համագումարը սոցիալ-տնտեսական և կուլտուր-քաղաքական արմատական հարցերի համակողմանի լուծմամբ, նոր, առավել բարձր փուլ նշանավորեց կոմունիզմի կառուցման ճանապարհին: Լիովին հավանություն տալով Կենտկոմի քաղաքական գծին ու գործունեությանը, համագումարը միաժամանակ անհրաժեշտ համարեց ընդգծել, որ անցած հնգամյակում սովետական ժողովուրդը մեծ նվաճումներ ունեցավ նոր կյանքի կառուցման բոլոր մարզերում: Այդ անկապտելի մեծ նվաճումները համագումարն ամփոփեց հետևյալ կերպ. «Հաշվետու ժամանակաշրջանի կարևոր նվաճումն այն է, որ ժողովրդական տնտեսության հետագա զարգացումն ու երկրի պաշտպանության ամրապնդումը զուգորդվել են քաղաքի և գյուղի աշխատավորների բարեկեցության նշանակալի աճի հետ»: Սրա հետ միասին, հաջողությամբ են զարգացել սոցիալիստական հասարակական հարաբերությունները, սովետական դեմոկրատիան: Ավելի են ամրապնդվել բանվորների, կոլտնտեսականների և մտավորականության բարոյա-քաղաքական միասնությունը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը:

Ինչ խոսք, որ կուսակցության նախորդ համագումարից առ այսօր երկրի ներքին կյանքում, ինչպես և համաշխարհային հեղափոխական շարժման մեջ մեծապես աճել է ՍՄԿԿ՝ որպես ժողովրդի ամենագիտակից ու ղեկավար առաջամարտիկի հեղինակությունը:

Համագումարը, անդրադառնալով կոմունիստական ուժերի համագործակցության միասնությանը, հետևյալ որոշումն ընդունեց. «Այսուհետև ևս ամրապնդել ու զարգացնել համագործակցությունը սոցիալիստական պետությունների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ, մի բան, որից առաջին հերթին կախված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի միասնությունն ու համախմբվածությունը»: Կոմունիստական և բոլոր առաջավոր հասարակական ուժերի միահամուռ գործողությունը եղել ու մնում է իմպերիալիստական դավերի խափանման, հակակոմունիզմի մերկացման, աջ ու ձախ ռևիզիոնիզմի ու նացիոնալիզմի դեմ պայքարելու հուսալի գրավականը:

Համագումարն այն հաստատ համոզումը հայտնեց, որ հասարակական ընթացքի ներկա փուլում ապարդյուն են կապիտալիզմի փորձերը՝ կայունացնելու իր հանրակարգը: Ընդհակառակը, «Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը շարունակում է խորանալ: Պետական մոնոպոլիստական զարգացումը տանում է դեպի կապիտալիզմի բոլոր հակասությունների սրում, դեպի հակամոնոպո-

չիստական պայքարի վերելք: Այդ պայքարում իբրև առաջատար ուժ հանդես է գալիս բանվոր դասակարգը, որն ավելի ու ավելի է դառնում բնակչության աշխատավորական բոլոր խավերի ձգողության կենտրոնը: Բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների խոշոր ելույթները դասակարգային նոր մարտերի նախագուշակներն են, որոնք կարող են հանգեցնել հասարակական հիմնարար վերափոխությունների, աշխատավորների մյուս խավերի հետ դաշնակցած բանվոր-դասակարգի իշխանության հաստատման: Շարունակում են սրվել հակասությունները կապիտալիստական տարբեր պետությունների միջև»:

Համագումարի ծրագրային սույն դրույթը պետք է դառնա հետագա մեր գործունեության հուսալի ուղեցույցը: Տակավին Լենինն է նշել, որ սոցիալիզմի գործնական ամեն մի առաջխաղացում անկասելիորեն խորացնելու է կապիտալիզմի հոգեվարքի տագնապալի ընթացքը: Ահա թե ինչու աշխարհի նշանակալի մասում վաղուց հաստատված սոցիալիզմի անսասանությունը, բուրժուական աշխարհի ծոցում առնացող հեղափոխական ուժերի վերընթացը, ազգային-ազատագրական շարժումների ուռճացող ալիքը մի անգամ ևս ակներև են դարձնում իմպերիալիզմի զահավիժման անխուսափելիությունը:

Բարձր գնահատելով Կենտկոմի ու սովետական կառավարության անդուլ գործունեությունը ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման բարենպաստ արտաքին պայմաններ ապահովելու ասպարեզում, համագումարը հանձնարարեց Կենտկոմին, այսուհետև ևս վարել պատերազմի ու ագրեսիայի իմպերիալիստական քաղաքականությանը վճռականորեն հակազդելու, խաղաղության և ժողովուրդների ազատության գործը պաշտպանելու կուրս: Համագումարը միաժամանակ նշեց, որ պետք է շարունակել ամերիկյան ագրեսորների դեմ ծավալված Վիետնամի, Լաոսի ու Կամբոջայի ազատագրական մաքառումների և Իսրայելի ագրեսիայի դեմ ծառացած արաբական ժողովուրդների պայքարին համակողմանիորեն աջակցելու քաղաքականությունը, Եվրոպայի անվտանգության ապահովման, տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության ռեալիստական կուրսը:

Համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը հատկապես ընդգծեց, որ անցած տարիներին ավելի է ամրապնդվել մեր հայրենիքի միջազգային դրությունը, աճել է նրա հեղինակությունը և հուսալիորեն ապահովված է սովետական մարդկանց խաղաղ աշխատանքը:

II

ՍՄԿԿ XXIV համագումարը միահամուռ նշեց, որ անցած հնգամյակում Կենտկոմը շատ ջանքեր է թափել երկրի տնտեսության ղեկավարման կատարելագործման նպատակով, որ «բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության, բոլոր աշխատավորների անձնվեր ջանքերի շնորհիվ, նոր, խոշոր քայլ է արված կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի բարեկեցության բարձրացման, երկրի հզորության ամրապնդման գործում»: Այս բանի լավագույն ապացույցն այն է, որ կուսակցության XXIII համագումարի սահմանած տնտեսական գլխավոր ցուցանիշները՝ ազգային եկամտի աճի, արդյունաբերական արտադրանքի ավելացմանն ու աշխատավորների բարեկեցության բարձրացմանը վերաբերող կարևորագույն առաջադրանքները գերակատարվել են: Ուստի, համագումարը գոհունակությամբ հավաստեց այն իմաստալի փաստը, որ անցած հինգ տարիներին



ոչ միայն աճել են էկոնոմիկայի մասշտաբները, այլև նշանակալի չափով բարելավվել են արտադրանքի որակական ցուցանիշները: Դեռ ավելին, ազգային եկամտի ու հանրային աշխատանքի արտադրողականության աճին զուգընթաց, մեր երկրում մեկ ու կես անգամ ընդլայնվել է արդյունաբերական արտադրանքի ծավալը, առավել մերձեցել են արտադրամիջոցների ու սպառման առարկաների արտադրության աճի տեմպերը և ակներև խորացել է գիտա-տեխնիկական հեղափոխությունը:

Ութերորդ հնգամյակի անվիճելի հաջողությունների շարքին պետք է դասել նաև գյուղատնտեսության կզալի առաջխաղացումը: Գյուղատնտեսական մթերքների արտադրության նշանակալի աճը և նրա նյութա-տեխնիկական բազայի հագեցման նպատակով իրագործված խոշոր միջոցառումները կզալիորեն ամրապնդել են կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան:

Կապիտալ շինարարության վիթխարի պլանի կենսագործմամբ, հիմնական արտադրաֆոնդերի նորացմամբ, տրանսպորտի ու կապի բոլոր տեսակների կարգացմամբ, արտադրաուժերի հաջող տեղաբաշխմամբ այժմ առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվել հայրենիքի ողջ տնտեսության հետագա բուռն ծաղկման համար: Կուսակցության համագումարն առանձնապես շեշտեց այն էական հասումները, որոնք ձեռք են բերվել հասարակական առաջընթացի հիմնական ցուցանիշների կատարման ոլորտում: Միայն 60 մլրդ ռուբլու շինարարական պլանի կենսագործումն ինքնին խոսում է մեր առաջընթացի աննախադեպ մասշտաբների մասին:

Սակայն համագումարը կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց այն հույժ կարևոր իրողության վրա, որ շատ խոշոր հաջողությունների հետ մեկտեղ, մեր կյանքի տարբեր մարզերում դեռևս կան լուրջ թերություններ: Այսպես, օրինակ, անցյալ հնգամյակում լրիվ չեն կատարվել արտադրական նոր կարողությունների գործարկման պլանները: Տակավին մեծ են արդյունաբերական օբյեկտների կառուցման և յուրացման ժամկետները և այլն: Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը հանգամանորեն բացահայտեց մեր տնտեսական շինարարության էական թերությունները, դրանց հարուցող պատճառները և նշեց դրանց հաղթահարման եղանակները: Ելնելով դրանից, կուսակցության համագումարը պարտավորեցրեց կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական մարմիններին ու ձեռնարկությունների ղեկավարներին՝ անհրաժեշտ միջոցներ ձեռք առնելու գոյություն ունեցող թերությունները վերացնելու և աշխատավորների ջանքերն ուղղել հանրային արտադրության հետագա արագ աճի, իններորդ հնգամյա պլանի հաջող կատարման համար:

Անդրադառնալով հայրենի արտադրության երկու ստորաբաժանումների զարգացման տեմպերի համամասնության պրոբլեմին, Լ. Ի. Բրեժնևն անհրաժեշտ համարեց ընդգծել, որ, «Սահմանելով սովետական մարդկանց եկամուտների էական բարձրացման, բնակարանային շինարարության ընդլայնման, քաղաքների ու գյուղերի բարեկարգման միջոցառումները, Կենտրոնական կոմիտեն գտնում է, որ այսօր առանձին նշանակություն է ստանում նաև *պարենային և արդյունաբերական ապրանքներով, ինչպես նաև սպասարկումներով բնակչության հարաճուն վճարունակ պահանջարկն ապահովելու* խնդիրը: Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը պետք

է աճի ավելի արագ տեմպերով, քան սովետական մարդկանց դրամական եկամուտները»:

Ինքնին հասկանալի է, որ այս կարևոր խնդրի լուծումը սերտորեն առնչվում է այն համամասնության հետ, որն առկա է արտադրամիջոցների ու սպառման միջոցների արտադրության միջև: Այս առթիվ Լ. Ի. Բրեժնևը եզրակացրեց. «Կուտակված արտադրապոտենցիալը, Կենտրոնական կոմիտեի կարծիքով, հնարավորություն է ընձեռում նոր հնգամյակում որոշ չափով գերազանցել «Բ» խմբի աճի տեմպերը, որը թույլ կտա ապահովել աշխատավորների բարեկեցության նախատեսված վերելքը: Այդ միջոցառումը, իհարկե, չի փոխում արտադրամիջոցների արտադրության ավելի արագ կարգացման մեր ընդհանուր գիծը: Սահմանելով երկու ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերակցությունը, կուսակցությունը, ինչպես սովորեցրել է Լենինը, ելնում է յուրաքանչյուր առանձին փուլի կոնկրետ պահանջմունքներից և ռեալ հնարավորություններից»:

Այսպիսով, հայրենի երկրի ծանր ինդուստրիայի կարգացման գերազանց տեմպերն անհրաժեշտություն են նաև նոր հնգամյակում, որը թելադրվում է ոչ միայն ողջ տնտեսության համաչափ կարգացման անհրաժեշտությամբ, այլև սոցիալիզմի պաշտպանության կենսական շահերով:

Այստեղ կարևոր է հիշատակել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության կարգացման արդի փուլի այն հիմնական առանձնահատկությունները, որոնց անդրադարձավ Լ. Ի. Բրեժնևը, հատկապես ընդգծելով այն կարևոր իրադրությունը, որ այժմ անհամեմատ ընդլայնվել են մեր տնտեսության մասշտաբները, զգալիորեն մեծացել են կարգացման նյութա-տեխնիկական հնարավորությունները ու պոտենցիալ կարողությունները: Սրա հետ մեկտեղ մեծացել են նաև տնտեսությանը ներկայացվող հասարակության պահանջները, արագորեն բարդանում են պլանավորման, կառավարման ու տնտեսավարման պահանջները, ավելի է սերտանում էկոնոմիկայի բոլոր օղակների փոխադարձ կախվածությունը, ավելի արագ է ծավալվում գիտա-տեխնիկական հեղաշրջումը, արագ թափով է ընթանում սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացման պրոցեսը և, վերջապես, ավելի է ուժեղացել երկու սիստեմների տնտեսական ու գիտա-տեխնիկական մրցակցությունը:

Նոր, իններորդ հնգամյակը համագումարի սահմանմամբ՝ կոմունիզմի կառուցման այն նոր փուլն է լինելու, որի ընթացքում ապահովվելու է «ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելք՝ սոցիալիստական արտադրության կարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտա-տեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա»: Այստեղից հետևում է այն օրենքը, որ աշխատավորության բարօրության էական բարձրացումը եղել ու մնում է ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության գերագույն նպատակը, մի նպատակ, որը պահպանում է իր նշանակությունը ո՛չ միայն ընթացիկ հնգամյակում, այլև հետագա տարիներում:

Ելնելով ծրագրային այդ դրույթից, համագումարն անհրաժեշտ գտավ նոր հնգամյակում բարձրացնել բնակչության ռեալ եկամուտները, ապահովել սպառման հանրային ֆոնդերի հետագա աճը, զգալիորեն ավելացնել արդյունաբերական և պարենային ապրանքների արտադրությունը բնակչության սպառման համար, բարելավել դրանց որակը, կարգացնել սպասարկման ոլորտի ճյուղերը, ծավալել բնակարանային, կոմունալ և կուլտուր-կենցաղային շինարարությունը: Հանգուցային այս խնդիրների լուծման համար այժմ մեր երկիրն ունի բոլոր անհրաժեշտ նախադրյալները:



Հիմնավորելով ՍՍՀՄ կարգացման համակողմանի նոր ծրագիրը, համագումարն անհրաժեշտ համարեց հատկապես ընդգծել, որ ժողովրդի բարեկեցության բարձրացման պարտադիր պայմանը՝ նյութական արտադրության, նրա արդյունավետության և հանրային աշխատանքի արտադրողականության անշեղ աճն է: Որպես կուսակցության կամքի ու ժողովրդի շահերի անմիջական մարմնացում, համագումարի որոշումներն արտացոլում են արդի կարգացման ամենակենսական և հրատապ պահանջները: Նոր հնգամյակի վերաբերյալ իր որոշման մեջ համագումարն ընդգծում է, որ անհրաժեշտ է «...ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ տեմպեր և համամասնական կարգացում, զգալիորեն ավելացնել ազգային եկամուտը՝ հանրային արտադրության աճի և ժողովրդի բարեկեցության բարձրացման աղբյուրը, բարելավել արտադրաուժերի տեղաբաշխումը, կարգացնել բոլոր միութենական հանրապետությունների էկոնոմիկան, ավելի արագորեն յուրացնել երկրի արևելյան շրջանների բնական հարստությունները»:

Վիթխարի այս պրոբլեմների լուծման շահերը հրամայաբար թելադրում են առանձնահատուկ ուշադրություն նվիրել կապիտալ շինարարության ընթացքին, կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացմանը, դրանց համակենտրոնացմանը, կառուցվող օբյեկտների թվին, շինարարության ժամկետների կրճատմանը, սկսված օբյեկտների ավարտմանն ու արտադրության արդիականացմանը: Հասկանալի է, որ համագումարի այս ծրագրային դրույթները գործնական ուղեցույց են ծառայելու մեր շինարարների, պլանավորողների և տնտեսավարների համար:

Հավանություն տալով գյուղատնտեսության կարգացման ՍՄԿԿ Կենտկոմի մշակած կոմպլեքսային ծրագրին, համագումարը նշեց, որ գյուղատնտեսության վերելքը համաժողովրդական գործ է և որ նոր հնգամյակի կարևորագույն խնդիրներից է մնում՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի ավելացումը, բնակչության սննդամթերքի և արդյունաբերության հումքի հարաճուն պահանջմունքների լրիվ բավարարումը, գյուղատնտեսական արտադրության համակողմանի ինտենսիվացումը, դրա նյութա-տեխնիկական բազայի ամրապնդումը, հացահատիկի արտադրության և անասնապահական մթերքների հետագա աճը, արտադրապրոցեսների մեքենայացումը, քիմիացումն ու մելիորատիվ աշխատանքների ընդլայնումը, ինչպես նաև հողի, տեխնիկայի, նյութական և աշխատանքային բոլոր միջոցների օգտագործումը, անասնապահության կերի բազայի ամրապնդումը և դրա մթերատվության բարձրացումը:

Սահմանելով գյուղատնտեսության ասպարեզում կարևորագույն և լուծման կարոտ վերոհիշյալ խնդիրները, կուսակցության XXIV համագումարը գործի կոչեց կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, գյուղի բոլոր աշխատավորներին՝ արագ կենսագործելու կուսակցության կանխագծած նոր հնգամյա ծրագիրը:

Նոր հնգամյակի համագումարյան դիրեկտիվներում պատշաճ արտացոլում են գտել նաև Հայաստանի էկոնոմիկայի առաջիկա կարգացման ոգևորիչ կանխագծումները: Արդյունաբերական արտադրանքի ծավալի 60—63 տոկոսի

աճը, մետալուրգիայի, մեքենաշինության, թեթև ու սննդի արդյունաբերության, էլեկտրաէներգիայի արտադրության արագ աճը, Զոդի ոսկու հանքի գործարկումը, ատոմային էլեկտրակայանի կառուցումը, Հրազդանի քիմկոմբինատի ու քիմիական նյութերի արտադրության կարողությունների արդյունավետ օգտագործումը, 50 հազար հեկտար հողերի ոռոգումը, այս ամենը պահանջում են կուսակցական կազմակերպությունների և սովետական բոլոր քաղաքացիների ջանքերի միահամուռությունը՝ մեծ նպատակին հասնելու համար:

Կոնկրետ մատնանշելով տնտեսական ու սոցիալական հրատապ խնդիրների լուծման կանայան եղանակներ առաջիկա տարիներին, համագումարը միաժամանակ շեշտեց, որ այդ բոլորի ռեալ նախապայմանները երկուսն են՝ հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը և աշխատանքի արտադրողականության արագ վերելքը տնտեսության բոլոր ճյուղերում: Մեծանշանակ և կարևոր այս պրոբլեմների լուծման արգասալիության համար անհրաժեշտ է, որպեսզի իրոք բարելավվի երկրի էկոնոմիկայի կառուցվածքը, ավելացվի արտադրանքի թողարկումը հիմնական ֆոնդերի յուրաքանչյուր միավորից, մեծացվի ներդրվող միջոցների փոխհատուցումը, նվազեցվեն նյութատարությունն ու աշխատանքային ծախսումները և բարձրանա արտադրանքի որակը: Սրա հետ մեկտեղ, համագումարը բոլոր կազմակերպություններից ու մարմիններից պահանջեց վճռական պայքար ծավալել անտնտեսավարության, շռայլության և ավելորդությունների դեմ, կատարելագործել աշխատանքի կազմակերպումը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում:

Համագումարը համապատասխան հաստատությունների ու հիմնարկությունների ուշադրությունն է սևեռում գիտա-տեխնիկական պրոգրեսի արագացման բարդ պրոբլեմների վրա, առանց որի հնարավոր չէ արդյունավետությամբ վարել մեր մեծ առաջընթացը: Տեխնիկական հեղափոխության հրատապ պրոբլեմները, ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման մեթոդների և եղանակների առավել կատարելագործումը պետք է լինեն կուսակցական ու պետական համապատասխան մարմինների ուշադրության կենտրոնում:

Նոր հնգամյակի համագումարյան դիրեկտիվներում հստակորեն ասված է, որ առաջիկայում անհրաժեշտ է արագացնել գիտա-տեխնիկական պրոգրեսի տեմպերը և իրագործել գիտական-տեխնիկական քաղաքականություն արտադրաուժերի արագ զարգացման համար. ավելի լայնորեն օգտագործել գիտա-տեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորությունները: Այստեղից հետևում է, որ հետայսու անհրաժեշտ է «ստեղծել ու արմատավորել աշխատանքի սկզբունքորեն նոր գործիքներ, նյութեր ու տեխնոլոգիական պրոցեսներ», բարելավել արտադրանքի որակը, ամբողջապես արդիականացնել արդյունաբերության մեխանիկական, տեխնոլոգիական և կիրառական պրոցեսները:

Սահմանելով երկրի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու գիտա-տեխնիկական պատմական մեր առաջընթացի համապարփակ ծրագիրը, կուսակցության XXIV համագումարը հատկապես ընդգծեց, որ անհրաժեշտ է առաջիկայում «լայնորեն արմատավորել աշխատանքի, արտադրության և կառավարման գիտական կազմակերպումը. օգտագործելով կազմակերպական և հաշվողական տեխնիկայի նորագույն միջոցները, ամենուր կիրառել գիտության ու տեխնիկայի առավել արդյունավետ նվաճումների արդյունքները, ավելի բարելավել



գիտա-տեխնիկական ինֆորմացիան, այն ի սպաս դնելով մեր բովանդակ կյանքի բոլոր օղակների արագ կատարելագործման շահերին»:

Հիրավի, այժմ հրամայական և անհետաձգելի պահանջ է դառնում համագումարի այն արմատական ու նշանակալի որոշումը, թե անհրաժեշտ է ամեն կերպ զարգացնել հիմնարար և կիրառական գիտական հետազոտությունները և դրանց արդյունքների ավելի արագ արմատավորումը ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի տարբեր ոլորտներում: Ահա թե ինչու համագումարը նշեց, որ գիտա-տեխնիկական պրոգրեսի զարգացման հարցերը շարունակ պետք է լինեն կուսակցության ղեկավար մարմինների, սովետական և հասարակական կազմակերպությունների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ուշադրության կենտրոնում:

Մշտապես կատարելագործելով երկրի արտադրաուժերի տեղաբաշխումը և դրանց ռացիոնալ համամասնության սահմանումը, տերիտորիալ տնտեսական կապերի բարելավման նպատակով, որպես կարևոր խնդիր, համագումարն անհրաժեշտ համարեց. «Անշեղորեն իրականացնել խոշոր քաղաքների աճը զսպելու կուրս, որպես կանոն, դադարեցնել արդյունաբերական նոր ձեռնարկությունների տեղադրումն այդ քաղաքներում, բացի բնակչության ու քաղաքային տնտեսության սպասարկման հետ կապված օբյեկտներից»: Համագումարի դիրեկտիվներում կոնկրետ նշված է, որ փոքր քաղաքներում և բանվորական ավաններում պետք է տեղաբաշխել խոշոր քաղաքներում գտնվող գործարանների ու ֆաբրիկաների ոչ մեծ մասնագիտացված ձեռնարկություններ ու մասնաճյուղեր: Այս որոշման անշեղ կենսագործումը մեր հանրապետությունում խոշոր և դրական փոփոխություններ կմուծի հասարակական կյանքի մի ամբողջ շարք պրոբլեմների լուծման ասպարեզում:

## III

Համագումարի բանաձևում խորապես գնահատված են սոցիալական այն կարևոր փոփոխությունները, որոնք կատարվել են կոմունիստական շինարարության անցած էտապում երկրի տնտեսության և աշխատանքի բնույթի ոլորտներում: Այդ էական փոփոխություններն արտահայտվել են՝ աշխատավորական զանգվածների ընդհանուր կուլտուրայի ու կրթվածության, պրոֆեսիոնալ պատրաստության ու վարպետության մակարդակի բարձրացման, գյուղի ու քաղաքի, աշխատանքի և կենցաղի պայմանների մերձեցմամբ, ինտելիգենցիայի՝ հատկապես գիտա-տեխնիկական աշխատողների թվական աճով, սովետական ողջ հասարակության հոգևոր միասնությամբ:

Սովետական Միության անցած ժամանակաշրջանի վերելքը բնորոշվում է նաև բոլոր ազգերի ու ազգությունների անկաշկանդ զարգացմամբ և հետագա մերձեցմամբ: ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների պատմական հասումները կուսակցության կիրառած լենինյան ազգային քաղաքականության անմիջական արգասիք են. այժմ առաջացել է ազգերի պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ: Այդ ժողովրդի բարգավաճման շահերից ելնելով, համագումարն ընդգծեց, որ «Անհրաժեշտ է այսուհետև ևս անշեղորեն վարել ՍՍՀՄ ամրապնդման լենինյան կուրսը՝ ելնելով սովետական պետության ընդհանուր շահերից, ինչպես նաև հաշվի առնելով այդ միության մեջ մտնող հանրապետություններից յուրաքանչյուրի զարգացման պայմանները, հետևողականորեն ձգտելով սոցիալիստական բոլոր ազգերի հետագա բարգավաճման և նրանց

աստիճանական մերձեցման»: Այստեղից հետևում է, որ հարկավոր է ավելի խոր ու բազմակողմանի աշխատանք ծավալել բոլոր աշխատավորներին սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, շովինիզմի ու ազգային սահմանափակության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով, բոլոր ժողովուրդներին լենինյան եղբայրության ոգով դաստիարակելու համար:

ՍՄԿԿ XXIV համագումարը հավաստեց, որ հաշվետու ժամանակաշրջանում կուսակցական կազմակերպություններն անդուլ գործել են սովետական քաղաքացիներին կոմունիստական ոգով դաստիարակելու բնագավառում: Սրա հետ միասին, համագումարն ընդգծեց, որ այսուհետև ևս կուսակցական կազմակերպությունների գաղափարական գործունեության հիմնական խնդիրը՝ աշխատավորությանը մարքս-լենինյան աշխարհայացքի, գաղափարա-քաղաքական վեհ հատկությունների, կոմունիստական բարոյականության սկզբունքների ու նորմերի ոգով դաստիարակելն է: Այսօր ևս կուսակցության գաղափարական աշխատանքի մեջ գլխավորը մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդումն է, հարձակողական անհաշտ պայքարն ընդդեմ բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսության»:

Կուսակցական-քաղաքական աշխատանքի անտրոհելի մասն է կազմում աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով մարդկանց տոգորումը, նրանց ստեղծագործական ձեռներեցության, գիտակցական կարգապահության ու կազմակերպվածության ոգով դաստիարակումը: Ուստի, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները ջանքեր չպետք է խնայեն առավել արդյունավետ ու կատարյալ դարձնելու սոցիալիստական մրցությունը, որը տնտեսական շինարարության ու սոցիալիստական հարաբերությունների կատարելագործման և զարգացման գործոնն է: Համագումարը սրա հետ մեկտեղ ընդգծեց, որ ո՛չ միայն պետք է կատարելագործել մարդկանց նյութական շահագրգռության ձևերը, այլև ավելի բարձրացնել բարոյական խթանների նշանակությունը, դրվատել առաջավորների գործի վեհությունը, տարածել նրանց արժեքավոր փորձը:

Սովետական ժողովրդի պրակտիկան վաղուց է դրսևորել աշխատանքային կոլեկտիվների խաղացած դերի էական նշանակությունը մարդկանց կոմունիստական դաստիարակության գործում: Հոգատարությունն ու օգնությունը յուրաքանչյուր աշխատողի նկատմամբ պետք է շաղկապել գործի շահերի հետ, չմոռանալով, որ «փոխադարձ օգնությունն ու պահանջկոտությունը մեր ապրելակերպի անբաժանելի գծերն են, որոնք անհրաժեշտ է ամրապնդել և զարգացնել»: Այս առումով համագումարը սովետական մարդկանց վճռական պայքարի կոչեց աշխատանքային կարգապահության խախտումների, շահամոլության, պորտաբուծության, հափշտակումների, կաշառակերության և հարբեցողության երևույթների դեմ: Այս գործը պահանջում է կուսակցական բոլոր կազմակերպությունների և սովետական հասարակության գիտակից ուժերի մշտական արթնամտություն:

IV

Ընդունած բանաձևում համագումարը հատկապես նշեց, որ XXIII համագումարից հետո կուսակցությունն ավելի է ամրապնդել իր շարքերը, ուժեղացրել ազդեցությունը կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում, ամ-



րապնդել կապերը աշխատավորական զանգվածների հետ: Սակայն նոր հնգամյակի վիթխարի խնդիրների կենսագործումը պահանջում է այսուհետև ևս ավելի բարձրացնել կուսակցության ղեկավար դերը, հասնել բոլոր կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց հայացքների ու գործողությունների միասնության հետագա ամրապնդման: Նոր հասարակության ստեղծման համար մղած իր ավելի քան կեսդարյա աշխարհաշեն պայքարում ՍՄԿԿ-ն ձեռք է բերել հսկայական փորձ, անվիճելի հեղինակություն. աճել են նրա շարքերը, բարելավվել է նրա որակական կազմը: Այժմ կուսակցությունը հասել է այն բանին, որ իր կազմի կեսից ավելին բանվորներ են: Հետայսու ևս կուսակցության ուժը նրա բոլոր անդամների բարձր գաղափարայնությունն է և ակտիվությունը՝ կուսակցության որոշումների անշեղ կատարման գործում:

Նոր հնգամյակի անթերի կենսագործումը պահանջում է կադրերի ընտրության ու տեղաբաշխման արվեստի կատարելագործում: Առանց աշխատողների մտավոր ունակությունների, քաղաքական ու գործնական արժանիքների, նրանց գաղափարայնության ու սկզբունքայնության հատկանիշների ճիշտ իմացության ու գնահատման, անհնարին է կոմունիզմի կառուցման բարդ խնդիրների արդյունավետ լուծումը: Ահա թե ինչու համագումարը նշեց՝ «...հասարակության կյանքի բոլոր կողմերի ղեկավարումը, մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացումը անխզելիորեն կապված են կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության բարելավման հետ: Կուսակցությունն առաջնակարգ նշանակություն է տալիս այն բանին, որ կուսակցական, պետական, տնտեսական, կուլտուր-դաստիարակչական և հասարակական աշխատանքի բոլոր տեղամասերը գլխավորեն քաղաքականապես հասուն գործիմաց, ընդունակ կազմակերպիչներ: Կուսակցության և երկրի առջև դրված մեծ ու բարդ խնդիրները հրամայաբար պահանջում են, որ ղեկավար կադրերը կատարյալ տիրապետեն կառավարման ժամանակակից մեթոդներին, ունենան նորի զգացում, տեսնեն զարգացման հեռանկարը, կարողանան գտնել ծագող պրոբլեմների լուծման առավել արդյունավետ ուղիներ, օգտագործել ուրիշների գիտելիքներն ու փորձը»:

Աշխատողի նկատմամբ տածած վստահությունն ու հարգանքը զուգորդելով սկզբունքային պահանջկոտության հետ, կուսակցական կազմակերպությունները կոչված են ավելի բարձրացնելու մարդկանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, իսկ կուսակցական և պետական կարգապահության զանցառուներին՝ պատասխանատվության կանչելու: Համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, անդրադառնալով այդ խնդրին, Լ.Ի. Բրեժնևն ասաց. «...կուսակցության կարևորագույն հոգսը այսուհետև ևս պետք է լինի իր շարքերի որակական կազմի բարելավումը: Նոր անդամների ընդունելությամբ չափից ավելի տարվելը, այդ գործում անպահանջկոտությունը, որ, ցավոք սրտի, դեռ մնում է առանձին կազմակերպություններում, հակասում է կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներին: Մեր խնդիրն է կարգավորիչ ներգործություն ունենալ կուսակցական շարքերի աճի վրա, դրանք անհատական ընտրության հիման վրա համալրել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության առավել արժանավոր ներկայացուցիչներով...»: Ընկեր Բրեժնևը նշեց, որ ժամանակն է ազատվել նրանցից «... ովքեր խախտում են կուսակցական ու պետական կար-

գապահությունը, չարաշահում պաշտոնական դիրքը, ովքեր իրենց վարքագծով արատավորում են կոմունիստի կոչումը: Մենք այսուհետև ևս չպետք է թույլ տանք հաշտվողական վերաբերմունք նրանց նկատմամբ, ովքեր սխալ վարքագիծ են ցուցաբերում: Կուսակցության շարքերի մաքրության նկատմամբ հոգատարությունը բոլոր կուսակցական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի պարտքն է»:

Կուսակցության XXIV համագումարը գոհունակությամբ նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանում անհամեմատ ակտիվացել է կուսակցական կազմակերպությունների գաղափարական գործունեությունը, զգալիորեն բարելավվել է մարքս-լենինյան դաստիարակությունը: Կուսակցության տեսական միտքը հարստացել է սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման, հակակոմունիզմի և ռևիզիոնիզմի տարբեր ըմբռնումների մերկացմանը, արդի կապիտալիզմի նոր երևույթների վերլուծմանը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման հարցերի համակողմանի մշակմանը նվիրված նոր հետազոտություններով: Այսուհետև ևս կուսակցության գործունեության կենտրոնում պետք է մնա մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացումն ու պրոպագանդումը, նրա հակառակորդների հետևողական մերկացումը:

Կոմունիզմի շինարարության բոլոր էական հարցերն իրենց ստեղծագործական մարմնացումը գտան կուսակցության XXIV համագումարի որոշումներում ու նյութերում: Համագումարի հարուցած աշխատանքային ոգևորության նոր ալիքն ակներև վկայում է, որ սովետական ժողովուրդը պատվով կկատարի կուսակցության կոլեկտիվ կամքի՝ XXIV համագումարի մշակած կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը:

Ամփոփելով և բարձր գնահատելով սովետական ժողովրդի նախորդ տարիների պատմական հաջողությունները, ՍՄԿԿ XXIV համագումարը հաստատեց մեր երկրում կոմունիզմի կառուցման հիմնավոր ծրագիր, որի գործնական կիրառման նախնական արդյունքներն ավելի քան ոգևորիչ են: «ՍՄԿԿ XXIV համագումարը, սահմանելով կուսակցության հետագա աշխատանքի խնդիրները, մեր երկրի զարգացման հեռանկարները, նշում է էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի, աշխատավորների բարեկեցության բարձրացման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման և սովետական հասարակության միասնության ամրապնդման հստակ և պարզորոշ ծրագիր, իմպերիալիզմի ու ագրեսիայի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող հետևողական պայքարի ծրագիր: Համագումարը վստահություն է հայտնում, որ կուսակցության և ժողովրդի ջանքերով այդ խնդիրները հաջողությամբ կկենսագործվեն: Մեր պլաններն իրական են: Դրանց կատարումը կախված է յուրաքանչյուրիս աշխատանքից, մեր հաստատակամությունից ու կարողությունից, կազմակերպվածությունից ու կարգապահությունից»:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՈՒ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Լ. Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ,
պետպլանի նախագահ

*Ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախատեսվում է՝ «ապահովել արտադրության պլանավորման և տնտեսական խթանման սիստեմի հետագա կատարելագործում, նոր հնգամյակում ավարտել նյութական արտադրության ճյուղերի և սպասարկման ոլորտի բոլոր տնտհաշվարկային ձեռնարկությունների ու կազմակերպությունների փոխադրումը պլանավորման ու տնտեսական խթանման նոր մեթոդների»:*

*Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո Վ. Ի. Լենինը Սովետական իշխանության ներքին խնդիրները աշխատության մեջ որպես գլխավոր խնդիր առաջադրեց գիտական պլանի հիման վրա երկիրը դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով կառավարելու հարցը: Նա գիտականորեն լուծեց սոցիալիստական էկոնոմիկայի պլանավորման ու կառավարման արմատական պրոբլեմները: Պլանային էկոնոմիկան ղեկավարելու լենինյան պահանջները՝ կատարվող խնդիրների հեռանկարն ու հերթականությունը ճիշտ որոշելու իմացությունն ու հմտությունն են, գիտության ու տեխնիկայի նվաճումների, առաջավոր փորձի նկատմամբ կողմնորոշումը, փոփոխվող պայմաններն արագությամբ ու ճշտորեն հաշվի առնելու ունակությունը:*

*Առաջին պետական պլանը, ինչպես հայտնի է, ԳՈԷԼՌՈ-ն էր, որը Վ. Ի. Լենինը համարում էր կուսակցության երկրորդ ծրագիր: «Կուսակցության մեր ծրագիրը չի կարող միայն կուսակցության ծրագիր մնալ: Դա պետք է դառնա մեր տնտեսական շինարարության ծրագիրը, այլապես դա անպետք է նաև որպես կուսակցության ծրագիր: Դա պետք է լրացվի կուսակցության երկրորդ ծրագրով, ամբողջ ժողովրդական տնտեսությունը վերստեղծելու և այն մինչև ժամանակակից տեխնիկան հասցնելու աշխատանքների պլանով» (Երկեր, հ. 31, էջ 652):*

Պատմական փորձություններով անցած սոցիալիստական պլանավորումը, ընդգրկելով ժողովրդական տնտեսության բոլոր օղակները, արտահայտում է կուսակցության տնտեսական և սոցիալական քաղաքականությունը և կոմունիստական շինարարության յուրաքանչյուր փուլում գլխավոր խնդիրները լուծելիս օգտագործվում է որպես կարևորագույն միջոց։

Տնտեսությունը վերականգնելուց և հետպատերազմյան երկու (հինգերորդ և վեցերորդ) հնգամյակներից հետո Սովետական Միությունն արդեն բոլոր անհրաժեշտ նյութական, քաղաքական և սոցիալական նախադրյալներն ուներ ձեռնամուխ լինելու կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը։ Ընդարձակվեց երկրի ժողովրդական տնտեսությունը, պահանջվեցին պլանավորման նոր մեթոդներ։ Կուսակցության որոշումների համապատասխան, արդյունաբերությունը փոխադրվեց պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմի, որը հնարավորություն տվեց կասեցնելու էկոնոմիկայի մեջ նախընթաց տարիներին նկատված որոշ անցանկալի տենդենցների զարգացումը։

Ռեֆորմի անհրաժեշտությունը պայմանավորված էր արդյունաբերության բոլոր ճյուղերը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերն ընդգրկած գիտա-տեխնիկական հեղափոխության խնդիրներով։

Հետևելով լենինյան պատգամներին, կոմունիստական կուսակցությունը խնդիր է դրել գիտության ու տեխնիկայի զարգացման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման և աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացման հիման վրա ստեղծել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա։ Այդ է սովետական հասարակության գլխավոր տնտեսական խնդիրն արդի պայմաններում։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրում ասված է. կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը պահանջում է մշտապես կատարելագործել տնտեսության ղեկավարումն ու պլանավորումը։

Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործմանը։ «Կյանքը,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— պրակտիկան, իսկ դրանք լավագույն ուսուցիչներն են, ցույց են տալիս, որ մենք չենք կարող բավարարվել ձեռք բերվածով։ Կառավարման սիստեմի կատարելագործումը ոչ թե միանվագ միջոցառում է, այլ կյանքի կողմից առաջ քաշված պրոբլեմների լուծման դինամիկ պրոցես։ Այդ պրոբլեմները այսուհետև ևս պետք է գտնվեն մեր ուշադրության կենտրոնում»։

Տնտեսության պլանավորման ու ղեկավարման բոլոր օղակներում գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացած լինի նյութական, աշխատանքային և ֆինանսական, բնական հարստությունների առավել նպատակահարմար ու արդյունավետ օգտագործման, ավելորդ ծախսերի ու կորուստների վերացման վրա։ Քիչ ծախսեր կատարելով առավել արդյունքներ նվաճել հասարակության համար— ահա տնտեսական շինարարության պարտադիր օրենքը։

Իններորդ հնգամյա պլանի դիրեկտիվներում նախատեսվում է՝ կատարելագործել արտադրամիջոցների նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքները որոշելու մեթոդները, մշակել հումքի, նյութերի և էլեկտրաէներգիայի ծախսման տեխնիկապես հիմնավորված նորմեր, ինչպես նաև սար-



քավորման, մեքենաների ու մեխանիզմների օգտագործման նորմատիվներ, այդ նպատակների համար լայնորեն ներդնելով էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկա։

Դիրեկտիվներում նաև սահմանվում է շահույթի, որպես պետության եկամուտների գլխավոր աղբյուրի, պլանավորման բարելավումը, շահույթի ձևավորման գործում արտադրանքի ինքնարժեքի իջեցման դերի բարձրացումը, արտադրության ռեզերվների ավելի լիակատար մոբիլիզացման նկատմամբ ֆինանսական և բանկային մարմինների ներգործության ուժեղացումը և վերջինիս արդյունավետության բարձրացումը։

Աշխատանքը՝ հարստության աղբյուրն է, և միայն յուրաքանչյուր բանվորական տեղում աշխատանքի արտադրողականության աճն ու ամբողջ ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացումը կբազմապատկեն այն բարիքները, որպիսիք կստանան սովետական մարդիկ հանրային արտադրության մեջ՝ յուրաքանչյուրի աշխատանքային ավանդի համեմատ, ասվում է դիրեկտիվներում։

Հնգամյակի ընթացքում նախատեսվում է աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ բարձրացնել 36—40 տոկոսով, դրա հաշվին ստանալ արտադրանքի աճի 87—90 տոկոսը։

Արդեն հինգ տարի կենսագործվում է տնտեսական ռեֆորմը։ Պրակտիկան հաստատել է կուսակցության ծրագրային որոշումների առաջադիմականությունն ու պատմական նշանակությունը, դրանց համապատասխանությունը կոմունիստական շինարարության արդի փուլում ժողովրդական տնտեսության զարգացման պայմաններին ու հասունացած տենդենցներին։ Տնտեսական ղեկավարության ձևերի ու մեթոդների կատարելագործման նպատակով ռեֆորմով նախատեսված կոմպլեքս միջոցառումների հետևողական կենսագործումը կոչված է նպաստելու սոցիալիստական արտադրահարաբերությունների ավելի կատարելագործմանը և երկրի արտադրաուժերի արագ զարգացմանը։

1970 թ. հուլիսի 1-ի դրությամբ տնտեսական ռեֆորմն ընդգրկել է ինքնուրույն հաշվեկշիռ ունեցող 42 հազար արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք տալիս են ողջ արդյունաբերության իրացված արտադրանքի ավելի քան 92 տոկոսը և շահույթի 95 տոկոսից ավելին։ Փորձի փոխանակման կարգով նոր սիստեմին են փոխադրվել արդյունաբերական մինիստրությունների մի շարք ճյուղային գլխավոր վարչություններ։ Հատուկ պայմանների մշակմամբ այդ սիստեմին են փոխադրվել սարքաշինական, ավտոմատացման միջոցների ու կառավարման սիստեմների մինիստրությունը և Մոսկվայի քաղավտոտրանսը. փոխադրվում են նաև շինարարական ու տրանսպորտային առևտրական ու մատակարարման կազմակերպությունները։

Անցած հնգամյակի ընթացքում պլանավորման ու տնտեսական խթանման սիստեմն ապահովեց հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը։ Նոր սիստեմի փոխադրված ձեռնարկությունները առաջին տարում տվեցին մի քանի մլրդ ռուբլու լրացուցիչ իրացված արտադրանք։ Զգալիորեն աճեցին դրանց շահույթը և պետական բյուջեում կատարված մուծումները։ Նոր սիստեմի փոխադրված ձեռնարկություններն աճի ավելի բարձր տեմպեր ունեին, քան արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած։

Դա երևում է հետևյալ տվյալներից.

| | 1966 թ. | | 1968 թ. | |
|---|---|---|---|---|
| | Փոխադրված ձեռնարկու-թյուններում | Չփոխադրը-ված ձեռնար-կություններ | Փոխադրված ձեռնարկու-թյուններում | Չփոխադրը-ված ձեռնար-կություններ |
| Համախառն արտադրանքը (տոկոսներով) | 110,5 | 108,4 | 109,9 | 108,3 |
| Շահույթը (տոկոսներով) | 123,3 | 108,0 | 115,8 | 112,8 |
| Աշխատանքի արտադրողականությունը (տոկոսներով) | 108,0 | 104,7 | 105,6 | 103,8 |

Նոր սիստեմին անցնելուց հետո ավելացել են նաև արտադրանքը և հիմնական ֆոնդերի 1 ռուբլուն ընկնող շահույթը։

Ձեռնարկությունների փոխադրումը նոր սիստեմին դրականապես ազդեց, ամբողջությամբ վերցրած, արդյունաբերության աշխատանքի և հասարակական արտադրության զարգացման վրա։ Դա, առաջին հերթին, ներգործեց ազգային եկամտի աճի տեմպերի վրա։

1961—1965 թթ. ժողովրդական տնտեսության մեջ արտադրաֆոնդերի 1 տոկոս աճին ընկնում էր ազգային եկամտի 0,63 տոկոս աճ, իսկ 1966—1968 թթ. այն ավելացավ մինչև 1,01 տոկոսով։ Համախառն արտադրանքի միջին տարեկան աճը՝ արտադրաֆոնդերի 1 տոկոս աճի համեմատ, 1961—1965 թթ. 0,74-ից, 1966—1968 թթ. հասել է 1,09 տոկոսի։

Սակայն, այդ արդյունքների հետ միասին ռեֆորմի կիրառման ընթացքում եղել են մի շարք թերություններ։ Շատ դեպքերում առանձին ձեռնարկություններ ու ամբողջ միավորումներ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի են փոխադրվել առանց բավարար չափով նախապատրաստվելու։ Տընտեսական ռեֆորմի մեջ թաքնված ռեզերվներն ու հնարավորությունները դեռ լիովին չեն օգտագործվում. ուստի, այն ավելի կատարելագործելու և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կիրառելու անհրաժեշտությունը նոր հնգամյակի հիմնական խնդիրն է։

Մենք պետք է արտադրությունը զարգացնենք և արտադրանքի որակը բարելավենք,— մատնանշել է Լ. Ի. Բրեժնևը,— ոչ միայն նոր կապիտալ ներդրումների և աշխատողների թվի, այլև ավելի ու ավելի մեծ չափով արդեն մեր ունեցած արտադրական կարողությունների լիակատար և նպատակահարմար օգտագործման, գիտության ու տեխնիկայի արմատավորման հաշվին։

Առաջին տարիներին ռեֆորմն ընդգրկել էր հիմնական ձեռնարկությունները, այսինքն՝ արդյունաբերության սկզբնական օղակները։ Արդյունաբերության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի միջին և բարձր օղակները դեռևս նոր սիստեմով չեն աշխատում. պետք է մեծ կազմակերպական աշխատանք կատարել արդյունաբերության կառավարման բոլոր օղակները, ընդհուպ մինչև բոլոր մինիստրությունները, պլանավորման ու կառավարման նոր սիստեմի փոխադրելու համար։

Դիրեկտիվներում նախատեսված է. «վճռականապես բարձրացնել մինիստրությունների պատասխանատվությունը՝ ճյուղային արտադրանքների նկատմամբ հասարակական պահանջմունքների լիակատար բավարարման և արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի համար»։ Ուստի, արտադրության



կառավարման կազմակերպումը կատարելագործելու հիմնական նպատակն այն է, որ մինիստրությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացվի տվյալ ճյուղի արտադրանքով ժողովրդական տնտեսությունն ապահովելու, նոր տեխնիկա արմատավորելու, տեխնոլոգիական սարքավորումը մշտապես թարմացնելու հարցերում և այդ հիման վրա ապահովելու աշխատանքի արտադրողականության մշտական աճը, արտադրության ընդլայնումը, դրա արդյունավետության բարձրացումը։

Սոցիալիստական էկոնոմիկայի արդի էտապի առանձնահատկությունն այն է, որ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը դառնում է գլխավոր խնդիր։ Գնալով ավելի մեծ նշանակություն են ստանում այնպիսի ցուցանիշներ, որպիսիք ֆոնդահատուցման մեծացումն է, արտադրանքի որակի բարելավումը, արտադրության կառուցվածքի կատարելագործումը և այլն։ Այդ կապակցությամբ հարկավոր է նշել, որ փոքր ձեռնարկությունները չեն կարող արդյունավետ օգտագործել նոր սիստեմի առավելությունները, քանի որ արտադրության մշտական կատարելագործումը, տեխնիկական առաջադիմության արմատավորումը ֆինանսական տեսակետից դըժվար է նրանց համար։

Տեխնիկական առաջադիմության, աշխատանքի արտադրողականության ռացիոնալացման նպատակով արդյունավետ միջոցառումների կենսագործումը պահանջում է ձեռնարկությունների համակենտրոնացում, մասնագիտացում և խնլացի կոոպերացում։ Ուստի, անհրաժեշտ է խոշոր կոմպլեքս-կոմբինատներ և արտադրական միավորումներ ստեղծելու միջոցով կատարելագործել արտադրության կազմակերպումը։

«Կուտակված փորձը ցույց է տալիս,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ միայն խոշոր միավորումներն են ի վիճակի կենտրոնացնելու բավարար թվով որակյալ մասնագետներ, ապահովելու տեխնիկական արագ առաջընթացը, ավելի լավ ու լիովին օգտագործելու բոլոր ռեսուրսները։ Միավորումներ և կոմբինատներ ստեղծելու կուրսը պետք է վարել ավելի վճռականորեն»։

Մեր հանրապետությունում արդյունաբերական ձեռնարկությունների մոտ 50 տոկոսն ունի 100-ական բանվորից էլ պակաս և թողարկում են արդյունաբերական արտադրանքի 7 տոկոսը, իսկ 1000 և ավելի աշխատողներ ունեցող ձեռնարկությունները կազմում են 8 տոկոս, բայց տալիս են արդյունաբերական արտադրանքի ավելի քան 50 տոկոսը։

Մանր ձեռնարկությունները խոշորացնելու և արտադրական միավորումների խոշոր կոմպլեքսներ ստեղծելու միջոցով կարելի է զգալիորեն բարձրացնել ողջ արդյունաբերության արդյունավետությունը, ավելի լրիվ օգտագործել տնտեսավարման նոր սիստեմի առավելությունները։ Այդ նպատակով աշխատանք է կատարվում ինչպես ամբողջությամբ վերցրած երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում՝ մեքենաշինության, թեթև արդյունաբերության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։

Արտադրական և տնտեսական ղեկավարության լիակատար իրավունքներով օժտված և անհրաժեշտ նյութատեխնիկական միջոցներ ունեցող արտադրական միավորումների ստեղծումը լուրջ հանգամանք կհանդիսանա տնտեսական ղեկավարության մակարդակն է՛լ ավելի բարձրացնելու համար։ Դա հնարավորություն կտա գործադրել արտադրության նոր՝ առավելապես մեծ, ռեզերվները։

Մանր ձեռնարկությունները միավորելու և խոշոր կոմպլեքս-կոմբինատներ դարձնելու հարցը արտադրության կառավարման ու պլանավորման վերաբերյալ XXIV համագումարի դիրեկտիվների կենսագործման կարևորագույն միջոցներից մեկն է։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է առանձին ձեռնարկությունների և միավորումների տնտեսական շահերը կապակցել, ամբողջությամբ վերցրած, ճյուղերի (կամ ենթաճյուղերի) շահերի հետ, բարելավել տնտեսական համագործակցությունը տվյալ ճյուղի (ենթաճյուղի) մեջ մտնող բոլոր ստորաբաժանումների միջև։

Դիրեկտիվները նախատեսում են՝ տնտեսության ճյուղային կառավարման միջին օղակի աշխատանքի կատարելագործում, արտադրության կենտրոնացման և կոոպերացման աշխատանքի ուժեղացում, ձեռնարկությունների մասնագիտացում և դրանց միջև տնտեսական կապերի ռացիոնալացում, խոշոր միավորումների և կոմբինատների ստեղծում՝ առանձին ճյուղերի յուրահատկությունների հաշվառումով։

Արտադրության ծավալի աճմամբ կենտրոնացված ճյուղային ղեկավարության դերը պետք է մեծանա. ուստի, հատկապես փոքր ձեռնարկությունների կողմից կատարվող մի շարք ֆունկցիաներ հարկավոր է կենտրոնացնել։ Դա պետք է իրագործվի արդյունաբերության բոլոր ճյուղերում խոշոր միավորում-կոմբինատներ ստեղծելու, ինչպես նաև միջին օղակում համամիութենական և հանրապետական ճյուղային միավորումներ կազմակերպելու միջոցով։

Արտադրության կառավարման և պլանավորման գործում խոշոր կոմբինատների, ֆիրմաների ու միավորումների հսկայական դերը հաստատող փորձն արդեն ունենք (Մագնիտոգորսկի, Կուզնեցկի, Նիժնիտագիլսկի մետալուրգիական կոմբինատները, Նորիլի, Բալխաշի և Ուստ-Կամենոգորսկու գունավոր մետալուրգիական կոմբինատները, Մոսկվայի, Գորկու ավտոգործարանները, Լենինգրադի «Սվետլանա» միավորումը և այլն)։ Այդ միավորումներում, կոմբինատներում և ֆիրմաներում արտադրության ու կառավարման կազմակերպումը բարձր մակարդակի վրա է գտնվում։ Դրանք հագեցված են նորագույն տեխնիկայով և կառավարման ավտոմատացված սիստեմներով, հաջողությամբ աշխատում են նոր պայմաններում և արդյունավետ են օգտագործում տնտեսական խթանման ֆոնդերը, որի շնորհիվ լավ ցուցանիշների են հասել։ Այդ հանգամանքը նրանց հնարավորություն է ընձեռում նպատակահարմար օգտագործել նյութական խրախուսման ֆոնդերը, բարելավել կոլեկտիվների կուլտուր-կենցաղային պայմանները, նորացնել արտադրամիջոցները և այն հասցնել ժամանակակից տեխնիկական մակարդակին։

Դիրեկտիվներով նախատեսված խոշոր միավորումների ու կոմբինատների կազմակերպումն իրականացնելու և արդյունաբերության բոլոր ճյուղերում կառավարումը կատարելագործելու համար հարկ կլինի նոր հնգամյակում սկզբնական օղակում ստեղծել խոշոր արտադրա-տնտեսական կոմպլեքսներ։ Հարկավոր է ստեղծել կառավարման ավտոմատացված սիստեմներ ունեցող օրինակելի-ցուցադրական ձեռնարկություններ, ամփոփել դրանց փորձը, պարզել դրանց տնտեսական վիճակը։ Ապա յուրաքանչյուր ճյուղի համար որոշել այդպիսի կոմպլեքսների ու կոմբինատների ամենահամապատասխան չափերը և այնուհետև անցնել դրանց՝ որպես սկզբնական հիմնական օղակի, ստեղծմանը։

Երկու, երեք և չորսօղակային կառավարման հարցերը լուրջ մշակում են պահանջում և պետք է լուծվեն իններորդ հնգամյակի ընթացքում։ Զորս օղակ



կստացվի միութենական-հանրապետական տնտեսության ճյուղերում, այն է՝ թեթև, սննդի, միս-կաթի արտադրություններում, շինանյութերի արդյունաբերության մեջ, անտառա-փայտամշակման տնտեսություններում։ Այդ ճյուղերում կարող է ստեղծվել այսպիսի չորսօղակային կառավարում՝ կոմբինատ—մարզային միավորում—հանրապետական մինիստրություն—միութենական մինիստրություն կամ, մարզային բաժանում չունեցող հանրապետություններում՝ կոմբինատ—ճյուղային միավորում—հանրապետական մինիստրություն—միութենական մինիստրություն։ Ըստ երևույթին, շատ դեպքերում կարելի է խուսափել մեկ օղակից՝ շրջանցելով ճյուղային կամ մարզային օղակը։

Համենայն դեպս, մեծ ջանքեր են պահանջվում տնտեսապես հիմնավորված տերիտորիալ ու ճյուղային պլանավորումը ճիշտ զուգորդելու, ճյուղային արդյունաբերության մեջ և ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսությունում արտադրության կառավարման առավել ռացիոնալ սխեմա ընտրելու համար։ Կառավարման ու պլանավորման կատարելագործումն ընդգրկում է տնտեսական ռեֆորմը կենսագործելու և ճյուղային ու տերիտորիալ պլանավորումը ճիշտ զուգակցելու հետ կապված մի ամբողջ կոմպլեքս հարցեր։ Ռեֆորմի կենսագործման առաջին հինգ տարիները ցույց տվեցին դրա կենսունակությունը, առաջադիմականությունը և արդյունավետությունը։ Բայց այդ ժամանակի ընթացքում բացահայտվեցին նաև մի շարք գործոններ, որոնք հաշվի չէին առնվել այնպիսի պլանային ցուցանիշներ սահմանելիս, ինչպես խրախուսման ֆոնդերի գոյացումն է, աշխատանքի արտադրողականության բարձրացման խթանումը և այլն։

Պլանային ցուցանիշների մշակումն ու կատարելագործումը պետք է ընթանա ո՛չ թե սոցիալիստական ձեռնարկությունների ինքնուրույնությունը կաշկանդելու միջոցով, այլ այնպիսի ճանապարհի, որը հնարավորություն է ընձեռում խրախուսման ֆոնդերը փոխադարձաբար կապելու ձեռնարկությունների կոլեկտիվ և անձնական շահագրգռվածության, ժողովրդական տնտեսության շահերի, արտադրանքի իրացման, տեխնիկական պրոգրեսի, նոր տեսակի արտադրանքներ յուրացնելու հետ և այլն։ Յուրաքանչյուր ճյուղի համար այդ հարցերը հատուկ նշանակություն կունենան, ուստի և պետք է լուծվեն խոր ուսումնասիրությունից հետո։

Խրախուսման ֆոնդերի գոյացման սիստեմը մի շարք ձեռնարկություններում, նայած աշխատավարձի ֆոնդի ծավալին, իջեցրեց աշխատանքի արտադրողականությունը և դրա աճի նկատմամբ գերազանցեց միջին աշխատավարձի աճը։ Հարկ եղավ դրա վրա ուշադրություն դարձնել և այժմ այդ դրությունը կարգավորվում է։ Խոշոր կոմպլեքս-կոմբինատների գոյացումը՝ կազմակերպվածության բարձր մակարդակի շնորհիվ ինքնաբերաբար բացառում են այդպիսի երևույթները։

Պլանային ցուցանիշների ու նորմատիվների առավել բարելավումը, արտադրության կառավարումը կատարելագործելու հետ միասին, նոր հնգամյակի հիմնական խնդիրներից մեկն է։

Դիրեկտիվները նախատեսում են նաև՝ «բարելավել պլանավորումն ու գիտատեխնիկական առաջադիմության խթանումը տնտեսության բոլոր ճյուղերում ու ձեռնարկություններում։ Ապահովել ձեռնարկությունների, միավորումների և մինիստրությունների տնտհաշվարկային շահագրգռվածության բարձրացումը առավել մեծ չափով արդյունքների հասնելու գործում՝ ավելի

քիչ աշխատանք, նյութական միջոցներ ծախսելով և կապիտալ ներդրումներ կատարելով, ինչպես նաև ապահովել նրանց պատասխանատվությունն այդ գործում»։

Գիտա-տեխնիկական առաջադիմությունն այն հզոր լծակն է, որ կարող է բարձրացնել արտադրության արդյունավետությունը, մեծացնել աշխատանքի արտադրողականությունը, նվազագույնի հասցնել ձեռքի աշխատանքը։

Ինչպես պլանավորումը բարելավելու, այնպես և նոր տեխնիկա արմատավորելու ու արդյունավետությամբ օգտագործելու բնագավառում դեռ շատ բան կա անելու։ Գաղտնիք չէ, որ մի շարք ձեռնարկություններ և նույնիսկ առանձին ճյուղեր բարձր եկամտաբերություն ունեն վաղուց յուրացված և հնացած կամ հնացող արտադրանքից ստացվող մեծ շահույթների հաշվին։ Այդ ճյուղերը, գերազանցապես մեքենաշինական ձեռնարկությունները, դեռևս դանդաղ են յուրացնում նոր տեսակի արտադրանքներ թողարկելու եղանակը, ժողովրդական տնտեսությունը չեն ապահովում արդի մեքենաշինական և այլ արտադրանքով։

Տեխնիկական առաջադիմության մշտական հոգսն այն է, որ տնտեսական կառավարումը գլխավորելու կոչված կադրերը լինեն որակյալ, ետ չմնան առաջընթացից։ Հարկավոր է նախագծա-կոնստրուկտորական կազմակերպությունների, ինչպես դա նախատեսված է դիրեկտիվներում, շահագրգռել տնտհաշվարկային տեսակետից։ Դրանք պետք է մտնեն միավորումների մեջ՝ որպես դրանց անբաժանելի մարմին, միևնույն շահերով ապրեն արտադրության հետ, խրախուսվեն արտադրության հաջողությունների համեմատ։

Տնտեսական ռեֆորմը դառնում է ժողովրդական տնտեսության զարգացման ավելի ու ավելի կարևոր գործոն։ Կառավարման պլանավորման և տնտեսական խթանման կազմակերպումը կատարելագործելու հարցերը գնալով ավելի մեծ նշանակություն են ստանում։

Նոր հնգամյակում խնդիր է դրված ապահովել դրա ընդլայնակի զարգացումը, բարձրացնել անցկացվող միջոցառումների արդյունավետությունը, լիովին օգտագործել պլանավորման ու կառավարման նոր սկզբունքները ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ու օղակներում։

Այդ են պահանջում կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվները։



# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒՄԸ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ՍՄԿԿ XXIV համագումարի հարուստ ու բովանդակալից փաստաթղթերում ու նյութերում գիտական խորությամբ լուսաբանված են սոցիալիստական հասարակարգի սոցիալական զարգացման օրինաչափությունները, նոր մարդու դաստիարակության հրատապ խնդիրները։

«Սովետական մարդկանց բարոյա-քաղաքական հատկանիշները,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— ձևավորվում են մեր ամբողջ սոցիալիստական կացութաձևով, հասարակության մեջ գործերի ամբողջ ընթացքով, բայց ամենից առաջ կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների գաղափարա-դաստիարակչական նպատակասլաց, համառ աշխատանքով»։ Սովետական կոմունիստների համաժողովը խնդիր է դնում՝ աշխատավորության հոծ զանգվածներին լիակատար զինել մեր գաղափարների խոր իմացությամբ, ստեղծագործաբար մոտենալ սովետական մարդու կոմունիստական դաստիարակության գործին։

Կուսակցության գաղափարա-քաղաքական գործունեության առանցքն աշխատավորության կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, նրանց մարքսիզմ-լենինիզմի ոգով դաստիարակումը։

Դժվար է գտնել մարդկային գործունեության այնպիսի բնագավառ, որն իր վրա չկրի դաստիարակության կնիքը։ Դաստիարակությունը քաղաքակրթության բնույթն ու աստիճանը բնորոշող հատկանիշն է, հասարակական ու անձնական հարաբերությունները կարգավորող գործոնը։ Այն լայն հասկացություն է, որի հիմնական տարրերը բարոյա-քաղաքական և հոգեբանական-գեղագիտական արժեքներն են։ Դաստիարակությունն ըստ էության հասարակական-դասակարգային կատեգորիա է, ուր դրսևորվում են սոցիալական խմբավորումների իդեալները, ապրելակերպի չափանիշները։ Պատմության ընթացքն այնպիսին է եղել, որ իշխող դասակարգերն են թելադրել իրենց կամքը, օրենքի աստիճանի հասցրել մշակած բարոյա-դաստիարակչական նորմերը։ Պատմական թատերաբեմ բարձրացած առաջադիմական դասակարգերը հանդես են եկել հասարակության անունից և փորձել հիմնավորել իրենց սոցիալ-քաղաքական ու բարոյա-գեղագիտական ծրագրերը։ Սակայն, երբ խորամուխ ենք լինում անցյալի մտածողների առաջադրած ծրագրերի էության մեջ, դրանք

հեռու են եղել իրականություն դառնալու հնարավորությունից, ճիշտ չեն արտահայտել հասարակության մեծամասնության շահերն ու նկրտումները։ Բոլոր գրի առած բարոյագիտական խրատականներում, անշուշտ, կան համամարդկային արժեքներ, որոնք չեն հնացել, սակայն, առաջադրված դեղատոմսերում բացահայտորեն կամ քողարկված ձևով արդարացված են սոցիալական անհավասարությունը և վերջինից բխող հասարակական հարաբերությունները։ Ինչ վերաբերում է կրոնին, ապա այն հավերժացրել է երկրային ամենազորների իշխանությունն ու բարոյականությունը, ընչազուրկներին խոստանալով երջանկություն անդրշիրիմյան աշխարհում։

Բուրժուական մտածողները մասնավոր սեփականությունը համարելով բնականոն երևույթ, սրբապղծություն են համարում վերջինիս դեմ ուղղված քայլերը։ Ըստ նրանց՝ անձնավորության անհատականության ու ազատության պահպանման երաշխիքը, ես-ի սուվերենության պատվարը սեփականությունն է։

Ժամանակակից բուրժուական բարոյագետները, գեղագետները, սոցիալական հոգեբանները մարդու ուսումնասիրության պրոբլեմատիկան անջատում են հասարակության սոցիալ-տնտեսական հարաբերություններից, պարփակվում անձնավորության ներաշխարհի, ենթագիտակցական հույզերի ոլորտների բացահայտման ու նկարագրի մեջ։ Այսպես կոչված՝ պահպանողականներն ու ավանդապահները պատեհ կամ անպատեհ կրկնում են պատմության մերժած այն սին դրույթը, թե մարդը, նրա ապրելակերպն ու վարքագիծը անփոփոխ են։ Տակավին սովետական իշխանության արշալույսին մեր գաղափարական ընդդիմախոսները բանվորա-գյուղացիական պետությունը պարզապես անհեռանկար էին համարում նրա համար, որ, իբր, անհնար է մարդու վերափոխումը, նրա ձերբազատումը էգոիզմից։ Նման տեսակետ ունեին Հերբերտ Ուելսը և Բերտրան Ռասսելը։ Ժամանակը, սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակները, նոր մարդու ձևավորումը հօդս ցնդեցրին բուրժուական մարգարեների գուշակումները։

Սոցիալիստական հասարակության գերագույն նպատակը մարդն է, նրա ազատությունը, երջանկությունը, ունակությունների համակողմանի զարգացումը։ Սովետական մարդը մասնիկ չէ, այլ սոցիալական օրգանիզմի ակտիվ, գործունակ ուժը, որի աշխատանքից ու ապրելակերպից շատ բանով կախված է կոլեկտիվի և ողջ հասարակության համագործակցված զարգացումը, նրա ընթացքի ռիթմը։ «Կոմունիզմի կառուցումը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— անկարելի է առաջ շարժել առանց իրեն՝ մարդու բազմակողմանի զարգացման։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութա-տեխնիկական համապատասխան բազայի»։ ՍՄԿԿ նշանաբանը մարդու զարգացումն ու դաստիարակությունն է, կոմունիստական հումանիզմի արմատավորումը կյանքում։ Մեր կուսակցությունն իր անդամներին ներկայացրել ու ներկայացնում է բարոյական այնպիսի պահանջներ, որոնք ունեն խոր հիմքեր։ Դրանք վճռական դեր են խաղացել հեղափոխության աննկուն, կարգապահ ու համոզված մարտիկների դաստիարակության գործում։ Այդ է վկայում կուսակցության, երեք հեղափոխությունների և սոցիալիստական շինարարության տարիներին կուտակված փորձը։ Բարոյական արժեքները,



որոնք մշակվել են մեր կուսակցության մեջ հեղափոխության շրջանում, առայսօր պահպանել են իրենց այժմեականությունը, ստացել միջազգային նշանակություն։ Ավելին, կարելի է ասել որ լենինյան ավանդներում պատշաճ լուծում գտան մի շարք կարևոր հարցեր, կապված բարոյական այնպիսի նորմերի հետ, ինչպիսին անհատի ու հասարակության փոխհարաբերությունն է սոցիալիզմի պայմաններում։

Սակայն անձնավորության սոցիալիստական տիպի ձևավորումն անհամաչափ է ընթացել, դրա պատճառը դասակարգերի ու խմբերի ժառանգած տարբեր տնտեսական ու կուլտուրական մակարդակն է եղել, ինչպես և հասարակական գիտակցության այլ ձևերի առանձնահատկությունները։ Ժողովրդի սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը դրսևորվեց տարբեր մակարդակի կրթության ու կուլտուրայի տեր մարդկանց բարոյական, իրավական, գեղագիտական գիտակցության, գիտական աշխարհայացքի միավորման հետագա զարգացմամբ։ Սոցիալիստական շինարարության տարիներին մեր երկրում առաջացավ մարդկանց պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը։ Համատեղ աշխատանքում, սոցիալիզմի համար մղած պայքարում, նրա պաշտպանության մարտերում ծնունդ առան դասակարգերի և սոցիալական խմբերի, ազգերի և ազգությունների նոր, բարեկամության ու համագործակցության ներդաշնակ հարաբերություններ։

Սովետական մարդիկ զոդված են մարքս-լենինյան գաղափարախոսության, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակների ընդհանրությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ մասնավորապես ընդգծված է, որ սովետական մարդու նոր կերպարը, նրա կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում են անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անզիջում պայքարով։ Եվ, այնուհետև, չի կարող կոմունիստական բարոյականության հաղթանակ լինել առանց վճռական պայքար մղելու էգոիզմի, շահամոլության, կաշառակերության, պորտաբուծության, գրպարտության, հարբեցողության դեմ և այլն։ Սոցիալիզմի կառուցման ողջ պատմության ընթացքում տեղի է ունեցել սոցիալիստական գիտակցության բոլոր ձևերի անշեղ զարգացում և բուրժուական, անհատապաշտական գիտակցության դրսևորումների հաղթահարում։

Մեր երկրում սոցիալիստական տիպի անձնավորության զարգացման համար ստեղծվել են հասարակական հարաբերությունների որակապես նոր սիստեմ, սոցիալական նոր միջավայր։ Պատմության մեջ առաջին անգամ հասարակության անդամների օբյեկտիվ կացության մեջ դրսևորվեցին նոր, էական գծեր, որոնք մեծապես ազդում են մարդկանց վարքագծի ու հատկությունների վրա։

Սոցիալիստական հասարակությունն ընթանում է հումանիզացիայի, կյանքի պարագաների «մարդկայնացման» ուղիով։ Սոցիալիզմը, վերացնելով մարդու շահագործումը մարդու կողմից, նյութական ու հոգևոր բոլոր հարստությունները ի սպաս դրեց աշխատանքի մարդուն։ Աշխատանքը դարձավ ո՛չ միայն կյանքի միջոց, այլև հասարակությանը ծառայելու նվիրում։ Այստեղ մարդկանց միջև հաստատված հարաբերություններին բնորոշ են զարգացող սոցիալական միատարրությունը, կոլեկտիվիզմը, եղբայրական փոխօգնությունը։

Երբ քննում ենք սոցիալիստական հասարակարգը, որպես անձնավորու-

թյան սոցիալական միջավայր, չպետք է մոռանանք, որ այն տնտեսական, բարոյական և ինտելեկտուալ առումով տակավին կրում է հին աշխարհի կնիքը, որի ընդերքից է ինքը սերվել։ Հետևաբար, գոյություն ունեցող հասարակական հարաբերությունները վերլուծելիս, դրանց սոցիալ-դասակարգային բովանդակությունը գնահատելիս, անհրաժեշտ է ցուցաբերել պատմական մոտեցում, դիֆերենցված քննել նորի և հնի փոխհարաբերությունը՝ հասարակական կյանքի տարբեր ոլորտներում։

Չպետք է մոռանալ, որ նոր մարդու դաստիարակությունը երկար ժամանակ ընթացել է սոցիալիզմի զարգացման այնպիսի միջավայրում, երբ տակավին մնում են էական տարբերություններ քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, որակյալ ու հասարակ աշխատանքի միջև, ինչպես և տնտեսական անհավասարության մնացորդները, որոնք մնացել են խորտակված բուրժուական հասարակությունից։ Այդ ամենը դժվարացնում են նոր մարդու մարդկայնացման ընթացքը։

Սոցիալական նոր միջավայրը, պայմանավորելով հասարակության անդամների գործունեության ու վարքագծի հիմնական բովանդակությունը, ձևավորող ներգործություն է ունենում անձնավորության հատկությունների մշակման, ավելի ճիշտ հատկությունների համակարգի վրա, ինչպիսիք են՝ պահանջմունքները, շահագրգռությունները, համոզմունքները, իդեալները, որոնց գումարային արտահայտությունը կազմում է սոցիալիստական տիպի անձնավորության բնույթը։

Նոր անձնավորությանը բնորոշող առաջին խումբ հատկությունները կապված են ընդհանրապես նրա վերաբերմունքի հետ հասարակության նկատմամբ։ Այստեղ բնութագրական է այն, որ սոցիալիստական անհատը հանդես է գալիս որպես գաղափարական անձնավորություն, որը բարձր է դասում հասարակական շահը, տոգորված է կոմունիստական գաղափարախոսությամբ։ Սոցիալիստական անհատին բնորոշ են նաև այնպիսի հատկություններ, ինչպիսիք են՝ սեփական երկրի, վերջինիս հարստությունների տեր լինելու բարձր զգացումը, աշխատանքի մարդու արժանապատվության գիտակցումը, լավատեսությունն ու նպատակասլացությունը, քաղաքական և աշխատանքային ակտիվությունը։ Անձնավորության մյուս խումբ հատկություններն առնչվում են սեփական գործունեության նկատմամբ վերաբերմունքի հետ, հասարակության մեջ գրաված տեղի գիտակցման հետ։ Սոցիալիզմի օրոք աշխատանքը ձեռք է բերում նոր որակ, այն ո՛չ միայն կենսամիջոց է, այլև հասարակական բարիք, ծառայում է ժողովրդին, նոր հասարակարգի ամրապնդմանը։ Բանվորի, գյուղացու, ծառայողի առօրյա աշխատանքը նեղ անձնական գործից վերածվում է հասարակական գործունեության տարբերակի, ուր բացահայտվում են մարդու ունակությունները, դրսևորվում հասարակական-քաղաքական գործչի ձիրքերը, ստեղծագործական նախաձեռնությունը։

Աշխատանքի նկատմամբ նման վերաբերմունքը զարգացվում է դաստիարակչական միջոցներով, խրախուսվում կառավարական պարգևներով, դրվատվում արվեստի ու գրականության երկերում։ Օրինաչափ է, որ նման պայմաններում մասսայական հետաքրքրություն է ծնվում սեփական աշխատանքային գործունեության բովանդակության և արդյունքի նկատմամբ։ Մարդը ձգտում է ո՛չ միայն վաստակել (դա կարևոր հանգամանք է), նրան հուզում են արտադրության ընդհանուր հարցերը, իր ձեռնարկության, արտադրամասի



հաջողությունը կամ անհաջողությունը։ Աշխատանքային կոլեկտիվներում են ձևավորվում մարդկանց նոր, սոցիալիստական հատկությունները, ստեղծվում բարեկամության և ընկերական փոխօգնության հարաբերությունները։ Յուրաքանչյուրի պատասխանատվությունը կոլեկտիվի առջև և կոլեկտիվի պատասխանատվությունն ամեն մի աշխատողի համար— այս է սոցիալիստական ապրելակերպի բնորոշ գիծը։

Աշխատողի գործի հանդեպ հասարակական վերաբերմունքի փոփոխումը, փոխում է նաև նրա մոտեցումը մշակույթի և կրթության նկատմամբ։ Գիտելիքների, գիտության, գիտնականի հեղինակությունը, առհասարակ կրթված մարդու վարկը ժողովրդի աչքում շատ է բարձրացել։ Կրթությունը, գիտելիքը դարձել են աշխատավորության կենսական պահանջմունքը։ Ինտենսիվ հոգևոր կյանքը սովետական իրականության էական հատկանիշն է, իսկ ձգտումը դեպի գիտելիքները՝ նոր անձնավորության ինտելեկտուալ խառնվածքի բնորոշ գիծը։

Աշխատանքի հանդեպ նոր վերաբերմունքը, սովետական մարդու հատկությունն է, որը դրսևորվում է սոցիալիստական մրցության, հատկապես վերջինիս բարձրագույն ձևում՝ կոմունիստական աշխատանքի շարժման մեջ։ Այստեղ նորը՝ աշխատանքային էնտուզիազմի, բարոյական շարժառիթների նշանակալից աճն է։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման, կոմունիստական դաստիարակության խնդիրներն այդ շարժման մասնակիցները դիտում են միասնության մեջ։ Արտադրության մեջ, սակայն, դեռ կան չլուծված լուրջ խնդիրներ՝ առանձին կատեգորիաների աշխատողների ցածր որակավորումը, աշխատանքի հանդեպ հետաքրքրության բացակայությունը թերի մասնագիտացում ստացածների, ծանր ու միապաղաղ աշխատանք կատարողների մոտ, ինչպես նաև աշխատանքային կարգապահության խախտման առանձին փաստեր և այլն։

ՍՄԿԿ XXIV համագումարում միանգամայն ճիշտ նշվեց, որ աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, նոր մարդու ձևավորումը բարդ ու բազմապիսի պրոցես է։ Դաստիարակումը ենթադրում է գաղափարա-քաղաքական ներգործման բոլոր միջոցների արդյունավետ աճ, ինչպես և աշխատանքի ու արտադրության ճիշտ կազմակերպում, կոլեկտիվների բարձր արտադրողականությամբ աշխատելու պայմանների ստեղծում, աշխատավորների որակավորման բարձրացում, առաջավոր փորձի տիրապետում։ Դաստիարակությունը անխզելի է սովետական մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների բավարարման ամենօրյա հոգատարությունից։ «Այդպիսի մոտեցումը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— բխում է ոչ միայն աշխատանքի նյութական ու բարոյական խթանների դերի հետագա ուժեղացման մեր գծից։ Հարցը զգալիորեն ավելի լայն է դրված՝ ստեղծել սովետական մարդկանց, բոլոր աշխատավորների ընդունակությունների, ստեղծագործական ակտիվության համակողմանի զարգացմանը նպաստող պայմաններ, այսինքն՝ զարգացնել հասարակության գլխավոր արտադրողական ուժը»։

Սոցիալիստական տիպի անձնավորությունը բնութագրվում է նաև հանդեպ ուրիշներն ունեցած վերաբերմունքի առանձնահատկություններով։ Անձնավորության այդ կողմը առավել լրիվ բացահայտվում է մարդկանց փոխգործողության, նպատակների ու վարքագծի նորմերի վերլուծությամբ։ Հայտնի է, որ բուրժուական հասարակության մեջ գոյություն ունի անլուծելի կոնֆլիկտ հասարակության պաշտոնապես հռչակած նպատակների և այն նորմերի միջև,

որոնցով մարդիկ ղեկավարվում են այդ նպատակներին հասնելու պրոցեսում: Կապիտալիզմի բնույթը, սոցիալական խմբերի շահերի անտագոնիզմը հանգեցնում են հասարակության բախումների, ապա և կոնֆլիկտի՝ հռչակած նպատակների ու իրական նորմերի միջև:

Սոցիալիզմի պայմաններում հասարակական կյանքում գոյություն ունի նպատակների ու նորմերի միասնություն: Այդ արտահայտվում է նրանում, որ ընդհանուր, հասարակության համար հռչակած դեմոկրատիզմը, կոլեկտիվիզմի, ինտերնացիոնալիզմի և մյուս սկզբունքներն ընդունելի են նաև առանձին կոլեկտիվների ու քաղաքացիների կողմից: Սոցիալիստական հասարակության ինստիտուտները՝ պետությունը, կուսակցությունը, կոմերիտմիությունը, արհմիությունները մարդիկ ընկալում են որպես իրենց կազմակերպությունները, իսկ դրանց ֆունկցիան՝ աշխատավոր մարդուն ուղղված գործունեություն:

Սոցիալիստական տիպի անձնավորությանը հատկանշական է հարգանքը մարդու նկատմամբ, անկախ նրա ծագումից, վիճակից, ազգային պատկանելությունից: Մարդու անհատականության չափանիշներն են՝ նրա մտավոր ու մասնագիտական հակումը, աշխատասիրությունը, հասարակության պրոգրեսին նպաստելու կարողության չափը: Սոցիալիստական անհատը հարուստ է հասարակության հետ շփվելու եզրերով, նրան հարազատ է կոլեկտիվիզմի, եղբայրության, ինտերնացիոնալիզմի զգացումը:

Սոցիալիստական հասարակարգում մարդկանց սոցիալական դերերը արտակարգ մեծացել են, աշխատանքային կոլեկտիվները լուծում են նաև ընդհանուր խնդիրներ, որոնց իմաստը կոմունիստական ապրելակերպի հաստատումն է, աշխատավորների բարեկեցության բարձրացումը: Այստեղ առաջավոր մարդկանց ապրելակերպը դառնում է հասարակության բոլոր անդամների վարքագծի չափանիշ:

Սոցիալիզմի պայմաններում մարդկանց ապրելակերպում միասնական տնտեսական ու գաղափարա-բարոյական հիմքի ստեղծումը նպաստում է անհատականությունների ու տիպերի բազմազանությանը: Ճշմարտացի է այն հանրահայտ դրույթը, որ անհատական զարգացման բազմազանությունը առհասարակ սոցիալական պրոգրեսի անհրաժեշտ պայմանն է: Սակայն սոցիալիզմը բացառում է բազմազանությունը գոյության պայքարում, որը նպաստում է մարդու կողմից մարդու շահագործման կատարելությանը, և հաստատում գործունեության ունակությունների ու տեսակների այնպիսի բազմազանություն, որը զարգացնում է անձնավորության բարոյական բարձր հատկանիշները, մտավոր ու ֆիզիկական տվյալները, ուժեղացնում կոլեկտիվիզմի, հումանիզմի զգացումը:

Անձնավորության ազատությունը սոցիալիզմի օրոք— դա գործունեության ազատություն է, սեփական ունակությունների զարգացման ազատություն: Արմատապես փոխվում է կապը մարդու անձնական ձգտումների և հասարակական գործերի միջև: Անհատական անձնական կյանքը դառնում է առավել հարուստ, սոցիալապես առավել կատարյալ: Ակտիվորեն մասնակցելով հասարակական գործերին, սոցիալիստական հասարակարգի մարդիկ ապրում են իմաստալի կյանքով, առօրյան հագեցնում գիտակցված հույզերով: Նման գոյավիճակը մարդուն դուրս է բերում սոցիալական լայն ասպարեզ, ծնում նոր զգացմունքներ ու խոհեր:

Մարքսը նկատել է, որ մարդը «միայն հասարակության մեջ կարող է զար-



գացնել իր իսկական բնությունը և նրա բնության ուժի մասին կարելի է դատել ո՛չ թե առանձին անձնավորությունների, այլ ողջ հասարակության ուժով» (К. Маркс и Ф. Энгельс, Сочинения, т. 2, стр. 146):

Դաստիարակության արդյունքը պայմանավորված է ո՛չ միայն հասարակության բնույթով, սոցիալ-տնտեսական կարգով, կուլտուրայով, այլև յուրաքանչյուր անձնավորության առանձնահատկություններով, նրա բնատուր ձիրքով, ունակություններով, արդեն յուրացրած բարոյական արժեքներով:

Սոցիալիստական դաստիարակությունը սկզբունքորեն համընկնում է սոցիալիստական իրականության օբյեկտիվ կացության հետ: Սակայն այն չի բացառում սոցիալ-տնտեսական պրակտիկայում և դաստիարակչական աշխատանքում թերությունների ու սխալների հնարավորությունը: Քանի որ դեռևս երաշխիքներ չկան դրանց իսպառ վերացման համար, ապա նման հակասությունները անխուսափելի են: Անհրաժեշտ է գաղափարական ներգործման բոլոր հնարները նպատակային օգտագործել՝ կանխելու անցանկալի հետևանքները, չեզոքացնելու դրանց վնասակար ազդեցությունը:

Արդի գիտա-տեխնիկական հեղափոխությունը հասարակական կյանքում առաջացնում է նոր երևույթներ, որոնք ազդում են անձնավորության, դաստիարակչական աշխատանքի վրա: Կասկած չի հարուցում, որ սոցիալիստական հասարակության մեջ ինդուստրիալիզացիան, ուրբանիզացիան, գիտության ու տեխնիկայի զարգացումը, մասսայական ինֆորմացիայի ու կոմունիկացիայի կատարելագործումն ու տարածումը ներազդում են մարդու հոգեկանի վրա, նախ՝ դրական առումով: Բարձրանում է բնակչության կրթական ու կուլտուրական մակարդակը, ընդլայնվում է մտահորիզոնը, նվազում կրոնի ազդեցությունը մարդկանց գիտակցության ու վարքագծի վրա:

Սակայն գիտա-տեխնիկական հեղափոխությունը միաժամանակ լուրջ բացասական ներգործություն է ունենում մարդկանց հոգեկանի վրա, մասնավորապես, երիտասարդության, դա ատոմային-ջրածնային զենքի կիրառման վտանգն է: Այս հանգամանքը շատերի մոտ ստեղծում է կյանքի տվյալ պահը ապագայի հանդեպ գերադասելու միտում, որն ստիպում է առանձին մարդկանց վերանայելու որոշ բարոյական նորմեր: Բուրժուական պրոպագանդան խորացնում է դա, մասսաներին ահաբեկում «համաշխարհային աղետի» ուրվականով:

Սոցիալիստական հասարակությունը ելնում է տրամագծորեն հակադիր դիրքերից, մարդկանց մեջ դաստիարակում նոր համաշխարհային պատերազմի կանխման հնարավորության հավատ, անդուլ պայքարում հանուն խաղաղության, մերժում «ապրել միայն կյանքի տվյալ պահով» հոռետեսական մտայնությունը: Անկասկած, սոցիալիստական հասարակարգի օպտիմիզմը իր բարերար ներգործությունն է ունենում մարդկանց վրա: Սակայն, ցավոք, այն չի կարող վերացնել «դամոկլյան սրի» պիտակի գոյության փաստը, որը և լրացուցիչ դժվարություններ է հարուցում դաստիարակության պրոցեսում:

Գիտա-տեխնիկական հեղափոխության հետ կապված գործոնների թվում, որոնք բարդացնում են երիտասարդ սերնդի դաստիարակության պրոցեսը, պակաս տեղ չի գրավում կանանց մասսայական ընդգրկումը մասնագիտական գործունեության ոլորտը: Վերջինս հակասություն է առաջացնում կնոջ պրոֆեսիոնալ և ընտանեկան ֆունկցիաների միջև, որը կարող է լուծվել միայն կեն-

ցաղային սպասարկման ծառայությունների ինտենսիվ զարգացմամբ։ Դա հնարավորություն կընձեռի կնոջը շատ ժամանակ հատկացնել երեխաների դաստիարակությանը։

Ժամանակակից գիտությունն ապացուցել է, որ բացառված է ընտանիքի դաստիարակչական ֆունկցիան ամբողջապես հանձնել հասարակական հիմնարկություններին։ Ընտանիքի, ծնողներից յուրաքանչյուրի ազդեցության բացակայությունը խիստ արգելակում է երեխայի զարգացումը և կարող է ստեղծել ավելորդ բարդություններ նրա դաստիարակության գործում։

Գիտա-տեխնիկական հեղափոխության հարուցած պրոբլեմները պահանջում են արմատապես կատարելագործել դաստիարակության ողջ սիստեմը։ Այսպես, հազիվ թե տեսական հիմնավորում է պահանջում աշխատանքային դաստիարակության նշանակության պրոբլեմը։ Սակայն վերջինիս ուսումնասիրությունը կոնկրետ կապակցությունների մեջ պահանջում է հետազոտման յուրահատուկ եղանակ։ Ամեն մարդ յուրովի է առնչվում աշխատանքի հետ՝ ցուցաբերելով կոնկրետ մոտեցում։ Հոգեբանական տարբեր կացություններ են առաջացնում անձնավորության ունակություններին համապատասխանող և չհամապատասխանող աշխատանքը, ստեղծագործական կամ միօրինակ գործունեությունը։ Այդ գործոնների փոփոխումից է կախված աշխատանքի դաստիարակչական ազդեցության աստիճանը։ Եվ որքան մեծ է հասարակության ակնկալությունների աշխատանքից, որպես դաստիարակության միջոցի, այնքան ավելի է մեծանում մասնագիտական կողմնորոշման դերը անձնավորության ձևավորման գործում։ Եթե մարդ ստանում է սխալ, իր հնարավորություններին և ունակություններին չհամապատասխանող մասնագիտական կողմնորոշում, նա ո՛չ միայն երբեք լավ չի կատարի իր գործը (այդ ինքնին արդեն մեծ կորուստ է հասարակության համար), այլև կզրկվի աշխատանքի բարերար ներգործությունից։ Ավելին, նրա մոտ կարող է առաջանալ իր նկատմամբ անվստահության, անլիարժեքության զգացում։ Եվ այս բոլորը միասին կարող են ի չիք դարձնել դաստիարակողների ջանքերը։

Կարևոր է նաև այն հանգամանքը, որ առանց իր նկատմամբ վստահության, ինքնուրույնության զգացման, չկա և ազատության զգացումը՝ մարդու համար ստեղծված պարագաների տնօրինման արտահայտությունը, հետևաբար չկա և պատասխանատվությունը՝ բարոյականության հիմքերի հիմքը։ Անձնավորության բնական ունակությունների և իր կատարած սոցիալ-մասնագիտական դերերի միջև առաջացած վիհը բարերար հիմք է հանդիսանում, մի կողմից՝ անսկզբունք հարմարվողականության, մյուս կողմից՝ կարծրացած դժգոհության, նախանձի, հոգեկան անկայունության համար, որոնք արտահայտվում են կամ մերձավորներին բանսարկելու, չարախոսելու, կամ հարբեցողության ու խուլիգանության մեջ։

Դաստիարակչական ներգործման էական հատկանիշներից է հասարակական իդեալների և սոցիալական ծրագրերի պրոպագանդումը, դրանք մարդկանց համոզմունք դարձնելը։ Այդ տեսակետից կոմունիստական դաստիարակության համակարգը անհամեմատ ավելի կատարյալ է ու ներգործուն, քան ցանկացած ուրիշ սիստեմ։ Սոցիալիստական իդեալներն ու արժեքները համընկնում են հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափություններին, հանդիսանում մարդկային մտքի հումանիստական ձգտումների արտահայտությունը։



«Նույնիսկ ամենաառաջավոր գաղափարախոսությունը,— ասված է ՍՄԿԿ XXIV համագումարին տրված կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— իրական ուժ է դառնում սոսկ այն ժամանակ, երբ այն, տիրապետելով մասսաներին, նրանց մղում է ակտիվ գործողությունների, սահմանում է նրանց ամենօրյա վարքագծի նորմերը»։

Նոր մարդու ներդաշնակ զարգացումը ենթադրում է նրա բոլոր կարողությունների կատարելագործում, վարվեցողության բարձր կուլտուրայի մշակում։ Անձնավորության արտաքին տեսքը, վարվելակերպը ինքնանպատակ արժեքներ չեն, դրանք անհրաժեշտ պայման են իրականացնելու կոմունիզմի բարոյական սկզբունքները, հաստատելու մարդկանց միջև փոխադարձ հարգանքի, բարեկամության, ընկերական հարաբերություններ։ Բարեկիրթ վարվելակերպը ապահովում է մարդկանց միջև ո՛չ միայն շփման որոշակի մակարդակ, այլև անձնավորության մեջ առաջացնում կայուն ցանկություն՝ դրսևորելու իր դրական արժանիքները։ Վերջինիս հակապատկերն է վարվելակերպի բացակայությունը, շրջապատի հետ շփվելու մարդկային հատկությունների անտեսումը։ Նման բացասական գծերով օժտված անհատն ընկնում է յուրօրինակ հոգեբանական փակուղու մեջ. ինքնամեկուսանում է, դառնում հիվանդագին հույզերի գերի, հակադրվում հասարակությանը։

Կոմունիստական կուսակցության կադրային քաղաքականությունը մեծապես նպաստում է նոր մարդու ձևավորմանը։ ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետվությունում, պատգամավորների ելույթներում հատուկ ուշադրության արժանացավ կադրերի ընտրության ու դաստիարակության հարցը։ Կուսակցության նպատակն է՝ հին կադրերի նկատմամբ հոգատար վերաբերմունքի, նրանց փորձի ու գիտելիքների առավելագույն օգտագործման հետ մեկտեղ, առաջ քաշել երիտասարդ, խոստումնալից աշխատողների։ Այս սկզբունքը ՍՄԿԿ քաղաքական գծի, նրա հեղափոխական ավանդույթների հաջորդայնության պարտադիր պայմանն է։

Հաղթահարելով անհատի պաշտամունքի, սուբյեկտիվիզմի վնասակար հետևանքները, կադրերի հետ տարվող աշխատանքում հաստատվել է այնպիսի պրակտիկա, երբ մարդկանց հանդեպ վստահությունն ու հարգանքը զուգորդվում են նրանց նկատմամբ սկզբունքային պահանջկոտության հետ։ Ստեղծված գործարար ու ընկերական մթնոլորտի շնորհիվ առավել լրիվ են դրսևորվում մարդկանց ձիրքը և ունակությունները։

Արդի հասարակական ու գիտա-տեխնիկական առաջընթացը պահանջում է, որպեսզի սովետական մարդիկ քաղաքական բարձր գիտակցականությունը զուգորդեն մասնագիտական կատարյալ պատրաստության հետ, ունակ լինեն կառավարման ժամանակակից մեթոդներով լուծելու էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հարցերը։

Լինելով նորարարների կուսակցություն, ՍՄԿԿ մշտապես բարձր է դասել մարդկային խառնվածքի՝ նորի զգացման հատկությունը։ Ունենալ նորի զգացում, նշանակում է տեսնել զարգացման հեռանկարը, հայացքն ուղել դեպի ապագան, գտնել ծագող խնդիրների լուծման առավել ճշգրիտ ուղիներ։

Սոցիալիզմը մասսաների գիտակցական ստեղծագործությունն է, նրանց հասարակական-քաղաքական ակտիվության մարմնացումը։ Այստեղ հասարակության կառավարման կարևոր մարզերից է մարդկանց կազմակերպումն ու դաստիարակումը։ Կուսակցությունը մշտապես ուշադրություն է նվիրում

տնտեսական և դաստիարակչական աշխատանքի միասնության անհրաժեշտությանը, ընդունած տնտեսական և վարչական որոշումների դաստիարակչական նշանակությանը։ Կառավարման սոցիալիստական եղանակը հիմնված է կոլեգիալության և անձնական պատասխանատվության զուգորդման վրա։ Կուսակցությունը ելնում է լենինյան պատգամից՝ որոշակի անձն ամբողջովին պատասխանատու է որոշակի աշխատանքի կատարման համար։ Կոմունիստական հասարակարգի կառուցման արդի փուլում կադրերի կարգապահության և պատասխանատվության բարձրացումը կուսակցության կարևորագույն խնդիրներից է։ Սոցիալիստական կարգապահությունը հիմնված չէ վախի, վարչարարական մեթոդների վրա, որոնք մարդկանց զրկում են վստահությունից, նախաձեռնությունից, ծնում ինքնապահովագրում և անազնվություն։ «Խոսքը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— վերաբերում է այն կարգապահությանը, որը կառուցված է մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա։ Իսկ ինչ վերաբերում է այն աշխատողներին, որոնք խախտում են կարգապահությունը, քննադատությունից հետևություններ չեն անում, ճիշտ վարքագիծ չեն դրսևորում, ապա նրանց նկատմամբ, պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռք առնվեն։ Մեզանում ղեկավար պոստերը ոչ ոքի ընդմիշտ չեն տրվում։ Սոցիալիստական կարգապահությունը այն կարգապահությունն է, որը միասնական է հասարակության բոլոր անդամների համար, պարտադիր է բոլորի և ամեն մեկի համար»։

Կոմունիստական հասարակարգի կառուցումը Լենինը դիտում էր որպես կոմպլեքս խնդիր, ուր տնտեսական ու սոցիալ-քաղաքական պրոբլեմների լուծումն օրգանապես կապված են նոր մարդու ձևավորման, նրա համակողմանի ու ներդաշնակ զարգացման հետ։ Այդ խնդիրը կուսակցության ծրագրային նպատակն է, որն իրագործվում է աստիճանաբար։ Այստեղ դրսևորվում են լուծման նոր ձևեր ու մեթոդներ, որոնք համահունչ են հասարակության զարգացման արդի տենդենցներին։ Կյանքը ցույց է տալիս, որ գիտությունն ու տեխնիկան ինքնին չեն կարող տալ սոցիալ-բարոյական բոլոր պրոբլեմների լուծման բանալին։ Հասարակության և անձնավորության հոգևոր հարստությունը ներառնում է գիտության ու արվեստի, գաղափարախոսության նվաճումները։ Միայն այդ բոլորի ներգործման ու տարածման միջոցով ձևավորվում է անձնավորության մտածողության կուլտուրան, կատարելագործվում հասարակական հարաբերությունները, անձնավորությունը հանդես է գալիս որպես ակտիվ քաղաքացի, մարմնավորելով հումանիզմի ու կոլեկտիվիզմի բարոյական վսեմ գծեր։

Սովետական մարդը ինտերնացիոնալիզմի, հումանիզմի բարձր գաղափարների մարմնացումն է, նա իր սխրանքներով ու ապրելակերպով հաստատեց, որ սոցիալիստական հասարակարգում ձևավորվում է կոմունիզմի քաղաքացին, բոլոր ժամանակների առաջադիմական նկրտումների մարմնավորողը և սոցիալական իդեալը։



# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը մեր ժողովրդին առաջնորդելով Վ. Ի. Լենինի նշած ուղիով, անցած հինգ տարում երկիրը հասցրեց նորանոր բարձունքների։ Այդ վառ կերպով դրսևորվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, ուր ամփոփվեցին ութերորդ հնգամյակի արդյունքները և հաստատվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյակի հոյակապ ծրագիրը։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի՝ կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի՝ իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ զեկուցումներում, համագումարի մյուս փաստաթղթերում ուշադրավ տեղ էին հատկացված աշխատավորների կենսամակարդակի բարձրացմանը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության առաջին իսկ օրից Վ. Ի. Լենինը բազմիցս անդրադարձել է բանվորների, աշխատավոր գյուղացիների, մտավորականության կենսամակարդակի բարձրացման հարցերին, ցույց տվել դրանց լուծման միջոցները։ Ժողովրդական տնտեսության խորհուրդների I համագումարում արտասանած ճառում Վ. Ի. Լենինը նշել է. «Միայն սոցիալիզմը հնարավորություն կտա պրոդուկտների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ, և այնպես, որ նա բարեկեցության հնարավորություն ընձեռի աշխատավորներին» (Երկեր, հ. 27, էջ 511)։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ միայն սոցիալիզմի ժամանակ հնարավոր կլինի լիակատար և հաստատուն բարեկեցիկ կյանք ստեղծել բանվորների և միջակ գյուղացիների համար, առանց ուրիշի աշխատանքը կողոպտելու (տե՛ս ПСС, т. 37, стр. 479)։

Ազգային եկամուտը հասարակության հարստության մարմնացումն է։ Հետևաբար, որքան մեծ լինի սոցիալիստական տերության ազգային եկամուտը, այնքան լայն հնարավորություններ կստեղծվեն բարեկեցիկ դարձնելու բնակչության կյանքը։ Ութերորդ հնգամյակում ՍՍՀՄ ազգային եկամտի աճը կազմեց 41 տոկոս։

Անցած հնգամյակում կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության կողմից նոր միջոցառումներ իրագործվեցին բնակչության եկամուտները բարձրացնելու նպատակով։ Դրա շնորհիվ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատա-

վարձը 1970 թվականին կազմեց 122 ռուբլի, որը 4 տոկոսով ավելի էր նախորդ տարվա համեմատությամբ։ Ամսվա աշխատավարձը, հաշված նաև սպառման հանրային ֆոնդերից տրվող լրացուցիչ վճարումներն ու արտոնությունները, կազմեց 164 ռուբլի։ Միայն անցյալ տարի սպառման հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնությունները հասել են 64 միլիարդ ռուբլու։

Աշխատավորների ռեալ եկամուտների ավելացման աղբյուրներից մեկն էլ նրանցից գանձվող հարկերի կրճատումն է։ Այժմ ՍՍՀՄ-ում մինչև 60 ռուբլի աշխատավարձ ստացողներից հարկեր չեն գանձվում։ Ավելացել է բանվոր-ծառայողների նվազագույն արձակուրդի տևողությունը։ Աշխատավորների եկամուտների աճի վկայությունն է նաև այն, որ այսօր երկրի խնայողական դրամարկղներում բնակչության ավանդները կազմում են ավելի քան 46 միլիարդ ռուբլի։

Աշխատանքով ապահովվածությունը, աշխատավորության կյանքի ապահովության հիմնական պայմանն է։ ՍՍՀՄ-ում վաղուց վերացել է բոլոր մասնագիտությունների ու կատեգորիաների բանվոր-ծառայողների գործազրկությունը։ Այժմ մեզ մոտ աշխատանքային շաբաթվա տևողությունը 40,1 ժամ է, որն աշխարհում ամենակարճն է։ Այն Անգլիայում 46,1 ժամ է, Ֆրանսիայում՝ 45,6, Ճապոնիայում՝ 44,5, ԱՄՆ-ում՝ 41,2 ժամ (տե՛ս «Политическое самообразование», 1970, № 1)։

Սոցիալիստական պետության հոգատարությունը ժողովրդի բարեկեցության նկատմամբ ակներև է նաև բնակարանային շինարարության ծավալման ոլորտում։ Նույնիսկ «Նյուսուիկ» (Նյու-Յորք) շաբաթաթերթը խոստովանում է, որ Սովետական Միությունը բնակարանային շինարարության մարզում առաջին տեղն է գրավում աշխարհում։

Ութերորդ հնգամյակում մեր պետությունը 70 միլիարդ ռուբլի է հատկացրել բնակարանային և կոմունալ շինարարությանը։ 1966—1970 թթ. Սովետական Միությունում կառուցվել է 518 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Երկրի քաղաքներում և գյուղերում անցյալ տարի շահագործման են հանձնվել 105 միլիոն քառ. մետր անհատական բնակելի տներ։ Մեր հանրապետությունում ևս մեծ միջոցներ են հատկացվել այդ նպատակին։ Կառուցվել և շահագործման են հանձնվել 6100 հազար քառ. մետր տարածությամբ բնակելի տներ։ Նոր բնակարաններ են ստացել կամ բարելավել են իրենց բնակարանային պայմանները ավելի քան 730 հազար մարդ։

Պատմության մեջ սովետական պետությունն առաջինն էր, որ իր վրա վերցրեց ամբողջ բնակչության առողջապահության պահպանման և մշտական բարելավման գործը։ Բուժսպասարկումը Սովետական Միությունում ձրի է և մատչելի բոլորին։ Միայն ՍՍՀՄ առողջապահության մինիստրությանը ենթակա բժշկական հաստատությունների պահպանության համար 1970 թվականին հատկացվել է 9 միլիարդ ռուբլի։ Այդ նպատակին զգալի միջոցներ են հատկացնում նաև կոոպերատիվ ձեռնարկություններն ու արհեստակցական կազմակերպությունները։ Բնակչությանը բժիշկներով ապահովելու տեսակետից Սովետական Միությունն աշխարհում առաջին տեղն է գրավում։ 1969 թվականին 10 հազար բնակչին 26,6 բժիշկ էր սպասարկում։

Անցած հնգամյակի տարիներին բնակչության առողջությունը պահպանելու և բարելավելու նպատակով զգալի գործ է կատարված նաև ՀՍՍՀ-ում։



Բավական է նշել, որ 1970 թվականին պետական բյուջեից առողջապահական նպատակներին հատկացված միջոցները 51 տոկոսով ավելի էին, քան 1965 թվականին։ Հանրապետությունում շահագործման են հանձնվել բազմաթիվ նոր օբյեկտներ, այդ թվում՝ մայրաքաղաքի 850 մահճակալանոց բազմապրոֆիլային հիվանդանոցը։ Ներկայումս Հայաստանում գործում են 7767 բժիշկ և ավելի քան 18 հազար միջին բուժաշխատող։ 10 հազար բնակչին սպասարկում է 31 բժիշկ։

Սոցիալական ապահովությունը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման պլանի անբաժանելի մասն է։ Բոլոր քաղաքացիները, առանց սեռի ու ռասայի խտրության, իրավունք ունեն օգտվելու այդ բարիքից։ Միայն վերջին երեք տարիներում ավելացել են պատերազմի հաշմանդամների և կոլտնտեսության անդամների թոշակները։ Բարձրացել է նաև ժամանակավոր անաշխատունակների թոշակը։

Մեր հանրապետությունում անցած տարի սոցիալական ապահովության նպատակին հատկացվել է մոտ 103 միլիոն ռուբլի։

Անցած հնգամյակում, երկրում նկատելիորեն ընդարձակվեցին կենցաղային սպասարկման ձեռնարկությունների, մանկամսուրների և մանկապարտեզների, հասարակական սննդի ցանցը, որի շնորհիվ բազում մարդիկ, մասնավորապես կանայք, ազատվեցին տնային տնտեսության հոգսերից։ Քաղաքներում, բազմաթիվ ավաններում ու գյուղերում բացվել են քիմիական մաքրման ֆաբրիկաներ, լվացքատներ, կենցաղ-սպասարկման տաղավարներ, բաղնիքներ։ Միայն 1970 թվականին երկրում բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ցանցը մեծացել է 7,5 հազար միավորով։

Հայաստանի կոմկուսի XXV համագումարին տված՝ ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Քոչինյանը նշեց, որ հանրապետությունում «Կենցաղ-սպասարկման ծավալը 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, աճել է 2,3 անգամ։ Ընդլայնվել է սպասարկման ոլորտը։ Կառուցվել և շահագործման են հանձնվել կենցաղ-սպասարկման 244 օբյեկտ։ Ներկայումս կենցաղային սպասարկման ծառայությունների թիվը հասնում է մոտ 400-ի»։ Անցած հինգ տարում շահագործման է հանձնվել հասարակական սննդի մոտ 1000 օբյեկտ՝ 50 հազար նստատեղով, գազիֆիկացվել է 172,5 հազար բնակարան։

Նշանակալին այն է, որ հետզհետե բնակչության կենցաղային սպասարկումը դրվում է ինդուստրիալ հիմքերի վրա։ Ջրմուղը, գազը, լվացքի մեքենան, սառնարանը, տնային գործածության բազմաթիվ առարկաների էլեկտրիֆիկացումը շատ ու շատ անգամ թեթևացրել են աշխատավորի գործը, որի շնորհիվ մարդիկ իրենց արտաաշխատանքային ժամանակն օգտագործում են գիտելիքները հարստացնելու, կուլտուրական օջախներ հաճախելու համար։

1970 թվականին Սովետական Միությունում գյուղատնտեսության եկամուտը, նախորդ տարվա համեմատությամբ աճեց 8,7 տոկոսով։ 1969 թվականին սովխոզների աշխատողների ամսական միջին վաստակը 26 տոկոսով, իսկ կոլտնտեսականներինը՝ 33 տոկոսով ավելի բարձր էր, քան 1965 թվականին։

«Գյուղում տեղի է ունենում բնակարանային, կուլտուրական և կենցաղային շինարարության ակտիվ պրոցես,— ասում է Լ. Ի. Բրեժնևը։— 1966—1969 թթ. գյուղական վայրերում կառուցվել են բնակելի տներ՝ 148,5 միլիոն քառակուսի մետր ընդհանուր օգտակար տարածությամբ... Գազիֆիկացվել է

3 միլիոն 496 հազար բնակարան... գյուղական աշխատավորների կյանքում մուտք են գործում ռադիոն ու հեռուստատեսությունը» (տե՛ս Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի 1970 թ. հուլիսյան պլենումում)։

Մեր օրերում հայկական լեռնաշխարհի գյուղը շատ չի տարբերվում քաղաքից (եթե նկատի չունենանք շենքերի հարկերի զանազանությունը)։ Ամենուրեք աչքի են ընկնում կուլտուրայի պալատներն իրենց բոլոր հարմարություններով, դպրոցները, հիվանդանոցները, ակումբներն ու սպորտային հրապարակները. վերջին տասնամյակում մեր հանրապետության գյուղական վայրերում կառուցվել են ավելի քան 150 հազար անձնական բնակարաններ։

Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարի որոշման համապատասխան մտցվել է կոլտնտեսականների սոցիալական ապահովագրություն, որը նախատեսում է ժամանակավոր անաշխատունակության նպաստների վճարում գյուղի աշխատավորներին և նրանց սանատորա-կուրորտային սպասարկում։

Անցած հնգամյակում արագ աճեց ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրությունը, որը մեծ նշանակություն ունի բնակչության կենսամակարդակի բարձրացման գործում։ Ավելի արագ աճեց տեխնիկական օգտագործման ապրանքների արտադրությունը, որի պահանջը մեծ է։ Մեր հանրապետությունում միայն անցյալ տարի վաճառվել է 40 հազար հեռուստացույց, 45 հազար տնային սառնարան, 47 հազար լվացքի մեքենա։

Սովետական Միությունը 1965 թվականին թողարկել է 7,5 միլիարդ քառակուսի մետր բոլոր տեսակի գործվածքներ, իսկ 1970-ին՝ մոտ 8,9 միլիարդ։ Հնգամյակի տարիներին տրիկոտաժե սպիտակեղենի և տրիկոտաժե վերնազգեստի արտադրությունը 899 միլիոն հատից հասել է 1234 միլիոնի։ Նույն ժամանակաշրջանում կարի արտադրանքը 9 միլիարդ ռուբլուց բարձրացել է 15,9 միլիարդի։ ՍՍՀՄ-ը բրդե գործվածքեղենի արտադրությամբ ներկայումս գրավում է առաջին տեղն աշխարհում։ Անցյալ տարի մեր երկրում թողարկվել է 676 միլիոն զույգ կաշվե կոշիկ, որը գրեթե 50 տոկոսով գերազանցում է նախորդ հնգամյակի վերջին տարվա քանակը։

Անցած հնգամյակում նշանակալի չափով մեծացավ Հայաստանի լայն սպառման առարկաների թողարկումը։ 1970 թվականին արտադրվեց մոտ 60 միլիոն հատ տրիկոտաժե սպիտակեղեն և տրիկոտաժե վերնազգեստ, 10,3 միլիոն զույգ կաշվե կոշիկ, 100 հազար սառնարան։ Զգալի գործ է կատարված թեթև արդյունաբերության թողարկած արտադրանքի ասորտիմենտը ընդլայնելու, որակը բարձրացնելու նպատակով։

Սովետական Միությունում ութերորդ հնգամյակում տարեկան, միջին հաշվով, արտադրվել է միս (սպանդանոցային քաշով)՝ 11,6, կաթ՝ 80,5 միլիոն տոննա, ձու՝ 35,8 միլիարդ հատ։ Անցյալ տարի արտադրվել է կենդանական յուղ՝ 963 հազար, բուսական յուղ՝ 2,8 միլիոն, շաքարավազ 10,2 միլիոն տոննա։ Ներկայումս, մեր հայրենիքը կաթի, կենդանական յուղի և շաքարավազի արտադրությամբ երկրագնդում գրավում է առաջին տեղը։

1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, բնակչության յուրաքանչյուր շնչի հաշվով ավելի է սպառվել միս՝ 17 տոկոսով, կաթ և կաթնամթերք՝ 22, ձու՝ 23, ձուկ և ձկնամթերք՝ 33, շաքար՝ 14, բանջարեղեն և բոստանային կուլտուրաներ՝ 31, միրգ և հատապտուղներ՝ 18 տոկոսով։ Միաժամանակ զգալիորեն նվազել է հացի ու կարտոֆիլի սպառման տեսակարար



կշիռը։ Սովետական Հայաստանում 1966 թվականի համեմատությամբ, անցյալ տարի, 105 հազար տոննայով ավելի բանջարեղեն ու պտուղ է վաճառվել։

Անցած հնգամյակում նոր զարգացում ստացավ սովետական առևտուրը։ Ներկայումս երկրի ամենահեռավոր մասում, ամենափոքր բնակավայրում կա առևտրական օբյեկտ։ Կառուցվել են խոշոր հանրախանութներ ո՛չ միայն քաղաքներում, այլև գյուղերում ու բանվորական ավաններում, ուր վաճառվում են լայն ասորտիմենտի արդյունաբերական ապրանքներ։ Անցյալ հնգամյակում մանրածախ առևտուրը 50 միլիարդ ռուբլով գերազանցել է նախորդին։

Այս ամենը վկայում է, որ «...զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում,— ասում է ընկեր Ա. Ն. Կոսիգինը, ՍՄԿԿ XXIV համագումարում նոր հնգամյակի մասին տված զեկուցումում,— ժողովրդական տնտեսության արագ զարգացման հետ մեկտեղ արագ բարձրանում է ժողովրդի կենսամակարդակը։ Դա բխում է արտադրության սոցիալիստական եղանակի բնույթից, որը մեկընդմիշտ վերջ է տվել աշխատանքի արդյունքի օտարմանը նրա արտադրողներից, շահագործող դասակարգերի կողմից աշխատավորների արտադրական գործունեության արդյունքների յուրացմանը»։

Ինչպիսի՜ պերճախոս համեմատություն,— ասում է ԱՄՆ-ի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Հ. Հոլը ՍՄԿԿ XXIV համագումարում ունեցած ելույթում,— Միացյալ Նահանգներում կրթության սուր ճգնաժամ. իսկ Սովետական Միությունում կրթության անշեղ զարգացում, Միացյալ Նահանգներում և Մեծ Բրիտանիայում հակաբանվորական օրենսդրություններ, Սովետական Միությունում նոր աշխատանքային օրենք, որում արտացոլված է աշխատավորի նկատմամբ հոգատարություն։ Ի հակադրություն այն բանի, որ տեղի է ունենում կապիտալիստական աշխարհում, ՍՄԿԿ XXIV համագումարը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը, նոր հնգամյա պլանը լույս են սփռում, թե սոցիալիզմի ժամանակ որպիսի հոգատարություն կա մարդկանց նկատմամբ։

* * *

Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության ծրագրի նախագծի առթիվ արած դիտողություններում Վ. Ի. Լենինը գրում է. «Տեխնիկայի կատարելագործումը, որ նշանակում է աշխատանքի արտադրողականության մեծացում ու հասարակական հարստության աճ, բուրժուական հասարակության մեջ իրենով պայմանավորում է հասարակական անհավասարության աճումը, ունևորների և չունևորների միջև եղած տարածության ավելացումը և գոյության անապահովության ու զանազան տեսակի զրկանքների աճումը՝ ավելի ու ավելի լայն աշխատավորական մասսաների համար (Երկեր, հ. 24, էջ 591)։

Մեծ առաջնորդի իմաստալի այդ դրույթից անցել է ավելի քան կես դար։ Ժամանակակից կապիտալիստական հասարակարգը ելք չունի խորացող ճգնաժամերից դուրս ցատկելու։ Ի հեճուկս կապիտալի ջատագովների, բուրժուական երկրներում գործազրկությունը, բնակարանային սուր կարիքը, թշվառությունն աշխատավորի ուղեկիցն են մնում։

Կապիտալի գոյության ընթացքում պրոլետարիատի շահագործումը երբեք այնքան բարձր չի եղել, ինչպես այժմ։ Փաստերն հերքում են բուրժուական գաղափարախոսների կողմից տարածված, այսպես կոչված՝ «ժողովրդական կապիտալի», «ընդհանուր բարօրության պետության» առասպելները։ «...Իրականում բանվոր դասակարգի շահագործման աստիճանը մեծանում է, իսկ ժամա-

նակակից արտադրամիջոցների կիրառումից ստացվող հիմնական շահույթները բաժին են ընկնում արդյունաբերա-ֆինանսական օլիգարխիային» (տե՛ս ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ)։

Պաշտոնական տվյալներով, 1971 թվականի սկզբներին ԱՄՆ-ում գործազուրկների թիվը հասնում էր մոտ 5 միլիոնի (տե՛ս «США» ամսագիրը, 1971 թ., № 3, էջ 12)։ Այդ, 1969 թվականի համեմատությամբ, 2,1 միլիոնով ավելի է։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Նիքսոնի խոստովանությամբ, վերջին տասը տարիներին բժշկական սպասարկման ծախսերը երկրում բարձրացել են երկու անգամ ավելի, քան կյանքի ընդհանուր ծախսերը, իսկ հիվանդանոցային բուժման վճարը հինգ անգամ գերազանցում է մյուս գներից (տե՛ս «За рубежом», 1971, № 11)։ Կիսապաշտոնական հանձնաժողովը հաշվել է, որ Նյու-Յորքի 250 հազար աշխատող (ընտանիքներով մոտ մեկ միլիոն) ապրում են աղքատիկ պայմաններում (տե՛ս «США», 1971, № 1, էջ 372)։

Կապիտալիստական աշխարհի այն երկրներում, ուր գոյություն ունի սոցիալական ապահովություն, աշխատավորները պարտավոր են ներդնել իրենց միջոցները՝ ծերության կամ հաշմանդամության դեպքում կենսաթոշակ ստանալու համար։ Այդ նպատակին ԱՄՆ-ում հատկացնում են աշխատավարձի 4,2, Ֆրանսիայում՝ 6, ԳՖՀ-ում՝ 13,5 տոկոսը։ Բուրժուական երկրներում թոշակ է նշանակվում— Միացյալ Նահանգներում երկու սեռին 65 տարեկանից, Անգլիայում՝ տղամարդկանց՝ 65, կանանց՝ 60, Դանիայում, համապատասխանաբար՝ 67 և 62, իսկ Շվեյցարիայում՝ 62 տարեկանից (տե՛ս «Проблемы мира и социализма», 1971, № 2)։

Ֆրանսիական բուրժուական «Ֆիգարո» թերթը հաղորդում է, որ Անգլիայում գործազրկությունն աղետալի չափերի է հասնում։ Երկրում 721 հազար (իսկ եթե Հյուսիսային Իռլանդիան էլ հաշվենք 750 հազար) մարդ աշխատանք չունի։ Բայց այդ թիվն արդեն հնացած է։ «Ռոլլս Ռոյս» ընկերության սնանկացման հետևանքով գործազուրկների թիվն ավելի է մեծացել (տե՛ս «За рубежом», 1971, № 11)։

Կապիտալի աշխարհում գործազրկությանը զուգակցվում է կյանքի թանկացումը։ Միայն անցյալ տարի ԱՄՆ-ում սպառողական ապրանքների և կենցաղ-սպասարկման ծախսերը բարձրացել են 5,6, տրանսպորտինը՝ 15,2, բնակարանային վարձը՝ 10,3 տոկոսով։ Շվեդիայում նորմալ երևույթ է, երբ մարդկանց աշխատավարձի 40 տոկոսը հատկացվում է բնակարանավարձին։ Այստեղ վաստակի զգալի մասը վճարվում է որպես ուղղակի հարկ։

Կապիտալիստական հասարակարգում ծանր է գյուղացիության, մանավանդ, չքավոր ու միջակ տնտեսությունների վիճակը։ Դաժան մրցակցության հետևանքով նրանց գլխին միշտ կախված է սնանկացման սպառնալիքը։ Վերջին քառորդ դարում ԱՄՆ-ում քայքայվել է ֆերմերների կեսից ավելին։ ԳՖՀ-ում 1949—1967 թթ. լիկվիդացվել են 500 հազար գյուղացիական տնտեսություն։ Շվեդիայում տարեկան կործանվում է մոտ 10 հազար գյուղացի։ Նույնն է վիճակն Իտալիայում, Ֆրանսիայում և այլուր։ Բելգիայում վերջին տարիներին գյուղացիական տնտեսությունների եկամուտը կրճատվել է 15 տոկոսով։ Արևմտյան Գերմանիայում լույս տեսնող «Ֆրանկֆուրտեր Ալգեմայն» թերթի վկայությամբ, Բրազիլիայի հյուսիս-արևելքում աշխատավոր գյուղացիները լավագույն դեպքում օրական վաստակում են 30—40 ցենտ (10 ցենտը հավասար է 9 կոպեկի) և նույնիսկ ավելի պակաս։ Այստեղ ընչազուրկ գյուղացու սնունդը՝ մի բուռ բրնձից եփած ապուր է կամ խաշիլ (տե՛ս «За рубежом», 1971, № 1)։



Այն ժամանակ, երբ պրոլետարներն ու կիսապրոլետարները օգտվում են իրենց արյունով ու քրտինքով ստեղծած հասարակական հարստության փշրանքներից, այդ հարստության առյուծի բաժինը հոսում է մոնոպոլիաների գանձարանը։ Այսպես. ԱՄՆ-ի մոնոպոլիաները 1965 թվականին զուտ շահույթ են ստացել (բոլոր տեսակի հարկերը վճարելուց հետո) 45,2 միլիարդ դոլար։ Անցյալ տարի միայն առաջին կեսին այդ գումարը կազմել է 44,3 միլիարդ (տե՛ս «США» ամսագիրը, 1971, № 3, էջ 11)։ «Շպիգել» շաբաթաթերթը (Համբուրգ) գրում է. «Ավգուստ Գեորգի Հենրիխ ֆոն Ֆինգի հարստությունը հաշվվում է ինը զրոյով։ Եթե ճշգրիտ ասենք, բավարական այդ ազնվականի հարստությունը հասնում է 3—4 միլիարդ մարկի» (տե՛ս «За рубежом», 1971, № 7)։ Ինչ խոսք, որ այս խոշոր գումարը կուտակվել է աշխատավորներին կողոպտելու միջոցով։ Ամեն մի մարկի վրա կան ընչազուրկների թափած քրտինքի և արյան հետքերը։

* * *

Մեր բոլոր պլանների հիմնական նպատակը, սովետական մարդու կյանքի հետագա բարելավումն է, սոցիալիստական հասարակարգի բազմակողմանի զարգացումը։ Կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականության հիմքում եղել և մնում է ծանր ինդուստրիայի զարգացման արագ տեմպերի ապահովումը։ «Նրա աշխատանքից է կախված ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտների տեխնիկական զինվածության մակարդակը,— ասում է ՍՄԿԿ XXIV համագումարին տված զեկուցման մեջ ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— աշխատանքի ավելի բարձր արտադրողականության համար նյութական ու տեխնիկական միջոցների ապահովում... առանց ծանր ինդուստրիայի զարգացման չի կարելի պատշաճ մակարդակի վրա պահել պաշտպանունակությունը, որը երաշխավորում է մեր հայրենիքի անվտանգությունը, մեր ժողովրդի խաղաղ աշխատանքը»։

Այժմ մեր ծանր ինդուստրիան դրված է այնպիսի հաստատուն հիմքերի վրա, որ հնարավոր է առավել բարձրացնել բնակչության կենսամակարդակը։

Սովետական Միության ազգային եկամուտը նոր հնգամյակում կավելանա 37—40 տոկոսով։ Իսկ նրա բաշխումը սոցիալիզմի սկզբունքով մեծ չափով կնպաստի աշխատավորների բարեկեցության բարձրացմանը։ Այսպես, ըստ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի, բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը կբարձրանա 20—22, իսկ կոլտնտեսությունների հանրային տնտեսության մեջ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը կավելանա 30—35 տոկոսով։

Այս տարի բանվորների ու ծառայողների ամսական նվազագույն աշխատավարձը կհասնի 70 ռուբլու, կավելացվեն երկաթուղային տրանսպորտի միջակ վարձատրվող բանվորների ու ծառայողների դրույքներն ու ռոճիկները, գյուղատնտեսության մեխանիզատորների տարիֆային դրույքները, կավելանան բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ծերության կենսաթոշակների նվազագույն չափերը։ Աշխատավարձի ավելացման միջոցառումների հետ միաժամանակ կվերացվեն ամսական մինչև 70 ռուբլի վաստակ ունեցող

բանվորներից ու ծառայողներից գանձվող հարկերը, կկրճատվեն ամսական մինչև 90 ռուբլի աշխատավարձից գանձվող հարկերը։ Հնգամյա պլանով նախատեսված է նպաստներ տալ այն ընտանիքների երեխաներին, որոնց ընդհանուր եկամուտը (ներառյալ եկամուտների բոլոր տեսակները) ընտանիքի մեկ անդամի հաշվով ամսական չի անցնում 50 ռուբլուց։ Անկախ աշխատանքային ստաժից, կանանց հղիության և ծննդաբերության արձակուրդի ժամանակաշրջանում կվճարվի աշխատավարձի 100 տոկոսը։

Երկրում լայն թափով կշարունակվի բնակարանային շինարարությունը։ Հնգամյակի ընթացքում ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կկառուցվեն՝ 565—575 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ։ Մեծ աջակցություն ցույց կտրվի կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությանը։

Միջոցառումներ կիրականացվեն բնակավայրերի և շրջապատող միջավայրի սանիտարական վիճակը բարելավելու, կեղտաջրերի մաքրման կառուցվածքներ ստեղծելու, գազամաքրիչ և փոշեծծիչ հարմարանքներ կառուցելու նպատակով։ Քաղաքներում և քաղաքատիպ ավաններում բնակելի ֆոնդի գազիֆիկացումը կհասցվի 65—75, իսկ գյուղերում՝ 40—50 տոկոսի։

Մեր երկրում բնակչության դրամական եկամուտների զգալի աճը կպահանջի ավելացնել լայն սպառման ապրանքների արտադրությունը և ապրանքաշրջանառության ծավալը։ Նոր հնգամյակում 40—60 տոկոսով կավելանան այնպիսի սննդամթերքների շուկայական ֆոնդերը, ինչպիսիք են՝ միսը, ձուկը, բուսական յուղը, ձուն, բանջարեղենը։ 1975 թ. բոլոր տեսակի գործվածքեղենի արտադրանքը կհասնի 11 միլիոն քառ. մետրի, կթողարկվի 830 միլիոն զույգ կաշվե կոշիկ։ Նկատելիորեն կընդարձակվի կահույքի և բնակարանների կահավորման առարկաների թողարկումը։

Մեծ միջոցներ կհատկացվեն նաև բնակչության առողջապահության, նրանց բուժսպասարկումը բարելավելու նպատակին։ 1975 թվականին երկրում հիվանդանոցային մահճակալների թիվը կհասցվի 3 միլիոնի։ Կընդարձակվի մասնագիտացված և բազմապրոֆիլ խոշոր հիվանդանոցների ու պոլիկլինիկաների ցանցը։

Մեր հանրապետությունում ևս նոր հնգամյակում մեծ թափով կզարգանա լայն սպառման ապրանքների թողարկումը։ Թեթև արդյունաբերության արտադրանքի ծավալը 1975 թվականին կհասնի 760 միլիոն ռուբլու։ Հնգամյակում սննդի արդյունաբերությունը, ընդհանուր առմամբ, կաճի 35 տոկոսով։

Սովետական մարդիկ միահամուռ հավանություն տալով կուսակցության XXIV համագումարի որոշումներին, բուռն խանդավառությամբ, ստեղծագործական եռանդով ձեռնամուխ են եղել նոր հնգամյակի իրագործմանը։ 1971 թվականի առաջին եռամսյա պլանի կատարողականը ցույց է տալիս, որ ընթացքը լավ է սկսվել։ Ուրեմն, կան բոլոր նախադրյալները, որ սովետական ժողովուրդը պատվով կկատարի իններորդ հնգամյա պլանը։





# ՍԻՍՏԵՄԱՅԻՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐՈՒՄ

Վ. Տ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Արտադրաուժերի և հասարակական հարաբերությունների զարգացումը, գիտա-տեխնիկական առաջընթացը մի շարք երկրներում սոցիալ-տնտեսական զգալի փոփոխություններ են առաջացրել։ Այդ պայմաններում երկրի զարգացման հեռանկարները որոշելիս պահանջվում է հաշվի առնել փոխադարձ կապակցված բազմաթիվ հանգամանքներ, չնայած առաջադրված խնդիրների լուծման համար ժամանակը խիստ սուղ է։ Ընդսմին, մեծանում է առաջադրվող պրոբլեմների մասշտաբը, իսկ դրանցից մի քանիսը, ինչպես արբանյակների միջոցով կապի հաստատման պրոբլեմը, ստանում են միջազգային նշանակություն։ Այդ պայմաններում, որևէ պրոբլեմ լուծելիս, անկախ վերջինիս բնագավառից, բովանդակությունից ու բնույթից, հիմնականը հարցի լուծման առավել հարմար միջոց ընտրելն է, որը պայմանավորված է դրա արդյունավետության գնահատման կարողությամբ։

Նման հարցերը մասամբ լուծվել են կապիտալ ներդրումների բաշխման տարբերակների ընտրության բնագավառում։ Սակայն այդ մշակումները բոլոր դեպքերում չէ, որ կարող էին իրացվել. դրանք կոչված են լուծելու խիստ նեղ խնդիրներ։ Տվյալ դեպքում պահանջվում են այնպիսի մեթոդներ, որոնք հնարավորություն կընձեռեն վերլուծելու բարդ պրոբլեմները որպես ամբողջություն և, միաժամանակ, ուսումնասիրելու բազմաթիվ միջոցներ, որոնցից յուրաքանչյուրը կարող է նկարագրվել մեծ թվով փոփոխականներով։

Վերջին տասնամյակում, այդպիսի մեթոդների ստեղծման փորձերի շնորհիվ, ստեղծվեցին արտասովոր և հետաքրքրաշարժ անուններով մի շարք նոր դիսցիպլիններ՝ սիստեմային (համակարգային) վերլուծություն, գործողությունների հետազոտություն, լուծումների տեսություն, սիստեմատեխնիկա, սիստեմների ընդհանուր տեսություն և այլն։ Վերջիններիս համատեղ գոյությունը չէր կարող դրանց միջև չառաջացնել սահմանների, փոխհարաբերությունների և գիտությունների ողջ կոմպլեքսում զբաղեցրած տեղի հարցը։

Իմացության և գործունեության վերոհիշյալ բնագավառներից յուրաքանչյուրի հարաբերական տեղը որոշելու միջոցներից է դրանց ֆունկցիոնալ նշա-

նակության տարբերության կամ նմանության բացահայտումը։ Թվարկված բոլոր դիսցիպլինների ծագումը կապված է գիտա-տեխնիկական տարբեր պրոբլեմների առաջացման հետ։ Դրանց լուծման մեթոդոլոգիայի, հատկապես մասնավոր լուծումների համար կատարյալ մեթոդների բացակայության պատճառով պրոբլեմների լուծման գործում ներգրավված մասնագետները ելակետ էին ընդունում ավանդական գիտությունները՝ մաթեմատիկան, ֆիզիկան, տնտեսագիտությունը, սոցիոլոգիան։ Հայտնի է, որ առանձին դեպքերում վերջիններիս կիրառումը արդյունավետ է եղել։ Սակայն պրոբլեմի լուծման մասնակի, թեկուզ և զորեղ, մեթոդի ակնհայտ անբավարար լինելը ստիպում էր այն լրացնել ընդհանրապես բուն մեթոդից չբխող օժանդակ կանոններով։ Դա ցայտուն դրսևորվեց գործողությունների հետազոտությունների տեսության շրջանակներում ընդհանրացումներ կատարելու փորձերի ժամանակ։

Քննարկվող նորագույն դիսցիպլինների թվում սիստեմային վերլուծությունը, որպես լուծման մեթոդոլոգիա, հավակնություն ունի միավորելու տարբեր պրոբլեմների լուծման անհրաժեշտ մեթոդներն ու գիտելիքները։ Սիստեմային վերլուծության և հարակից այլ դիսցիպլինների հարաբերակցությունը որոշելիս անհրաժեշտ է հաշվի առնել դրանցից յուրաքանչյուրի փաստական ավանդը պրոբլեմների լուծման մեթոդոլոգիայի և մասնավոր լուծումների մեթոդների մեջ։

Սիստեմային վերլուծությունը, որպես պրոբլեմների լուծման առանձին դիսցիպլին, առաջ է եկել ԱՄՆ-ում և սկզբում կիրառվել ռազմական բնագավառում։ ԱՄՆ-ից անմիջապես հետո, մասամբ այնտեղ կատարված աշխատանքների ազդեցության տակ, այն տարածվեց նաև Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում և Ճապոնիայում։

Սիստեմային վերլուծությունը տակավին նոր երևույթ է գիտության մեջ և պրակտիկայում։ Դրա ուսումնասիրությունը և կիրառումը ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունեն մասնավորապես արդյունաբերության ճյուղերի, տնտեսական շրջանների հեռանկարային պլանավորման մեթոդոլոգիայի հարցերի մշակման, տեխնիկայի զարգացման ուղղությունների ընտրության, տնտեսության կազմակերպման ու կառավարման կատարելագործման և մի շարք այլ խնդիրների լուծման գործում։ Դրա հետ մեկտեղ, սիստեմային վերլուծության ուսումնասիրությունը մեծ ուշադրություն է պահանջում սոցիալապես պայմանավորված այս կամ այն ձևում մեթոդոլոգիայի օբյեկտիվ տարրերն ընտրելու համար։

Քանի որ սիստեմային վերլուծությունը համեմատաբար նոր դիսցիպլին է, ապա դրա վերաբերյալ գրականություն նոր է ստեղծվում[1]։ Մասնավորապես հաճախակի քննվում են այդ դիսցիպլինի մշակման առանձին մեթոդական հարցերը։ Սույն հոդվածը նույնպես չի հավակնում ընդհանրացնելու համակարգային վերլուծությունը, այլ նվիրված է վերջինիս էությանը և հասա-

[1] Ռ. Կանի ու Դ. Մաննի առաջին գիրքը, նվիրված սիստեմային վերլուծությանը, ԱՄՆ-ում լույս է տեսել 1956 թվականին։ Սիստեմների ընդհանուր տեսություն ժողովածուում («Мир» հրատ., 1966), ռուսերեն թարգմանվել է Մ. Մեսարովիչի աշխատությունը։ Գ. Խ. Գուդի, Ռ. Է. Մակոլի Սիստեմատեխնիկան՝ «Советское радио»-ում (1962), Չ. Խիտչի և Ռ. Մակկինի Ռազմական էկոնոմիկան միջուկային դարում աշխատությունը՝ «Воениздат»-ում (1964), Ս. Լ. Օպտների Սիստեմային վերլուծությունը գործնական և արդյունաբերական պրոբլեմների լուծման համար «Советское радио»-ում (1969) և այլ աշխատություններ։



րական զարգացման տարբեր պրոբլեմների լուծման գործում նրա կիրառման հնարավորությանը։

Սիստեմային վերլուծության մեթոդոլոգիայի կենտրոնում է միջոցների քանակական համեմատության գործողությունը, որի նպատակն է իրացման լավագույն միջոցների ընտրությունը։ Եթե կատարվի հավասար որակի միջոցների պահանջը, կարող են ստացվել քանակական գնահատականներ։ Սակայն, որպեսզի քանակական գնահատականները միջոցների համեմատության հնարավորություն ընձեռեն, պետք է արտացոլեն միջոցների՝ համեմատության կազմի հատկությունները (ելքի արդյունքը, արժեքը և այլն)։ Այդ բանին կարելի է հասնել, եթե բազմակողմանի հաշվի առնվեն միջոցի բոլոր տարրերը։ Հենց այդ սահմանմամբ առանձնացվող ամբողջականությունը սիստեմային վերլուծության մեջ կոչվում է սիստեմ (համակարգ)։ Սակայն, ինչպես գտնել այդ ամբողջականությունը, ինչպես որոշել, թե տվյալ տարրը մտնո՞ւմ է, արդյոք, պահանջվող միջոցի մեջ։ Միակ չափանիշը կարող է լինել տարրի մասնակցությունը այն պրոցեսում, որը կարևոր նշանակություն է տալիս միջոցի ամփոփիչ արդյունքին։ Այս առումով պրոցես հասկացությունը սիստեմային վերլուծության կենտրոնական հասկացությունն է։

Համակարգային վերլուծության ընդհանուր տեսության մեջ չափազանց կարևոր է սիստեմ հասկացությունը։ Սիստեմային օբյեկտներին հատուկ է մուտքի, ելքի, հետադարձ կապի և սահմանափակումների առկայությունը։ Հետևապես, իրական աշխարհում համակարգ գտնել նշանակում է՝ ցույց տալ որևէ կոնկրետ ելք կանխորոշող բոլոր պրոցեսները։ Յուրաքանչյուր համակարգ բաղկացած է ենթասիստեմներից և, իր հերթին, մի այլ սիստեմի ենթասիստեմն է։ Համակարգի սահմանները որոշվում են շրջապատող միջավայրով՝ բոլոր մուտքերի ամբողջությամբ։

Պրոբլեմի դրսևորումը գոյություն ունեցող և ցանկալի սիստեմների տարբերության առաջացումն է։ Խնդրի լուծումն առկա և ցանկալի պրոբլեմի միջև է թաքնված։ Լուծման համար անհրաժեշտ է հիշյալ տարածությունը բնութագրող նոր համակարգի ստեղծում, այդ պրոցեսը կենտրոնանում է պրոբլեմի լուծման պայմանի, նպատակի ու հնարավորությունների նույնականացման շատ անգամ կրկնվող գործողությունների շուրջ։ Դրա արդյունքն է պայմանների, առանձնահատկությունների ու կապերի նկարագրությունը սիստեմային, այսինքն՝ կառուցվածքների և նրանց մեջ մտնող տարրերի տերմիններում։

Այսպես, ուրեմն, համակարգային վերլուծությունը, որպես պրոբլեմների լուծման մեթոդոլոգիա, մատնանշում է փոխադարձորեն առնչվող գործողությունների սկզբունքային անհրաժեշտ հետևողականությունը։ Լուծման պրոցեսը միջոցների ստեղծումն է, գնահատումը և ընտրությունը տարբեր չափանիշներով։ Ընդ որում, հաշվի են առնվում այդ մեծությունների աճի սահմանային նշանակությունների միջև եղած հարաբերությունները։ Պրոբլեմի լուծմամբ հաստատվում են նոր կապեր ու հարաբերություններ, որոնց մի մասը պայմանավորում է ցանկալի ելքը, իսկ մյուսը՝ որոշում չնախատեսված հնարավորություններն ու սահմանափակումները, որոնք կարող են հետագա պրոբլեմների աղբյուր դառնալ։

Միանգամայն բնական է, որ նման մեթոդոլոգիայի պայմաններում սիստեմային վերլուծության իրականացումը հիմնված է աբստրակցիայի սկզբունքների վրա։ Ընդ որում, աբստրակցիան, տվյալ դեպքում, միջոց է և ինք-

նանպատակ չէ։ Այն համապարփակ մի լեզու է և իր առավել զարգացած ձևերով գրեթե անհասկանալի է անիրազեկ մարդկանց։ Որոշ պայմաններում աբստրակցիան վիթխարի առավելություն ունի իր հստակությամբ։ Սիստեմային վերլուծությունից օգտվող հետազոտողը, իրական աշխարհից անցնելով նրա սիմվոլիկ զանազան պատկերումներին և ընտրելով որոշակի ամբողջականություններ, պրոբլեմի սիմվոլիկ մեթոդներով ստացած պատկերացումից մեթոդիկ կերպով կանցնի իրական աշխարհին և, կանի հակառակը, կրկնվող օղակաձև պրոցեսի միջոցով։ Այդ պրոցեսը մի միջոց է, որի օգնությամբ պրոբլեմի աբստրակցիան դառնում է իր նմանակը իրական աշխարհում։

Ընդհանուր գծերով սրանք են սիստեմային վերլուծության՝ որպես պրոբլեմի լուծման մեթոդոլոգիայի որոշ հիմնական պատկերացումները։

Գործնականում համակարգային վերլուծության կիրառումն ընդհանուր գծերով կարող է տեղի ունենալ երկու իրադրություններում — երբ ելակետ է նոր պրոբլեմի երևան գալը և, պրոբլեմների տվյալ շրջանի անմիջական առնչությունից դուրս հայտնաբերված, նոր հնարավորությունը։

Սիստեմային վերլուծության օգտագործման հնարավորությունները չափազանց մեծ են հասարակական զարգացման պրոբլեմների ոլորտում։ Համակարգային վերլուծության մեթոդոլոգիան թույլ է տալիս հասարակության զարգացման ծագող պրոբլեմներից յուրաքանչյուրը դիտելու որպես ինքնուրույն ամբողջականություն (սիստեմ) և դրա հետ մեկտեղ տեսադաշտում պահելու հասարակական զարգացման ուսումնասիրվող ժամանակաշրջանի մակարդակի ու վիճակի ամբողջականության նրա հարակից ֆունկցիան (ենթասիստեմները)։ Նման հարցադրումը թույլ է տալիս, սահմանափակ պայմանների և հեռանկարային հնարավորությունների կոմպլեքսում, լուծելու յուրաքանչյուր պրոբլեմ, որն իր հերթին, անդրադառնում է վերջինիս արդյունքների վրա։

Հանրային արտադրությունը, օրինակ, տեխնիկական ու բիոլոգիական սիստեմների համեմատությամբ ունի մի շարք առանձնահատկություններ, որոնց սոցիալ-տնտեսական առավել բնորոշ հատկանիշն արտադրամիջոցների սեփականության ձևն է։ Սակայն, վերլուծելով սոցիալիստական հանրային արտադրության պրոբլեմները, կարելի է նյութական արժեքների արտադրության պրոցեսը քննել որպես այդպիսին, աբստրահվելով հասարակական ձևից։ Ակնհայտ է, որ հանրային արտադրության համակարգն ամբողջական է և դրա բոլոր ենթասիստեմները ծառայում են ողջ սիստեմի առջև դրված ընդհանուր նպատակին։ Այդպիսի մոտեցման դեպքում, հանրային արտադրությունն ուսումնասիրվում է որպես հասարակության կողմից բանական միջոցները սպառող նյութական բարիքների վերափոխող սիստեմ, որը և բնորոշվում է մի շարք առանձնահատկություններով։ Դրա տարբերիչ առաջին առանձնահատկությունը բարդությունն է, որն արտահայտվում է ենթասիստեմներից որևէ մեկում առաջացող փոփոխություններում և անմիջականորեն կամ անուղղակի փոխանցվում է մյուսներին։ Այսպես, արհեստական մանրաթելի ու պլաստմասսաների արտադրության տեխնոլոգիայի զարգացումը հանգեցրեց ո՛չ միայն քիմիական արդյունաբերության կառուցվածքի փոփոխման, այլև էական ազդեցություն ունեցավ ողջ հանրային արտադրության կառուցվածքի վրա։ Սիստեմի բարդության մի այլ հատկանիշ բազմաթիվ հետադարձ կապերի առկայությունն է նրա ենթասիստեմների միջև և ենթասիստեմների տարրերն ընդգրկող հետադարձ կապերի առկայությունը՝ ենթասիս-



տեմներում։ Այս հատկանիշը բնորոշ է նաև հանրային արտադրության համակարգին։ Ողջ սիստեմը և նրա առանձին մասերն ընդգրկող հետադարձ կապերը դրսևորում են կապիտալ ներդրումների միջոցով իրականացվող առնչությունները, որոնք վերջնական արգասիքի մի մասն են և, միաժամանակ, ապահովում են դրա աճը։ Այդպիսով, վերջնական արգասիքը, միջանկյալ այդ գործոնի միջոցով, ներգործում է ինքն իր վրա։ Ճյուղերի միջև ու ճյուղերի ներսում ճյուղավորված հետադարձ կապերը ձևավորվում են նաև արտադրության այլ գործոնների միջոցով։

Արդի հանրային արտադրությանը բնորոշ է մի երկրորդ հատկություն՝ սիստեմում իրականացվող պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը։ Մեքենայացման և ավտոմատացման աստիճանը կարող է տարբեր լինել հանրային արտադրության զարգացման այս կամ այն մակարդակում, սակայն, երբեք չի հասնի այնպիսի աստիճանի, որի պայմաններում ընդհանրապես չպահանջվի մարդու մասնակցությունը։ Մարդը միշտ գլխավոր շարժիչ ուժը կլինի գիտա-տեխնիկական առաջընթացի ոլորտներում։ Ուստի, նա հանրային արտադրության աշխատանքի ու զարգացման գլխավոր գործոնն է։ Վերջինս պահանջում է ընտրել մարդու գործունեության բարոյական ու նյութական խթանման և ստեղծագործական նախաձեռնության համակողմանի զարգացման արդյունավետ սկզբունքները։

Հանրային արտադրությունն անընդհատ զարգացող սիստեմ է. դա է հենց նրա երրորդ առանձնահատկությունը։ Անշեղորեն աճում են հանրային արտադրության մասշտաբները, անդադար փոխվում է նրա կառուցվածքը։ Թե՛ մեկը, թե՛ մյուսը պայմանավորված է գիտա-տեխնիկական առաջընթացով, հասարակական փոխհարաբերությունների և պահանջմունքների փոփոխմամբ։ Այս ամենը հանգեցնում է նոր ձեռնարկությունների ու ճյուղերի առաջացմանը, հնացածների վերացմանը։ Վերջին տասը տարում արդյունաբերական ձեռնարկությունների ընդհանուր թիվը ՍՍՀՄ-ում աճել է մի քանի անգամ։ Վերջին տարիների ընթացքում 30—40 տոկոսով փոփոխվել է արտադրատեսակների նոմենկլատուրան, էապես փոխվում է նաև արտադրության տեխնոլոգիան, ինչպես և ծախքերի նորմաներն ու կառուցվածքը։ Այլ խոսքով, այդ սիստեմն ունի ցայտուն արտահայտված դինամիկ բնույթ։

Հանրային արտադրության սիստեմի չորրորդ առանձնահատկությունը նրա գործոնների, տարրերի ու կոմպոնենտների համապարփակ փոխադարձ փոխարինելիությունն է։ Լայն սահմաններում փոխադարձ փոխարինելի են հիմնական այնպիսի գործոններ, ինչպիսիք են՝ կենդանի և առարկայացած աշխատանքը, որոշակի սահմաններում՝ աշխատանքի ծախքերը և նյութական ռեսուրսները։ Դա նշանակում է, որ միևնույն արգասիքը կարող է արտադրվել արտադրության նշված գործոնների ծախքերի տարբեր հարաբերակցություններում։ Գոյություն ունի նաև հակադարձ երևույթ՝ արգասիք արտադրական փոխադարձ փոխարինելիություն՝ ծախքերի ու ռեսուրսների այս կամ այն տեսակի նկատմամբ։ Եթե որևէ ռեսուրս ծախսվում է այս կամ այն արտադրատեսակների վրա, ապա դրանք փոխադարձ փոխարինելի են տվյալ ռեսուրսի նկատմամբ։ Զգալի չափով փոխադարձ փոխարինելի են արգասիքների սպառողական հատկությունները (սպառման առարկաներն անձնական պահանջմունքների բավարարման աստիճանի նկատմամբ, մեքենաները՝ իրենց արտադրողականության նկատմամբ և այլն)։

Փոխադարձ փոխարինելիությունը պայմանավորում է հանրային արտա-

դրության գործոնների ու տարրերի լայն մասնակցությունը և կարևորագույն դեր է խաղում դրա զարգացման գործում։ Միաժամանակ ստեղծում է արտադրության, աշխատանքի ու զարգացման արդյունավետ տարբերակների ընտրության, նյութական և աշխատանքային ռեսուրսների խնայողության մեծ հնարավորություններ։

Գործունեության և զարգացման նատուրալ ու արժեքային ասպեկտների օրգանական զուգակցումը հանրային արտադրության հինգերորդ առանձնահատկությունն է, որով այն տարբերվում է նյութական աշխարհի մյուս բոլոր սիստեմներից։ Դրա նյութական-իրական կոմպոնենտների շարժումը, որոնք որոշվում են վերջիններիս արտադրության, բաշխման ու սպառման տեխնոլոգիայով, անխզելիորեն կապված է նրանց արժեքի շարժման հետ։ Առանց ծախքերի ու արդյունքների հաշվառման օբյեկտիվ ու գործուն մեխանիզմի կորչում է արտադրության ու սպառման տնտեսական էությունը, մնում են միայն նրանց տեխնիկան ու տեխնոլոգիան։

Հանրային արտադրությունը մշտապես գտնվում է բնական գործոնների և հասարակության ներգործության տակ։ Արտաքին այդ ներգործությունները հիմնականում հավանական բնույթի են։ Բնական ռեսուրսների չափերն ու բաշխումը, կլիմայական ու բնության այլ երևույթները կարող են կանխորոշվել միայն այս կամ այն աստիճանի ճշտությամբ։ Հասարակական պահանջմունքի ձևավորման գործում որոշիչ դեր են խաղում հասարակության անդամների անձնական պահանջմունքները, որոնց կազմը խիստ բարդ է և փոփոխական։ Ուստի, նյութական ու հոգևոր բարիքների նկատմամբ պահանջմունքի գնահատականը հնարավոր է միայն վիճակագրության օգնությամբ։ Հավանական բնույթ ունեն նաև գիտական հետազոտությունների արդյունքների կանխորոշումը, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման սպասվելիք արդյունավետությունը և, վերջապես, վիճակագրական-դեմոգրաֆիական կանխորոշումները, որոնց հիման վրա որոշվում են բնակչության սպասվող թիվն ու կառուցվածքը և աշխատանքային ռեսուրսների չափերը։

Այսպիսով, հանրային արտադրության սիստեմի ապագա տենդենցը և դրա օբյեկտիվ նկարագրությունը կարող են տրվել հավանական մոդելների օգնությամբ, որոնք, «միջին հաշվով», առավել ստույգ են բնորոշում դրանց ճշտության աստիճանը։ Ուստի, հանրային արտադրության զարգացման պրոբլեմների վերլուծության սիստեմային մոտեցումը հնարավորություն է ընձեռում կոնկրետացնելու խնդիրը, իսկ գոյություն ունեցող մաթեմատիկական ապարատը կատարում է մի շարք միջոցների հաշվարկումն ու գնահատականը։ Նման մոտեցումը, սիստեմային սկզբունքների հիման վրա, հնարավոր է նաև հասարակական զարգացման այլ պրոբլեմների նկատմամբ։

Չնայած մեծ է սիստեմային վերլուծության կիրառման հնարավորությունը, սակայն, այն անբավարար է մշակված։ Ներդրման գործում կա որոշակի միակողմանիություն. պրոցեսների ընկալման ղեկավարող գաղափարը անտեսում է դրանց գոյության մեկուսացած ամբողջականությունները։ Սիստեմային վերլուծության մեթոդոլոգիայի կարևորագույն թերությունները զարգացման ընդունված հասկացության հետևանք են։ Այսպես, օբյեկտիվ զարգացում հասկացությունը փոխարինված է «ցանկալի նպատակ» հասկացությամբ։ Պարզ է, որ «ցանկալի նպատակը» հեշտությամբ կարող է հանգեցնել կեղծ պրոբլեմների։ Պրոբլեմները չեն մեկնաբանվում որպես զարգացման օբյեկտիվ հակասություններ, որը կարող է լրջորեն սահմանափակել սիստեմային վերլուծության կիրառման հնարավորությունները։



Երբ գտնվի իրի, սիստեմի, մեթոդի ու ֆունկցիայի հարաբերությունների ավելի ճիշտ նկարագրություն, և տարրերի կառուցվածքի ու հատկությունների հարաբերությունն ավելի ճշգրիտ արտացոլվի մեթոդոլոգիայում, անհրաժեշտ կլինի լուծել մասնավոր բազում հարցեր։ Այսպես, որքան մեծ են պրոբլեմների մասշտաբն ու բարդությունը, այնքան ավելի կդրսևորվեն պրոբլեմների լուծման սիստեմային մեթոդոլոգիայի գոյություն ունեցող սահմանափակումները։ Այդ կապակցությամբ հարկ կլինի տեսություն մշակել մեկուսացված ամբողջականությունների (սիստեմների) սիստեմային միջավայրի և այլնի վերաբերյալ։ Բացի այդ, սիստեմային մեթոդոլոգիայի կառուցվածքը բավականաչափ բարդ է և բարդացման տենդենց ունի, որը հատուկ պահանջներ է ներկայացնում ձևականացման մեթոդների մշակմանն ու կատարելագործմանը։

Սիստեմային վերլուծության մշակման ավարտման և կիրառման սահմանափակման նշված ասպեկտներն ամենևին չեն նսեմացնում դրա նշանակությունն արդի իրականության մեջ։ Խիստ բազմազան են կիրառման բուն բնագավառները— բիոլոգիա, տեխնիկա, էկոնոմիկա, սոցիոլոգիա և այլն։ Երբ կոմպլեքսում ու կառուցվածքում գործնային փոխազդեցությունը պարզելու խնդիրն է դրված, հնարավոր է ամբողջականության, միավորման առանձնացումը սիստեմի մեջ և համապատասխան լուծումը՝ սիստեմի վիճակի բարելավման առումով։ Տարբեր պրոբլեմների առաջացումն ու լուծումը իրականացվում են հասարակության ամեն տիպի սոցիալ-տնտեսական կազմավորման ընթացքում։

Սակայն պրոբլեմների դրսևորման կոնկրետ ձևերը, դրանց առաջացման պատճառները և լուծումների բովանդակությունը լիովին կախված են հասարակական-տնտեսական ֆորմացիայի տիպից։

Սիստեմային վերլուծության կիրառումը սոցիալ-հասարակական տեսանկյունից ազդում է սիստեմային վերլուծության գաղափարները յուրացրած մարդկանց մտածողության ոճի փոփոխման վրա։ Սիստեմային վերլուծության մեթոդոլոգիայի տիրապետումն այն բանի ըմբռնումն է, թե ինչ «պետք է լինի»։ Այդպիսի կոլեկտիվում այն, ինչ սովորաբար այս կամ այն կերպ հասկացվում է, բայց չի կատարվում, դառնում է պրոֆեսիոնալ վարքագծի պարտադիր պահանջը։ Անձանց ու կոլեկտիվների վարքագիծը, որը սահմանվում է սիստեմային մոտեցման հիման վրա, թույլ է տալիս միանգամայն արդյունավետ հայտնաբերելու և վերացնելու կանխակարծությունը։ Այս դեպքում պարզորոշ դրսևորվում է այն դրույթը, ըստ որի շատ ավելի կարևոր է մարդկանց, կոլեկտիվի մտածողության՝ կոնցեպտուալ, բավականաչափ ջրբեղ ու պարզորոշ ապարատի կողմից թելադրվող կարգապահությունը, քան հաշվարկային անհրաժեշտ գործողություններ կատարելու հնարավորություն տվող բուն մաթեմատիկական ապարատը։

Սիստեմային վերլուծության առաջացումն ու մշակումը կարևոր, սկզբունքային նշանակություն ունեն, քանի որ դրանք առաջինը ներկայացրին պրոբլեմների լուծման ընդհանրացման մեթոդոլոգիան՝ հիմնված սիստեմների կոնցեպցիայի վրա։



# Հոբելյանական ՏԱՐԵԹՎԵՐ

Գ. Դ. ՋԱՎԱԽԻՇՎԻԼԻ

*Վրացական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻ ԿԵՍԴԱՐՅԱ ՈՒՂԻՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ Վրաստանի աշխատավորները քաղաքական և աշխատանքային հսկայական վերելքի պայմաններում են տոնում Վրաստանում սովետական իշխանության հաստատման և նրա կոմունիստական կուսակցության կազմակերպման կեսդարյա հոբելյանը:

Ժողովրդի զարգացման 50 տարին պատմության համար կարճ ժամանակաշրջան է: Սակայն այն վրաց ժողովրդի պատմության ամենանշանակալից փուլն է, երբ աշխատավորական զանգվածները լուսավորված լենինյան անմահ գաղափարներով, թոթափեցին կապիտալի լուծը և ստեղծեցին նոր, սոցիալիստական հասարակարգ:

Անցյալում վրաց ժողովուրդը բազում փորձություններ է տեսել, դիմակայել օտարերկրյա զավթիչների հարձակումներին, անհավասար մարտեր մղել հարազատ երկիրը ստրկացնողների դեմ: Պատմական այդ օրհասական պահերին Վրաստանի առաջադիմական գործիչները ցուցաբերեցին քաղաքական մեծ հասունություն՝ կողմնորոշվեցին մերձենալու ռուս ժողովրդի հետ, որը և XIX դարի սկզբին ավարտվեց Վրաստանի միացմամբ Ռուսաստանին:

Այդ բեկումնային շրջադարձի շնորհիվ Վրաստանը միավորվելու և խաղաղ գոյատևելու հնարավորություն ստացավ: Սակայն ցարական ինքնակալության գաղութային և ազգային կեղեքման պայմաններում երկիրը զրկված էր սոցիալական ու տնտեսական ազատ զարգացման հնարավորությունից:

XIX դարավերջին և XX դարասկզբին Ռուսաստանում բռնկած առաջադիմական ազատագրական շարժումն ընդգրկեց նաև Վրաստանը: Վրաց ժողովուրդը անվարան միացավ ռուս ժողովրդի և Ռուսաստանում ապրող ու ցարական ինքնակալության դեմ մարտնչող մյուս ժողովուրդների սոցիալական պայքարին:

Վրաստանի աշխատավորները, որոնք մեծ ավանդ ունեն Ռուսաստանի բանվորական շարժման պատմության մեջ, 1921 թվականի փետրվարի 25-ին տապալեցին մենշևիկների բուրժուա-նացիոնալիստական կառավարությունը և Վրաստանում հաստատեցին սովետական իշխանություն: Սկսվեց Վրաստանի



ազգային իսկական վերածնունդը, իրականացավ վրաց ժողովրդի ազատության ու երջանկության դարավոր երազանքը:

Վրաստանի կոմունիստական կուսակցության, բանվորների ու գյուղացիների իշխանության առաջնահերթ խնդիրը դարձավ տնտեսական դժվարությունների հաղթահարումը, ժողովրդական տնտեսության վերականգնումն ու զարգացումը: Վրացական սովետական երիտասարդ հանրապետության ստեղծման առաջին իսկ քայլերից նրա առջև ծառացած կարևորագույն խնդիրների լուծման ասպարեզում անգնահատելի օգնություն ցույց տվեցին մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն, անձամբ Վ. Ի. Լենինը: Լենինի իմաստուն խորհուրդներն ու ցուցումները, որոնք շարադրված են նրա հռչակավոր «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների Հանրապետության կոմունիստ ընկերներին» նամակում և այլ փաստաթղթերում, դարձան Վրաստանի կոմունիստական կուսակցության ողջ գործունեության հիմքը: Լենինը ուրվագծեց երկրամասի սոցիալիստական շինարարության, արտադրաուժերի արագ վերելքի գիտականորեն հիմնավորված ծրագիրը: Ղեկավարվելով մեծ առաջնորդի այդ իմաստուն ցուցումներով, միշտ ստանալով կուսակցության Կենտրոնական կոմիտեի, մեր երկրի եղբայրական ժողովուրդների օգնությունն ու աջակցությունը, սոցիալիստական Վրաստանի աշխատավորներն աննախադեպ հաջողությունների հասան ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման ասպարեզներում: Արդեն 1925—1926 տնտեսական տարիներում վերականգնվեց 1913 թ. արդյունաբերական արտադրանքի մակարդակը և հանրապետությունում դրվեցին նոր արտադրաճյուղերի հիմքերը:

Երկրի ինդուստրացումը հաստատուն բազա ստեղծեց գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացման համար: Վրաստանում հաջողությամբ կենսագործվեց գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացումը: Կոլտնտեսային կարգը գյուղացիությանն ազատեց դարավոր ստրկությունից, աղքատությունից ու զրկանքներից, նրա համար ունևոր, կուլտուրական, երջանիկ կյանքի ուղի բացեց:

Ինչպես ողջ երկրում, Վրաստանում ևս իրականացվեց կուլտուրական հեղափոխություն: Հանրապետությունը դարձավ համատարած գրագիտության երկիր, ստեղծվեց տարրական ու միջնակարգ դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտահետազոտական և կուլտուր-լուսավորական հիմնարկությունների լայն ցանց:

Սոցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերած աչքի ընկնող նվաճումների համար Վրացական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը 1935 թվականին արժանացավ բարձրագույն կառավարական պարգևի՝ Լենինի շքանշանի:

Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում, Սովետական Միության տնտեսական և հասարակական-քաղաքական կյանքում տեղի ունեցած խոր վերափոխությունները օրենսդրական կարգով ամրապնդվեցին ՍՍՀՄ նոր սահմանադրությունում, որն ընդունվեց 1936 թվականի դեկտեմբերի 5-ին, ՍՍՀՄ սովետների արտակարգ համագումարում: Անդրկովկասյան ֆեդերացիան, որն իր պատմական խնդիրը կատարել էր, սովետական նոր սահմանադրության հիման վրա վերացվեց: Ադրբեջանը, Հայաստանը և Վրաստանը անմիջականորեն ՍՍՀՄ կազմի մեջ մտան որպես միութենական հանրապետություններ:

1941 թ. հունիսի 22-ին ընդհատվեց սովետական մարդկանց խաղաղ աշխատանքը, ֆաշիստական Գերմանիան ուխտադրուժ հարձակվեց մեր հայրենիքի վրա:

Հայրենական մեծ պատերազմում դրսևորվեց Վրաստանի կուսակցական կազմակերպության մարտունակությունը, վրաց ժողովրդի նվիրվածությունը սոցիալիստական հայրենիքին, նրա բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովուրդների լենինյան բարեկամությունը: Վրաստանի կոմունիստական կուսակցությունից 52 հազար կոմունիստ և ավելի քան 150 հազար կոմերիտական պատերազմի առաջին իսկ օրերին մեկնեցին ռազմաճակատ: Հայրենական մեծ պատերազմին մասնակցեց հանրապետության շուրջ 700 հազար ներկայացուցիչ կամ բնակչության մեկ հինգերորդը: Դրանց գրեթե կեսը քաջի մահով ընկավ մարտադաշտերում: Հայրենիքի ազատագրության համար մղվող մարտերում վրացի մարտիկների ցուցաբերած սխրագործությունն ու հերոսությունը բարձր գնահատեցին կուսակցությունն ու կառավարությունը: Հանրապետության 136 քաջամարտիկ արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման. սովետական բանակի 244700 զինվոր ու սպա, պարտիզանական շարժման մասնակից պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով: Վրաստանն իրավամբ հպարտանում է Սովետական Միության հերոսներ Չիչիկո Բենդելանիի, Նոյ Ադամիայի, Շոթա Գամցեմլիձեի և իր խիզախ շատ զավակների սխրագործություններով, կորահրամանատարներ Կոնստանդին Լեսելիձեի, Պորֆիրիա Չանչիբաձեի և այլոց փառապանծ գործերով:

Իրենց հայրենասիրական պարտքը պատվով կատարեցին թիկունքի աշխատավորները: Հանրապետության ողջ կյանքը վերակառուցվեց ռազմական պայմաններին համապատասխան: Վրաստանի արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները պատերազմի տարիներին սովետական բանակին մատակարարում էին պարենամթերք, հանդերձանք, ռազմապաշար և այլն:

Հետպատերազմյան տարիներին Վրաստանի աշխատավորները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ առավել մեծ խանդավառությամբ ձեռնամուխ եղան երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման համար մղվող համաժողովրդական պայքարին: Այդ տարիներին գործարկվեցին այնպիսի ինդուստրիալ գիգանտներ, ինչպիսիք են՝ Ռուսթավիի մետալուրգիական և Քութաիսիի ավտոմոբիլային գործարանները:

Այսօրվա Վրաստանը թողարկում է ժամանակակից արդյունաբերության բազմապիսի արտադրանքներ: Վրաստանի ձեռնարկությունների մակնիշը կրող արտադրանքներն արտահանվում են աշխարհի գրեթե 100 երկիր և մեծ համարում ունեն: Համաշխարհային հռչակ են ձեռք բերել վրացական արգասաբեր հողի բարեբեր պարգևները՝ թեյը, ցիտրուսները, կոնյակը, գինին:

Սովետական իշխանության տարիներին անչափ աճել է արդյունաբերական արտադրանքի ծավալը: 1913 թվականի համեմատությամբ այն ավելացել է 85 անգամ: Ներկայումս Վրաստանում հինգ օրվա ընթացքում այնքան արտադրանք է արտադրվում, որքան մինչև հեղափոխությունը՝ մեկ տարվա ընթացքում: Հանրապետության համախառն արտադրանքում արդյունաբերական արտադրանքի բաժինն անցել է 60 տոկոսից:

Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակը նշելով կոմունիստական շինարարության մեջ ձեռք բերված նոր հաջողություններով, Վրաստանի աշ-



խատավորները լայն սոցիալիստական մրցություն և շարժում են ծավալել հանուն կոմունիստական աշխատանքի, բարձր ցուցանիշներ են ձեռք բերել հնգամյա պլանի կատարման գործում:

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի անցնելու շնորհիվ բարձրացել է հասարակական արտադրության արդյունավետությունը, ավելի արագ են զարգանում արտադրաուժերը:

Ժամանակակից բազմաճյուղ ինդուստրիա ստեղծելու շնորհիվ աճել ու ամրապնդվել են բանվոր դասակարգի ազգային կադրերը և ձևավորվել է ինժեներա-տեխնիկական ինտելիգենցիան: Հանրապետության ժողովրդական տնտեսությունում զբաղված բանվորների ու ծառայողների թիվը 1970 թվականին մոտ 1,5 միլիոն էր կամ 8 անգամ ավելի, քան 1926 թվականին: Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվել է Վրաստանի բանվոր դասակարգի արտադրական որակավորումը, աշխատանքի բովանդակությունն ու բնույթը, բարձրացել նրա տեխնիկական և կուլտուրական մակարդակը:

Անհամեմատ ընդլայնվել է կոլտնտեսությունների նյութատեխնիկական բազան: Կոլտնտեսություններն ունեն մեծ թվով ավտոմեքենաներ, տրակտորներ, կոմբայններ, էներգետիկ և մեխանիկական կայաններ: Թեյի պլանտացիաներում աշխատում են 570 թեյահավաք «Սաքարթվելո» մակնիշի մեքենաներ, 1100 թեյահատ ապարատներ, 750 ինքնագնաց շասիներ: Հանրապետության գրեթե բոլոր կոլտնտեսությունները էլեկտրիֆիկացված են: Վրաստանի կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող 19 հազար մասնագետ:

Անցած հնգամյակում պետական մեծ միջոցներ են ներդրվել կապիտալ շինարարության մեջ: Գործի են դրվել 3,364 մլն ռուբլի արժողության հիմնական արտադրաֆոնդեր կամ 58 տոկոսով ավելի, քան նախորդ հնգամյակում: Նոր կարողությունների գործադրման հետ միասին մեծ աշխատանք է կատարված ձեռնարկությունների ընդլայնման ու վերակառուցման, դրանց տեխնոլոգիական սարքավորումների նորոգման և արդիականացման համար:

Վերջին տարիներին շեշտակիորեն փոխվեց գյուղատնտեսության ճյուղային կառուցվածքը, բարձրացավ հանրային տնտեսության դերը գյուղատնտեսական մթերքների արտադրության համախառն ծավալի մեջ:

Առանձնապես մեծ հաջողությունների են հասել մեր թեյագործները: Թեյը դարձել է Վրաստանի գյուղատնտեսության առաջատար կուլտուրաներից մեկը: Հանրապետությունը տալիս է Սովետական Միությունում արտադրվող թեյի մոտ 95 տոկոսը: Թեյագործների, գիտնականների, ագրոնոմների անձնվեր աշխատանքի շնորհիվ Վրաստանը թեյի տերևի բերքատվությամբ առաջ է անցել այնպիսի մի ավանդական թեյագործական երկրից, ինչպիսին Ցեյլոնն է: Թեյագործության զարգացումը հիրավի ապշեցուցիչ է: Սովետական իշխանության հաստատման տարում թեյի պլանտացիաների 1000 հեկտար ընդհանուր տարածությունից հավաքվել է ընդամենը 550 տոննա կանաչ տերև: Այժմ հանրապետությունում թեյի պլանտացիաները հասել են 64 հազար հեկտարի, ընդ որում յուրաքանչյուր հեկտարից ութերորդ հնգամյակի ավարտական տարում ստացվել է 4,7 տոննա տեսակավոր թեյի տերև: Հնգամյակի ընթացքում պետությանը հանձնվել է 1,155 հազար տոննա թեյի տերև՝ 115 հազար տոննա ավելի, քան նախատեսվում էր պլանով:



4. «Լենինյան ուղիով», № 5

Նոր բնագծեր է նվաճել Վրաստանի գյուղատնտեսության ավանդական
ճյուղերից մեկը՝ խաղողագործությունը: Եթե 1917 թվականին խաղողի այգի-
ների ընդհանուր տարածությունը 41 հազար հեկտար էր, ապա այժմ այն հա-
սել է 115,5 հազար հեկտարի: Ութերորդ հնգամյակի տարիներին հանրապե-
տության խաղողագործներն աճեցրել և հավաքել են 1477,9 հազար տոննա
խաղող կամ 227,9 հազար տոննա ավելի, քան նախատեսված էր հնգամյա
պլանով: Հնգամյա պլանից դուրս պետությանը վաճառվել է 104 հազար տոն-
նա միրգ և 81 հազար տոննա ցիտրուսային պտուղ: Պտղատու այգիների տա-
րածությունը հասել է 148 հազար հեկտարի, իսկ ցիտրուսային պլանտացիա-
ները զբաղեցնում են 15.600 հեկտար: Է՛լ ավելի են զարգացել անասնաբու-
ծությունն ու մետաքսագործությունը:

Սովետական իշխանության տարիներին ստեղծվել է ոռոգման սիստեմի
ճյուղավորված ցանց: Մեծ աշխատանք է տարվել Կոլխիդայի ճահճացած հո-
ղերի չորացման համար: Եթե 1921 թվականին հանրապետությունում ոռոգ-
վում էր մի քանի հազար հեկտար, ապա ներկայումս ոռոգելի հողերի տարա-
ծությունն անցնում է 355 հազար հեկտարից:

Հնգամյակի ընթացքում հանրապետության էկոնոմիկայի ակնհայտ հա-
ջողությունները ռեալ պայմաններ են ստեղծել աշխատավորության նյութական
և կուլտուրական բարեկեցության անշեղ աճի համար: ՍՄԿԿ XXIII համագու-
մարի դիրեկտիվներով նախատեսված աշխատավորների աշխատավարձի ավե-
լացումը, կենսաթոշակային ապահովության բարելավումը հասարակական
ֆոնդերի աճը, կոլտնտեսականների երաշխավորված դրամական վարձատրու-
թյունը և այլ միջոցառումներ, բնականաբար, անդրադարձան նաև մեր հան-
րապետության աշխատավորների բարեկեցության հետագա վերելքի վրա, է՛լ
ավելի մերձեցավ քաղաքի և գյուղի բնակչության կենսամակարդակը:

ԼԱՅՆ քայլերով է առաջ ընթանում վրացական գիտությունը: Այն փաս-
տը, որ հանրապետության գիտահետազոտական հիմնարկություննե-
րում և բարձրագույն ուսումնական հաստատություններում աշխատում
են ավելի քան 900 դոկտոր և 5600 գիտությունների թեկնածու, շատ բան է
ասում:

Գիտական մտքի իսկական կենտրոն դարձավ 1941 թվականին ստեղծված
Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիան, որն այսօր 6 բաժանմունքնե-
րում միավորում է 41 գիտահետազոտական ինստիտուտ:

Մեր հանրապետության գիտությունների ակադեմիայի ստեղծման օրից,
երեք տասնամյակների ընթացքում, այնտեղ կազմավորվել և աճել են սեփա-
կան գիտական դպրոցներ, ձևավորվել են առանձին ճյուղեր: Մեծ է վրաց
գիտնականների ավանդը սովետական գիտության զարգացման ասպարեզում:
Մեզ մոտ հետազոտություններ են կատարվում արդի գիտության գրեթե բոլոր
բնագավառներում, որոնց արդյունքները հաճախ շոշափելի արժեք են ներկա-
յացնում համաշխարհային գիտության համար: Լայնորեն հայտնի են խիտ
ամպերի գոյացման, կարկտահարության կանխման և դրանց վրա ներգործե-
լու մեթոդների ու միջոցների մշակումը: 1969 թվականին այդ գործը արժա-
նացավ պետական մրցանակի: Կիբեռնետիկայի և ավտոմատ կառավարման,
լեռնային և շինարարական մեխանիկայի, սեյսմիկական դիմացկունության վե-



րաբերյալ վերջին տարիներին Վրաստանում կատարվել են աչքի ընկնող հե-
տազոտություններ, որոնք ունեն նաև կիրառական նշանակություն:

Լուրջ հետազոտություններ են կատարվում հասարակական գիտություն-
ների ոլորտում: Մի շարք հիմնարար աշխատություններ են ստեղծվել պատ-
մության, հնագիտության, ազգագրության, լեզվաբանության, վրաց գրակա-
նության պատմության, արևելագիտության, փիլիսոփայության, հոգեբանու-
թյան, վրաց արվեստի պատմության, էկոնոմիկայի, իրավունքի և այլ բնագա-
վառների վերաբերյալ:

Ներկայումս Վրաստանը համատարած գրագիտության երկիր է: Եթե մինչև
հեղափոխությունը գործում էր 1765 դպրոց, որոնց մեծ մասը տարրական էր
և ուներ 157 հազար աշակերտ, ապա ներկայումս 4571 հանրակրթական դըպ-
րոցներում սովորում են մեկ միլիոնից ավելի աշակերտ: Ժողովրդական կըր-
թության շնորհակալ գործին ծառայում է որակյալ ուսուցիչների ավելի քան 77
հազարանոց բանակը:

Ներկայիս Վրաստանը բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների
քանակով ամենաառաջավոր երկրներից է: Սովետական իշխանության տարի-
ներին երկիրը բուհերից և միջնակարգ մասնագիտական հաստատություննե-
րից ստացել է ավելի քան կես միլիոն բարձրորակ ինժեներ ու բժիշկ, մանկա-
վարժ ու գյուղատնտես, կուլտուրայի և արվեստի աշխատող: Վրաստանում
այժմ յուրաքանչյուր հազար բնակչին ընկնում է 58 մարդ՝ բարձրագույն և 382
մարդ՝ միջնակարգ կրթությամբ: Եվ դա այն հանրապետությունում, որտեղ
մինչև սովետական իշխանության հաստատումը կար միայն մեկ բուհ՝ Թբի-
լիսիի համալսարանը: Այժմ 18 բարձրագույն ուսումնական հաստատություն-
ների ցերեկային, երեկոյան և հեռակա բաժանմունքներում սովորում են 90
հազար պատանի ու աղջիկ:

Կուսակցության լենինյան ազգային քաղաքականության կենսագործման
շնորհիվ աննախընթաց ծաղկում ապրեց վրաց ժողովրդի հնադարյա, ինքնա-
տիպ կուլտուրան: Բարձր մակարդակի է հասել վրացական արվեստը՝ թատրո-
նը, երաժշտությունը, կինոն, գեղանկարչությունը և այլն: Գրողները, երա-
ժըշտագետները, նկարիչները, թատրոնի, կինոյի աշխատողները ստեղծել են
լայն ճանաչման արժանացած աչքի ընկնող երկեր, որոնք մեծ ընդունելություն
են գտել:

Բնակչության կուլտուրական մակարդակի աճի պերճախոս վկայություն-
ներ են հետևյալ տվյալները. հանրապետությունում գործում են ավելի քան
2000 ակումբ ու կուլտուրայի տուն, 74 թանգարան, 22 պրոֆեսիոնալ թատ-
րոն, ավելի քան 1800 կինոտեղակայանք, 3,5 հազարից ավելի գրադարան՝ 20
միլիոնից ավելի օրինակ գրքային ֆոնդով, լույս են ընծայվում 146 անուն
թերթ, 121 ամսագիր և այլ պարբերականներ՝ վրացերեն, ռուսերեն, հայերեն,
աբխազերեն, օսերեն և ադրբեջաներեն:

Վերջին ժամանակներս նշանակալի չափով աճել են մեր հեռուստատե-
սության ու ռադիոյի տեխնիկական հնարավորությունները: Թբիլիսին երկրում
երրորդ քաղաքն է, որն ունի գունավոր հեռուստատեսություն: Այս օրերին
Թբիլիսիի, Ռուսթավիի և մերձակա շրջանների բնակիչներն արդեն սկսել են
հեռուստատեսային հաղորդումներ ընդունել երեք ծրագրով:

Վրացական կուլտուրայի իսկական տոնի վերածվեցին Շոթա Ռուսթավելու
ծննդյան 800 և Նիկոլոզ Բարաթաշվիլու 150-ամյակին նվիրված հոբելյանա-

կան տոնակատարությունները: Վրացական կուլտուրան արժանավայել ներկայացվեց ԳԴՀ-ում, Ռումինիայում, Լեհաստանում, Ֆրանսիայում: Մշակութային այդ հանդիսավոր արարողությունները միաժամանակ վերածվեցին ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վառ ցույցի:

Բարձր տեմպերով են վարգացել և զարգանում Վրաստանի կազմի մեջ մտնող Աբխազական, Աջարական ինքնավար հանրապետությունների և Հարավ-Օսեթական ինքնավար մարզի ժողովրդական տնտեսությունն ու կուլտուրան:

Տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում ձեռք բերված նվաճումների համար Վրացական հանրապետությունը 1965 թվականին պարգևատրվեց Լենինի երկրորդ շքանշանով, Աբխազիայում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի կապակցությամբ սույն թվականի մարտ ամսին այդ ինքնավար հանրապետության դրոշի վրա, Լենինի շքանշանի կողքին, շողշողաց Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանը:

ԱՆՑԱԾ ութերորդ հնգամյակի ընթացքում Սովետական Վրաստանի աշխատավորների բեղմնավոր աշխատանքի արդյունքներն ամփոփվեցին Վրաստանի կոմկուսի՝ սույն տարվա փետրվարին կայացած XXIV համագումարում: Համագումարը նշեց, որ հանրապետության աշխատավորները ութերորդ հնգամյակը և, առանձնապես, այն եզրափակող լենինյան հոբելյանական տարին աշխատանքային մեծ հաղթանակներով նշանավորեցին ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի բոլոր ասպարեզներում և, քննարկելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների նախագիծը, նշեց հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները, որոնք բխում են այդ քաղաքական և պետական հսկայական կարևորություն ներկայացնող փաստաթղթից:

Իններորդ հնգամյակում Սովետական Վրաստանի առաջ բացվում են նոր, լայն հեռանկարներ, զարգացման նոր բնագծեր:

Հնգամյակի կարևորագույն առաջադրանքը էներգետիկայի և հատկապես էլեկտրաէներգիայի զարգացումն է, որը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևոր նախադրյալն է: Էլեկտրաէներգիայի արտադրանքը հնգամյակի ընթացքում կհասնի 15,5 միլիարդ կիլովատ ժամի: Կգործարկվեն Ինգուրիի հիդրոէլեկտրակայանի և Վարցիխիի կասկադի առաջին հերթի կարողությունները: Կսկսվի Ժինվալիի հիդրոտեխնիկական կոմպլեքսի կառուցումը, որի ջուրը կօգտագործվի ինչպես հիդրոտեխնիկական և ոռոգման նպատակներով, այնպես և Թբիլիսի քաղաքի ջրամատակարարման համար: Թբլիսիի ջերմաէլեկտրակայանում կգործարկվի 360 հազար կիլովատ կարողության նոր ագրեգատ:

Քանակական աճի հետ միասին նախատեսվում է վառելիքային հաշվեկշռի բարելավում: Ընդհանուր վառելիքային հաշվեկշռում բնական գազի օգտագործումը 1970 թվականի 25 տոկոսի փոխարեն կկազմի 45,4 տոկոս: Բնական գազի օգտագործման այդպիսի ավելացումը պայմանավորված է դրա պաշարների, ամենից առաջ, Իրանից ստացվող գազի հաշվին:

Զգալի չափով կավելանա քարածխի հանույթը: Նախատեսվում է Տկվիբուլիում կառուցել և շահագործման հանձնել երկու նոր հանքահոր՝ յուրաքանչյուրը 600 հազար տոննա կարողությամբ: Է՛լ ավելի կզարգանա մանգանի արդյունաբերությունը՝ մեր սև մետալուրգիայի հնագույն ճյուղերից մեկը:

Նախատեսվում է նաև գունավոր մետալուրգիայի զարգացում. եղած կարողությունների լավագույն օգտագործման հետ միասին Բոլնիսի շրջանում կավարտվի պղնձի հարստացուցիչ կոմբինատի շինարարությունը: Մադնեուլիում հայտնաբերված պղնձահանքի պաշարները հսկայական հեռանկարներ են բացում:

Ընթացիկ հնգամյակում համարյա երկու անգամ կավելանա քիմիական արդյունաբերության արտադրանքը: Կապիտալ շինարարության հարաճուն պահանջմունքները բավարարելու նպատակով առավել արագ տեմպերով է զարգանալու շինանյութերի արդյունաբերությունը: Իր լրիվ կարողությամբ շահագործման կհանձնվի Գարդաբանիի ստվարաթղթի և ծածկի հրակայուն նյութերի (ռուբերոիդների) գործարանը:

Հաստոցաշինության արտադրության և գործիքաշինական արդյունաբերության ծավալը կաճի 1,8 անգամ, գյուղատնտեսական մեքենաների թողարկումը՝ 2,1 անգամ: Նախատեսվում է մեքենաշինության ոչ-մետաղատար ճյուղերի զարգացում: Ավտոմատացման սարքերի ու միջոցների թողարկումը կմեծանա 3,4, էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքներինը՝ 1,6 անգամ: Շարք կմտնեն Թբիլիսիի կառավարող հաշվիչ մեքենաների, «Սուխումպրիբոր», Բաթումիի նոր էլեկտրամեխանիկական գործարանները, Թբիլիսիի սարքաշինական գործարանի նոր կորպուսը և այլն:

Վրաստանի գյուղատնտեսության մասնագիտացմանը համապատասխան նախատեսված է կանաչ թեյի տերևի արտադրությունը հասցնել 272 հազար տոննայի, զարգացնել խաղողի, պտղի, ցիտրուսների, ծխախոտի, էֆերայուղատու և այլ տեխնիկական կուլտուրաների, ինչպես նաև հացահատիկի, բանջարեղենի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրությունը՝ գլխավորապես միջին բերքատվությունը բարձրացնելու հաշվին: Բերքատվության աճման հետ միասին ընթացիկ հնգամյակում կտնկվի 50 հազար հեկտար պտղատու և խաղողի նոր այգի, թեյ և այլ կուլտուրաների պլանտացիաներ՝ գլխավորապես չորացմամբ ու ոռոգմամբ ստացված նոր հողատարածությունների հաշվին:

Մեծ ուշադրություն է նվիրվելու անասնաբուծության հետագա վերելքին: Անասնաբուծության մթերքների արտադրության զարգացման գործում զգալի դեր կկատարի արդյունաբերական թռչնաբուծությունը: 1971—1975 թվականներին կավարտվի թռչնաբուծական փաբրիկաների շինարարությունը Կոդայում, Գորիում, Գագրայում, Գոմիում և այլուր: Դրա հետ մեկտեղ, կկառուցվի մսի ու կաթի վեց խոշոր փաբրիկա. դա հնարավորություն կընձեռի հնգամյակի ընթացքում թռչնի մսի արտադրությունն ավելացնել 53, ձվինը՝ 74 տոկոսով: 1975 թվականին թռչնի մսի մթերումը կհասնի 20 հազար տոննայի, իսկ ձվինը՝ 500 միլիոն հատի: Մսի ու կաթի արտադրությունը արդյունաբերական հիմքի վրա դնելու համար նախատեսված է խոշոր անասնաբուծական կոմպլեքսների շինարարություն: Կամրապնդվի ու կզարգանա անասնաբուծական կերի բազան:

Հնգամյակի ընթացքում կօգտագործվեն 70 հազար հեկտար ոռոգելի և 50 հազար հեկտար ցամաքեցված գերխոնավ հողատարածություններ: Հիմնա-

կանում կավարտվի Վերին-Ալազանիի ոռոգիչ սիստեմի առաջին հերթի կառուցումը: Մելիորատիվ հսկայական աշխատանքներ են կատարվելու Կոլխիդայի ցածրադիր վայրերի ճահճային և գերխոնավ հողատարածություններում:

1971—1975 թվականներին հանրապետությունում առավել չափերով կզարգանան տրանսպորտի բոլոր տեսակները: 1973 թվականին Սուրամի լեռնանցքում կանցկացվի երկրորդ երկաթուղին:

Նոր հնգամյակում շեշտակիորեն կավելանան կապիտալ ներդրումները: Կապիտալ ներդրումների առանձնապես մեծ աճ է նախատեսվում գյուղատնտեսության գծով՝ 77 տոկոսով ավելի, քան անցած հնգամյակում:

Մեծ միջոցառումներ են նախատեսվում ժողովրդի նյութական բարեկեցության և կենսամակարդակի բարձրացման ոլորտում, 44 տոկոսով կավելանա այդ նպատակի համար օգտագործվող ազգային եկամուտը, մոտավորապես 38 տոկոսով կաճեն աշխատավորների ռեալ եկամուտները: Միայն պետական կապիտալ ներդրումների հաշվին կկառուցվեն 3,3 միլիոն քառակուսի մետր ընդհանուր ծավալով բնակելի տներ կամ 36 տոկոսով ավելի, քան անցյալ հնգամյակում: Հանրապետության գրեթե բոլոր շրջաններում մեծ ծավալի աշխատանքներ են պլանավորվում ջրմուղ-կոյուղու, գազիֆիկացիայի, ջեռուցման շինարարության ասպարեզում: Էապես կբարելավվի բնակչության տրանսպորտային սպասարկումը: Առանձնապես մեծ չափով կզարգանա քաղաքային էլեկտրատրանսպորտը:

Պլանով նախատեսված աշխատանքների կատարմամբ Վրաստանի բոլոր քաղաքներում, շրջանային կենտրոններում կապահովվի հեռուստատեսային հաղորդումների կայուն ընդունումը: Զգալիորեն կբարելավվի բնակչության բուժսպասարկումը: Նախատեսված է հնգամյակի ընթացքում կառուցել 8 հազար մահճակալով հիվանդանոցներ: Նոր զարգացման կհասնի ֆիզիկական կուլտուրան և սպորտը: Այդ նպատակի համար պլանավորվում է բարեկարգ սպորտային շենքերի շինարարություն:

Ընթացիկ հնգամյակում վզալի աշխատանք կկատարվի հանրապետությունում առողջարանների ընդլայնման և տուրիզմի զարգացման համար: Առողջարանների ցանցը կընդարձակվի, առաջին հերթին, այնպիսի հանրահայտ վայրերում, ինչպիսին Գագրան է, Քոբուլետին, Բակուրիանին, Բորժոմը, Ծղալտուբոն: Նախատեսվում է տուրիզմի օբյեկտներ ստեղծել և զարգացնել հանրապետության բարձր լեռնային շրջաններում, հատկապես Փաշավ-Խևսուրեթիում, Սվանեթիում և այլուր:

Առևտրի առաջատար ձևերի արմատավորման միջոցով ընթացիկ հնգամյակում կբարելավվի հանրապետության բնակչության սպասարկումը: Կստեղծվի առևտրի խիստ հագեցած, արդիական նյութա-տեխնիկական բազա: Բնակչության ռեալ եկամուտների աճման շնորհիվ անհրաժեշտ կլինի ավելացնել սպասարկման ոչ նյութական ոլորտի ծավալը: Դրան համապատասխան ընթացիկ հնգամյակում պլանավորվում է կենցաղային ծառայության ծավալն ավելացնել առնվազն 2,2 անգամ, այդ թվում գյուղական վայրերում՝ 3 անգամ:

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ նվաճումների աղբյուրներից մեկը Սովետական Միության եղբայրական ժողովուրդների բարեկամությունն է: Մեր երկրի ժողովուրդների կենարար բարեկամությունը ակնհայտ ու բազմակողմանի արտահայտվում է կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրի կենսագործման, միութենական հանրապետությունների արտադրակապերի ընդլայնման, դրանց մրցության, առաջավոր փորձի ուսումնասիրման ու փոխանակման, ազգային կուլտուրաների փոխադարձ հարստացման ոլորտում, հասարակական-քաղաքական և պետական ողջ կյանքում:



Սոցիալիստական շինարարության տարիներին Աբխազիայի, Աջարիայի և Հարավ-Օսեթիայի աշխատավորները, Վրաստանի բոլոր աշխատավորների հետ սերտ համագործակցած, մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական օգնությամբ, մեծ հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման գործում:

Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը կոփվել ու բյուրեղացել է սոցիալիզմի հաղթանակի, հոկտեմբերի մեծ նվաճումների պաշտպանության համար մղվող պայքարում, իսկ այժմ ամրապնդվում է ստեղծագործական կոմունիստական աշխատանքում:

Վրաստանի աշխատավորները եղբայրական օգնություն են ցույց տվել ֆաշիստական օկուպացիայից ազատագրված շրջաններին: Հանրապետության պատվիրակները մասնակցել են Ստալինգրադի, Խարկովի, Նովոռոսիյսկի և այլ քաղաքների, ինչպես նաև Զապորոժիեի երկաթաձուլվածքի, Նիկոպոլի և Դոնբասի ածխահանքերի ու այլ ձեռնարկությունների վերականգնմանը: Միևնույն ժամանակ, Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Ուրալի գործարաններում, Դոնբասի ածխահանքերում սովորել և նոր արտադրական պրոֆեսիաներ են ձեռք բերել հարյուրավոր վրացի բանվորներ:

Սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության ու եղբայրության վառ ցուցադրում են սոցիալիստական մրցությունն ու առաջավոր փորձի փոխանակումը միութենական հանրապետությունների քաղաքների արդյունաբերական և գյուղատնտեսական կոլեկտիվների միջև, գնալով ավելի են ամրապնդվում գիտական և կուլտուրական կապերը: Այդ են վկայում Մոսկվայի օրերը Թբիլիսիում, Ադրբեջանինը և Հայաստանինը՝ Վրաստանում, վրացական գիտությանը՝ Մոսկվայում, Ռուսաստանի Ֆեդերացիայի կուլտուրայինը՝ Վրաստանում, ուկրաինական կուլտուրայինը՝ Վրաստանում և վրացական գրականությանը՝ Ուկրաինայում:

Այդ մեծ ստեղծագործական բարեկամությունը Վրաստանի աշխատավորներին, ինչպես և սովետական ողջ ժողովրդին ոգեշնչում է դեպի նոր սխրանքներ՝ հանուն կոմունիզմի հաղթանակի:

Նոր հնգամյակի առաջին արդյունքները վկայում են այն մեծ քաղաքական ու աշխատանքային վերելքի մասին, որին հանրապետության աշխատավորները ձեռնամուխ են եղել կուսակցության առաջադրանքները կենսագործելու համար: Առաջին եռամսյակի արտադրական առաջադրանքները զգալի չափով գերակատարվել են:

Կրկնակի շքանշանակիր Վրաստանի աշխատավորները, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով ոգեշնչված, ի նշանավորումն ոսկե հոբելյանի՝ նըվաճված հաջողություններով թևավորված, վստահ պայծառ ապագայի նկատմամբ, մարտերում ու աշխատանքում կոփված Վրաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ է՛լ ավելի սերտորեն են համախմբված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի շուրջը: Նրանք տասնապատիկ եռանդով են շարունակում իրենց ստեղծագործական ուղին, արժանի ավանդ մուծում կոմունիստական շինարարության հիասքանչ ծրագիրը կենսագործելու համար:

Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

# ՄԵԾ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏՆԵՐԸ

(ԿԱՐԼ ԼԻԲԿՆԵԽՏԻ ԵՎ ՌՈԶԱ ԼՅՈՒՔՍԵՄԲՈՒՐԳԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

«Կարլ Լիբկնեխտ— այս անունը հայտնի է բոլոր երկրների բանվորներին: Ամենուրեք, և մանավանդ Անտանտի երկրներում, այդ անունը հանդիսանում է պրոլետարիատի շահերին առաջնորդի նվիրվածության, սոցիալիստական հեղափոխությանը նրա հավատարմության սիմվոլը: Այդ անունը կապիտալիզմի դեմ մղվող իրոք անկեղծ, իրոք կոհաքերությունների պատրաստ ու անխնա պայքարի սիմվոլն է: Այդ անունը իմպերիալիզմի դեմ ոչ թե խոսքով, այլ գործով մղվող անհաշտ պայքարի սիմվոլն է...»:

(Վ. Ի. ԼԵՆԻՆ)

«Ռոզա Լյուքսեմբուրգը արծիվ էր և արծիվ էլ մնում է. և ոչ միայն նրա հիշատակը միշտ կգնահատվի ամբողջ աշխարհի կոմունիստների կողմից, այլև նրա կենսագրությունը ու նրա Երկերի *լիակատար* ժողովածուն... ամենաօգտակար դասը կլինեն ամբողջ աշխարհի կոմունիստների դաստիարակման համար»:

(Վ. Ի. ԼԵՆԻՆ)

Համաշխարհային բանվորական շարժման ականավոր գործիչներ և Գերմանիայի կոմունիստական կուսակցության հիմնադիրներ Կարլ Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսեմբուրգի անունները ոսկյա տառերով են գրված միջազգային պրոլետարիատի ազատագրական շարժման պատմության մեջ: Նրանք բախտակից մարտիկներ էին. ծնվել էին նույն 1870 թ., հերոսաբար զոհվել նույն 1919 թ. հունվարի 15-ին, դասակարգային միևնույն թշնամու ձեռքով:

Անցած դարի 90-ական թվականներին հաստատուն ու վճռականորեն կանգնելով հեղափոխական մարքսիզմի հաղթական դրոշի տակ՝ Կ. Լիբկնեխտն ու Ռ. Լյուքսեմբուրգն իրենց պայքարի գրեթե բոլոր հասուն տարիներն անցկացրին միասին, կողք-կողքի, որպես իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստներ, պրոլետարական առաջնորդներ, գերմանական և միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչներ, կոմունիստական ինտերնացիոնալի լավագույն ներկայացուցիչներ: Առաջին համաշխարհային պատերազմի սկզբին գերմանական ձախ սոցիալ-դեմոկրատները Լիբկնեխտի և







Լյուքսեմբուրգի ղեկավարությամբ ստեղծեցին «Սպարտակի միությունը», որի հիման վրա 1918 թվականին ձևավորվեց Գերմանիայի կոմունիստական կուսակցությունը:

Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի մեծ ծառայությունները աշխատավոր մարդկությանը, նրանց համարձակ ու անձնվեր պայքարը իմպերիալիզմի դեմ՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի: 1919 թ. հունվարին Վ. Ի. Լենինը գրել է. «Երբ գերմանական «Սպարտակի Միությունը» իր համաշխարհային հռչակ ունեցող և ամբողջ աշխարհում նշանավոր այնպիսի առաջնորդներով, բանվոր դասակարգին հավատարիմ այնպիսի կողմնակիցներով, ինչպիսիք էին՝ Լիբկնեխտը, Ռոզա Լյուքսեմբուրգը, Կլարա Ցետկինը, Ֆրանց Մերինգը՝ իր կապը վերջնականապես խզեց այնպիսի սոցիալիստների հետ, ինչպես Շեյդեմանը և Զյուդեկումը, այս սոցիալ-շովինիստների (խոսքով սոցիալիստների և գործով շովինիստների) հետ, որոնք իրենց ընդմիշտ խայտառակել են Գերմանիայի կողոպտիչ, իմպերիալիստական բուրժուազիայի և Վիլհելմ II-ի հետ դաշինք կնքելով, երբ «Սպարտակի Միությունը» իրեն անվանեց «Գերմանիայի կոմունիստական կուսակցություն»,— այն ժամանակ իրոք պրոլետարական, իրոք ինտերնացիոնալիստական, իրոք հեղափոխական III ինտերնացիոնալի, *Կոմունիստական Ինտերնացիոնալի հիմնադրումը* դարձավ *փաստ*» (Երկեր, հատ. 28, էջ 559):

Ընդգծելով Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի համերաշխ ելույթները հակահեղափոխության դեմ՝ ականավոր բոլշևիկ Ալեքսանդրա Կոլոնտայը գրել է, որ այդ երկու կերպարները զոդված էին պայքարի միասնությամբ, իմպերիալիզմի և II ինտերնացիոնալի ճգնաժամի հանդեպ գրաված դիրքի համերաշխությամբ: «Կարլի բոցավառ, լայն անսասան սիրտը,— նշել է Ա. Կոլոն-

տայր,— Ռոզայի ստեղծագործական գլուխը իրար լրացնող երկու բևեռներ են: Լիբկնեխտը «Սպարտակյանների» շարժման սիրտն էր, Լյուքսեմբուրգը՝ ուղեղը»:

Ռոզա Լյուքսեմբուրգը ծնվել, սկզբնական կրթությունն ստացել և հեղափոխական շարժումների մեջ է մտել Լեհաստանում: Տասնութ տարեկան հասակում, մասսայական ձերբակալությունների հետևանքով, նա ստիպված է լինում վտարանդվել Շվեյցարիա, որտեղ ավարտում է համալսարանը և գրում դոկտորական դիսերտացիա՝ Լեհաստանի արդյունաբերության զարգացման մասին: Իննսունական թվականների սկզբին Ռ. Լյուքսեմբուրգը ղեկավար մասնակցություն է ունենում Լեհաստանի սոցիալ-դեմոկրատական կուսակցության հիմնադրմանը, վճռական պայքար մղում նացիոնալիզմի ու ռեֆորմիզմի դեմ՝ միշտ հավատարիմ մնալով պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հեղափոխական դասակարգային պայքարի սկզբունքներին:

1897 թ. տեղափոխվելով Գերմանիա՝ Ռ. Լյուքսեմբուրգն ակտիվորեն մասնակցում է գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության գործունեությանը: Հենվելով Մարքսի և Էնգելսի աշխատությունների վրա՝ նա իրեն հատուկ հեղափոխական կրքոտությամբ պայքարում էր Բեռնշտայնի և մյուս ռևիզիոնիստների հակամարքսիստական հայացքների դեմ, պաշտպանում պրոլետարիատի կողմից իշխանությունը նվաճելու անհրաժեշտության գաղափարը:

Այդ նույն ժամանակ Գերմանիայում հեղափոխական աշխատանք էր ծավալել Կարլ Լիբկնեխտը, Մարքսի ու Էնգելսի հավատարիմ աշակերտ ու զինակից, Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության հիմնադիրներից ու առաջնորդներից մեկի՝ Վիլհելմ Լիբկնեխտի որդին: Ծանոթանալով ու մտերմանալով միմյանց որպես մեծ պայքարի անխոնջ մարտիկներ՝ Ռ. Լյուքսեմբուրգն ու Կ. Լիբկնեխտը իրենց քաղաքական գործունեության հենց սկզբից հարում են գերմանական սոցիալ-դեմոկրատիայի ձախ՝ հեղափոխական թևին և դառնում նրա ճանաչված ղեկավարները: Ֆրանց Մերինգի, Կլարա Ցետկինի, Վիլհելմ Պիկի և մյուսների հետ նրանք հետևողականորեն հանդես են գալիս ռևիզիոնիզմի ու օպորտունիզմի դեմ: Սոցիալ-դեմոկրատների համար գլխավորը համարելով մշտական ու սերտ կապը մասսաների հետ՝ նրանք գտնում էին, որ առանց այդ կապի չի կարելի հաղթել հասարակության սոցիալիստական վերափոխության համար մղվող պայքարում:

Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի մարքսիստական հեղափոխական գաղափարների զարգացման վրա խոր ազդեցություն են գործել ռուսական հեղափոխական շարժումը, ռուսական և համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը:

Կարլ Լիբկնեխտը, Ռ. Լյուքսեմբուրգի և գերմանական մյուս ձախերի հետ միասին, մեծ ոգևորությամբ դիմավորեց ռուսական առաջին հեղափոխությունը: «Մենք,— գրել է նա 1905 թ. փետրվարին,— բոլոր հիմքերն ունենք կանգնելու ռուսական հեղափոխության դրոշի տակ: Ռուսական հեղափոխությունը մեր գործն է, իսկ ռեակցիան՝ թագավորների և պրուսական կառավարության գործը... Կեցցե՛ ռուսական հեղափոխությունը»: 1905 թ. սեպտեմբերին գերմանական սոցիալ-դեմոկրատիայի Իենայի համագումարում կուսակցության ձախ թևի ղեկավարները՝ Ռ. Լյուքսեմբուրգը, Կ. Լիբկնեխտը և Կլարա Ցետկինը, կոչ են անում հաշվի առնել ռուսական պրոլետարիատի փորձը,



զինվել դասակարգային պայքարի նոր փորձով, հաղթահարել տեղական աշխատանքի նեղ շրջանակները:

Ռոզա Լյուքսեմբուրգը հրճվանքով է գրում Մոսկվայի դեկտեմբերյան ապստամբության մասին, որտեղ բանվորները «ավելի շուտ հաղթեցին, քան պարտվեցին»: Հեղափոխությանը անձնական մասնակցություն ունենալու համար՝ 1905 թվականի դեկտեմբերին նա Գերմանիայից անլեգալ անցնում է Վարշավա, սակայն, շուտով ձերբակալվում է և բանտարկվում: Ազատվելով բանտից՝ Ռ. Լյուքսեմբուրգը շարունակում է իր ակտիվ հեղափոխական գործունեությունը. մասնակցում է ՌՍԴԲԿ V (Լոնդոնի) համագումարին, Շտուտգարդի միջազգային սոցիալիստական կոնգրեսին՝ մի շարք հարցերում պաշտպանելով լենինյան դիրքորոշումները:

Առաջին համաշխարհային պատերազմի ծանր տարիներին Կ. Լիբկնեխտը և Ռ. Լյուքսեմբուրգը մինչև վերջ հավատարիմ մնացին պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, վճռականորեն բարձրացրին իմպերիալիստական պատերազմի դեմ անհաշտ պայքարի դրոշը: Հանդես գալով ընդդեմ սոցիալ-շովինիզմի, Լյուքսեմբուրգը գրել է. «Չկա սոցիալիզմ առանց պրոլետարիատի ինտերնացիոնալ համերաշխության...»:

1916 թ. հունվարի 1-ին Բեռլինում, Կարլ Լիբկնեխտի բնակարանում տեղի ունեցավ ձախ սոցիալ-դեմոկրատների համագերմանական կոնֆերանսը, որն ընդունեց «Ինտերնացիոնալի» խմբի՝ Ռ. Լյուքսեմբուրգի մշակած թեզիսները:

Սպարտակյանները մասսաների մեջ պրոպագանդա էին մղում իմպերիալիստական պատերազմի դեմ, մերկացնում գերմանական իմպերիալիզմի զավթողական քաղաքականությունը և սոցիալ-դեմոկրատների առաջնորդների դավաճանությունը: Բարձր գնահատելով սպարտակյանների համարձակ ելույթները իմպերիալիզմի դեմ, հանուն պրոլետարիատի ինտերնացիոնալ շահերի, Վ. Ի. Լենինը միաժամանակ քննադատում էր նրանց սխալները տեսության և քաղաքականության առանձին հարցերում:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը, որի լուրը Կ. Լիբկնեխտն ու Ռ. Լյուքսեմբուրգն իմացան բանտում, մեծ ազդեցություն թողեց նրանց վրա: 1918 թ. ամռանը Ռ. Լյուքսեմբուրգը գրում էր. «Լենինի կուսակցությունը եղավ միակ կուսակցությունը, որը հաշվի առավ մոմենտի պահանջը, հասկացավ իսկական հեղափոխական կուսակցության պարտականությունը և, առաջ քաշելով «Ամբողջ իշխանությունը պրոլետարիատին ու գյուղացիությանը» լոզունգը, ապահովեց հեղափոխության հաջողությունը»: 1918 թ. սեպտեմբերին Կ. Լիբկնեխտը բանտից գրում էր իր կնոջը. «Ես պատրաստ եմ սեփական հազար կյանք զոհաբերել՝ աջակցելու, մասնակցելու համար այն գործին, որը կարող է օգնել ռուսական հեղափոխությանը և ամբողջ աշխարհին»:

1918 թ. հոկտեմբերին ազատվելով բանտից՝ Կ. Լիբկնեխտը և Ռ. Լյուքսեմբուրգը կարևոր դեր են խաղում Գերմանիայում նոյեմբերյան հեղափոխության նախապատրաստման ու իրականացման գործում, պայքարում են Ռուսաստանում ստեղծված սովետական իշխանության հետ սերտ դաշինք հաստատելու համար:

Իմանալով Կ. Լիբկնեխտի բանտից ազատվելու ուրախալի լուրը՝ Վ. Ի. Լենինը, Յա. Մ. Սվերդլովը և Ի. Վ. Ստալինը հղում են նրան իրենց ամենա-

ջերմ ողջույնը: «Գերմանական հեղափոխական բանվորների ներկայացուցչի ազատվելը բանտից,— գրում էին նրանք,— նոր դարաշրջանի, հաղթական սոցիալիզմի դարաշրջանի նշանավորումն է, դարաշրջան, որն այժմ սկսվում է և՛ Գերմանիայի համար, և՛ ամբողջ աշխարհի համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 35, էջ 407):

Կ. Լիբկնեխտը և Ռ. Լյուքսեմբուրգը մեծագույն ծառայություն մատուցեցին գերմանական և միջազգային բանվորական շարժմանը՝ ղեկավար մասնակցություն ցույց տալով Գերմանիայի կոմունիստական կուսակցության հիմնադրմանը, որը տեղի ունեցավ նրա առաջին համագումարում (1918 թ. դեկտեմբերի 30-ից 1919 թ. հունվարի 1-ը): «Մենք կրկին Մարքսի հետ ենք, նրա դրոշի տակ»— հայտարարեց համագումարում Ռ. Լյուքսեմբուրգը: Կ. Լիբկնեխտի, Ռ. Լյուքսեմբուրգի, Կ. Ցետկինի, Ֆ. Մերինգի, Վ. Պիկի և մյուսների ղեկավարությամբ ԳԿԿ ստեղծումը խոշորագույն իրադարձություն էր գերմանական բանվորական շարժման պատմության մեջ և ունեցավ վիթխարի միջազգային նշանակություն, արժանացավ Վ. Ի. Լենինի շատ բարձր գնահատականին:

Կարլ Լիբկնեխտի, Ռոզա Լյուքսեմբուրգի և նրանց մարտական ընկերների՝ իմպերիալիզմի և պատերազմի դեմ, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մղած անխոնջ պայքարն առաջացրեց իմպերիալիստների և նրա աջ սոցիալ-դեմոկրատական գործակալների կատաղի ատելությունը: 1919 թ. հունվարի 15-ին նրանք կազմակերպեցին Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի շարանենգ սպանությունը՝ նպատակ ունենալով գլխատել անող հեղափոխական շարժումը երկրի ներսում: Սակայն այդ հնարավոր չէր: Գերմանական բանվոր դասակարգի առաջնորդների արյունը կոփեց բանվորական նորանոր մասսաներ, որոնք հաղթականորեն շարունակեցին հերոսական պայքարը մոլեգնող բուրժուազիայի դեմ: Այդ պայքարում նրանց համար ոգեշնչման աղբյուր էին Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի հերոսական անունները:

* * *

Կարլ Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսեմբուրգի անունները նվիրական են ու սիրելի նաև հայ աշխատավորության համար:

Դեռևս XIX դարի 90-ական թվականներին, երբ Կ. Լիբկնեխտն ու Ռ. Լյուքսեմբուրգը նոր էին մտել հեղափոխական պայքարի հորձանուտը և, զինվորագրվելով մարքսիզմին, կանգնել էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի տակ, նրանք արդեն ծանոթ էին հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարին և մասնավորապես թուրքական բռնակալության դեմ մղած նրա անհավասար, բայց հերոսական մարտերին, անձամբ գիտեին առանձին հայ հեղափոխական գործիչների: XX դարի սկզբին նրանց հետ անձնական կապեր են հաստատում Բոգդան Կնունյանցը, Իսահակ Լալայանցը, Ստեփան Շահումյանը, Կամոն, Սուրեն Սպանդարյանը, Ասատուր Կախոյանը, Սարգիս Կասյանը, Վլադիսլավ Կասպարովը, Արշավիր Մելիքյանը, Ալեքսանդր Բեկզադյանը, Վառլամ Ավանեսովը, Աշոտ Հովհաննիսյանը, Հակոբ Հակոբյանը, Արամայիս Երզնկյանը, Հայկ Գյուլիքևխյանը և ուրիշներ:

Հայկական հարցի քննարկման բոլոր էտապներում Ռոզա Լյուքսեմբուրգի և Կարլ Լիբկնեխտի համակրանքը միշտ եղել է հայ ժողովրդի կողմը: Գերմա-



նական ռայխստագում հայերի ջերմ պաշտպանությամբ հանդես է գալիս նրա դեպուտատ Կարլ Լիբկնեխտը, որը, Ռոզա Լյուքսեմբուրգի, Կլարա Ցետկինի, Ֆրանց Մերինգի և գերմանական սոցիալ-դեմոկրատիայի այլ ձախ ներկայացուցիչների ղեկավարների հետ միասին, մերկացնում էր պատերազմի իմպերիալիստական բնույթը նրա բոլոր մասնակիցների կողմից:

Հայկական կոտորածների համար Կ. Լիբկնեխտը վճռականորեն դատապարտում էր թե՛ թուրքական կառավարողներին և թե՛ գերմանական իմպերիալիստներին: Դա բուռն հավանության էր արժանանում Գերմանիայի և աշխարհի այլ երկրների առաջավոր մարդկանց կողմից: Գերմանական սոցիալիստական միասնական կուսակցության քարտուղար Կ. Հագերը, որը Վալտեր Ուլբրիխտի գլխավորած ԳԴՀ կուսակցական-կառավարական պատվիրակության կազմում 1965 թ. սեպտեմբերին եկել էր Հայաստան, իր ճառերից մեկում հպարտորեն ասաց, որ Գերմանիայի մեծ մարդիկ, ազգային հերոս Կարլ Լիբկնեխտը, ելույթ ունենալով ռայխստագի նիստում, իր ձայնը բարձրացրեց իմպերիալիզմի մասնակցությամբ ու թույլտվությամբ 1915—1919 թվականներին հայկական կոտորածների կազմակերպման խայտառակ հանցագործությունների դեմ (տե՛ս «Սովետական Հայաստան», № 225, 23-ը սեպտեմբերի, 1965 թ.):

Լենինյան դիրքերից գնահատելով Կարլ Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսեմբուրգի ծառայությունները բանվոր դասակարգին և ճնշված ժողովուրդներին՝ հայ առաջավոր գործիչները հանդես էին գալիս սոցիալիզմի և դեմոկրատիայի այդ մեծ մարտիկների վճռական պաշտպանությամբ:

Դեռևս 1906—1911 թթ. Գերմանիայի և Շվեյցարիայի համալսարաններում սովորելու տարիներին, մոտիկից ծանոթանալով Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի հեղափոխական գործունեությանը, իսկ ապա՝ կազմակերպչորեն կապվելով գերմանական սոցիալ-դեմոկրատիայի ձախ թևի ղեկավարներին և, մասնավորապես, Կ. Լիբկնեխտին, Հ. Գյուլիքևխյանը մասնակցում է «Սպարտակի Միության» և ապա՝ Գերմանիայի կոմունիստական կուսակցության գործունեությանը:

Արտասահմանում գտնվելու տարիներին գերմանական ձախ սոցիալ-դեմոկրատների հետ կապված էր Վ. Կասպարովը: Բեռլինից Աստրախան ուղարկած 1913 թ. մայիսի 22-ի նամակում Վ. Կասպարովը Ստ. Շահումյանին գրում էր, որ մտադիր է գտնել Ռոզա Լյուքսեմբուրգի նոր գիրքը *Կապիտալի կուտակման մասին*: 1916 թ. հունվարի 24-ին «Պայքար» թերթում Ստ. Շահումյանը հրապարակում է իր «Վերջին դեպքերը Գերմանիայում» հոդվածը՝ ի պաշտպանություն Կարլ Լիբկնեխտի, Ռոզա Լյուքսեմբուրգի, Ֆրանց Մերինգի և գերմանական ձախ սոցիալ-դեմոկրատների այլ ղեկավարների: Մերկացնելով գերմանական սոցիալ-դեմոկրատներին վարկաբեկելու և ռուս բանվորներին դեպի Գերմանիայի բանվորները ատելություն ներշնչելու բուրժուական թերթերի վարքագիծը՝ Ստ. Շահումյանը հավաստում է, որ «...մեր ամբողջ համակրանքը եղել է սկզբից այն փոքրաթիվ խիզախների հետ, որոնք Լիբկնեխտի դրոշի տակ բողոքել են Վիլհելմի արյունոտ արկածախնդրության դեմ և ժխտել են սոցիալ-դեմոկրատական պառլամենտական ֆրակցիայի մեծամասնության ազգայնական քաղաքականությունը: Մենք ուզում ենք միայն մատնանշել, թե որքան բարդ ու կնճռոտ էր այն պատմական սիտուացիան, որի առաջ կանգնած էր գերմանական սոցիալ-դեմոկրատիան:

Ո՛չ ամեն դատավճիռներ չի արձակում այժմ գերմանական մարքսիստների հասցեին։ Բայց արդյոք շա՞տ կան այն տեսակները, որոնք իրավունք ունեն հանգիստ խղճով քար նետելու գերմանական կուսակցության վրա։ Դժբախտաբար շատ քիչ, իսկ այդ քչերն էլ պարտավոր են կտրելուց առաջ տասը անգամ չափել և մի անգամ կտրել» (Երկեր, Երևան, 1957, հատ. 2, էջ 370)։

Այնուհետև Շահումյանը նշում է, որ դեռևս պատերազմի սկզբից հայտնի էր, որ Գերմանիայի ռայխստագի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի մեջ կա մի լավ «փոքրամասնություն», որի ետևը կանգնած են Ֆրանց Մերինգը, Ռոզա Լյուքսեմբուրգը և այլն։ Հետագայում հայտնի եղավ, որ կուսակցական կազմակերպությունների մեջ մեծամասնության համակրանքը Լիբկնեխտի, Մերինգի, Լյուքսեմբուրգի կողմն է։

Կանխատեսելով Գերմանիայում հեղափոխական շարժումների զարգացման ընթացքը Ստ. Շահումյանը խոր հավատով եզրակացնում էր, որ Գերմանիայում պատասխանատու բանվորական կազմակերպությունների ընտրած ճանապարհը հավանորեն պետք է առաջ բերի այդ երկրում խոշոր պրոլետարական շարժումը, որի առաջին զոհը կարող է լինել Վիլհելմը։

Այդպես էլ եղավ։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո հեղափոխական շարժումները նոր վերելք ապրեցին նաև Գերմանիայում, տապալվեցին հոհենցոլերների կայսրությունը և Վիլհելմ կայսրը, որի դեմ պայքարում էին Կ. Լիբկնեխտն ու Ռ. Լյուքսեմբուրգը։

Դեռևս հոկտեմբերի նախօրյակին, երբ Լիբկնեխտը գտնվում էր գերմանական բանտում, Ա. Մյասնիկյանը գրում էր. «Բոլոր երկրների սոցիալիստները պետք է հետևեն Կարլ Լիբկնեխտի օրինակին, որը դատապարտված է տաժանակրության, այն բանի համար, որ ազնվորեն պայքարել է Վիլհելմի և գերմանական կապիտալիստների դեմ» (Ընտիր երկեր, Երևան, 1957, էջ 149)։

Կ. Լիբկնեխտի և Ռոզա Լյուքսեմբուրգի գազանային սպանության լուրը մեծ վիշտ ու զայրույթ առաջացրեց ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության շրջանում։ Այն լայն արձագանք գտավ նաև հայ բոլշևիկյան մամուլի էջերում, ուր նշվում էին Լիբկնեխտի և Լյուքսեմբուրգի ծառայությունները նաև հայ ժողովրդին։

Մեծ հոկտեմբերի, սովետական կարգերի հաղթանակից հետո ինչպես մեր երկրի բոլոր ժողովուրդները, այնպես էլ Հայաստանի աշխատավորները հավերժացրին սոցիալիզմի անխոնջ մարտիկներ Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի անմահ հիշատակը։ Նրանց ցանկությամբ բազմաթիվ բնակավայրեր, ձեռնարկություններ, դպրոցներ, ակումբներ, գրադարաններ, փողոցներ, պիոներական դրուժինաներ կոչվեցին Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի անուններով։

Կատարելով Կարլ Լիբկնեխտի ու Ռոզա Լյուքսեմբուրգի պատգամները՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության աշխատավորները ստեղծեցին Գերմանիայի պատմության մեջ առաջին բանվորա-գյուղացիական պետությունը և հասան մեծ հաջողությունների սոցիալիզմի կառուցման ճանապարհին։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԿՈՓՎԱԾՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ա. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի և Երևանի քաղկոմի Երևանի քաղլուսատան վարիչ

*ՍՄԿԿ XXIV համագումարը խոշոր իրադարձություն էր կոմունիստական կուսակցության ու սովետական ժողովրդի կյանքում։ Այն ի մի բերեց վերջին հնգամյակում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերված նվաճումները, մշակեց մեր երկրի հետագա առաջընթացի կոնկրետ ծրագիրը։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի կատարումը նոր, խոշոր քայլ կլինի կոմունիզմի կառուցման, աշխատավոր մարդկանց բարեկեցության է՛լ ավելի բարձրացման, սովետական հայրենիքի հզորության ամրապնդման ճանապարհին։*

*Համագումարը նշեց, որ այդ գործում որոշակի դեր է խաղալու նաև մեր կուսակցության գաղափարական, պրոպագանդիստական աշխատանքը։ Առանց կոմունիստների գաղափարական մակարդակի սիստեմատիկ բարձրացման, լայն մասսաների կոմունիստական դաստիարակության ու նրանց քաղաքական և աշխատանքային ակտիվության զարգացման անհնար կլինի կոմունիզմի կառուցման բարդ ու դժվարին խնդիրների իրականացումը։*

*Կոմունիստների ամենօրյա գաղափարական աճի նկատմամբ ՍՄԿԿ անսահման հոգատարությունն արտահայտվում է մեր կուսակցության ծրագրային հետևյալ դրույթով՝ որքան բարձր է կոմունիստների գաղափարական կոփվածությունը, այնքան ավելի արդյունավետ է նրանց արգասավոր աշխատանքը հանուն սովետական ժողովրդի բարօրության։ «Ընթանալով լենինյան ուղիով,— ասել է Լ. Ի. Բրեժնևը Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում,— կուսակցությունը ձգտում է, որպեսզի բոլոր կոմունիստները գիտակցորեն յուրացնեն մարքսիզմ-լենինիզմի հիմունքները, որ նրանց գաղափարայնությունն իր արտահայտությունը գտնի կոմունիստական շինարարության հասարակական գործին պրակտիկ մասնակցության մեջ»։*

*Արդի ժամանակաշրջանում պրոպագանդիստական աշխատանքի մակարդակի բարձրացման անհրաժեշտությունը պայմանավորված է, մի կողմից՝ սովետական ժողովրդի կուլտուրական ու հոգևոր պահանջմունքների մեծաց-*

մամբ՝ հիմնված ողջ երկրի գիտա-տեխնիկական, տնտեսական և սոցիալական վերափոխումների վրա, մյուս կողմից՝ համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի քաղաքական, գաղափարական պայքարի սրմամբ։

Կուսակցության գաղափարական աշխատանքի կարևորագույն օղակը քաղաքական ուսուցման սիստեմն է, որը դարձել է կոմունիստների ու անկուսակցական ակտիվի ամենամասսայական համալսարանը։ Այն կոչված է օգնելու կոմունիստների ու կոմերիտականների դասակարգային ինքնագիտակցության բարձրացմանը, քաղաքական հասունության աճին, բուրժուական գաղափարախոսության նկատմամբ նրանց անհաշտելիության ոգով դաստիարակելուն։

Անցյալ ուսումնական տարիների արդյունքները լիովին հաստատեցին, որ ներկայումս գործող կուսուսուցման նոր սիստեմը (1965—1966 ուս. տարուց) հնարավորություն է ընձեռում հետևողականորեն ու խորությամբ ուսումնասիրելու մարքսիզմ-լենինիզմը, մեր կուսակցության հարուստ պատմությունը։

Ներկա ուսումնական տարում կուսուսուցման տարրական քաղդպրոցներում 12.218 մարդ ուսումնասիրում են Վ. Ի. Լենինի կենսագրությունը, քաղաքական և տնտեսական գիտելիքների հիմունքները, միջին օղակում՝ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցում, 50.860 ունկնդիրներ զբաղվում են ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության և գիտական կոմունիզմի ուսումնասիրմամբ։ Բարձրագույն օղակում՝ տեսական սեմինարներում, կուսակցական-սովետական ակտիվի դպրոցներում, ՍՄԿԿ Կենտկոմին կից հեռակա բարձրագույն դպրոցում և մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում 59.256 մարդ ուսումնասիրում են մարքս-լենինյան տեսության հիմնական պրոբլեմները։

1970—1971 ուսումնական տարում կուսակցական ուսուցման սիստեմում հատուկ ուշադրություն է նվիրվում կադրերի և բոլոր կոմունիստների ընդհանուր տեսական պատրաստականության բարձրացմանը։ Դրան նպաստում է գիտական կոմունիզմի պրոբլեմների և ՍՄԿԿ Կենտկոմի վերջին կարևորագույն փաստաթղթերի ուսումնասիրությունը։

Կուսակցական ուսուցման սիստեմի բոլոր օղակներն իրենց առաջին պարապմունքները նվիրել են Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևի զեկուցմանը։ Տեսական սեմինարներում ուսումնասիրվում են այնպիսի թեմաներ, ինչպիսիք են՝ «Գիտական կոմունիզմի հրատապ պրոբլեմները», «Լենինիզմը և համաշխարհային հեղափոխական պրոցեսը», «Մարքսիզմ-լենինիզմն ուսմունք է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և արդիականության վերաբերյալ», «Դասակարգային պայքարը ժամանակակից պետական մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում» և այլն։

Քաղաքական ուսուցման ընթացիկ տարվա առանձնահատկություններից մեկն այն է, որ ուսումնական ծրագրերում հատուկ տեղ է հատկացվել տնտեսագիտական պրոբլեմների ուսումնասիրմանը։ Տարրական քաղդպրոցների ուսումնական ծրագրում մտցված է նոր առարկա (տնտեսական գիտելիքների հիմունքները), որի ուսումնասիրման տևողությունը երկու տարի է։ Տարրական քաղդպրոցի ունկնդիրներն այդ ծրագրին կանցնեն Վ. Ի. Լենինի կենսագրությունը և քաղաքական գիտելիքների հիմունքների դասընթացի



ուսումնասիրությունն ավարտելուց հետո։ Տնտեսական գիտելիքների հիմունքների ծրագիրը տպագրվել է՝ «Экономическая газета»-ում, թարգմանվել է հայերեն և ուղարկվել հանրապետության բոլոր քաղկոմ-շրջկոմներին։ Քաղդպրոցների պարապմունքների նյութերը տպագրվում են հանրապետության «Ժողովրդական տնտեսություն» ամսագրում և «Պրոպագանդիստի ու ագիտատորի բլոկնոտի» էջերում։

Կուսուսուցման միջին օղակում մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցները մարտ ամսից սկսել են ուսումնասիրել ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պրոբլեմները, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյակի վերաբերյալ XXIV համագումարի դիրեկտիվները, որոնց ուսումնասիրությանը, համաձայն ուսումնական ծրագրի, նվիրվում է վեց հատուկ պարապմունք։

Կուսուսուցման բարձր օղակի՝ տեսական սեմինարների, ծրագրում ներառվում են հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը, գիտատեխնիկական առաջադիմությանը, էկոնոմիկայի գիտական կառավարմանը, սոցիալիստական տնտեսավարության սկզբունքներին, աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպմանը վերաբերող պրոբլեմները։

Հայաստանի կոմկուսի քաղկոմների և շրջկոմների կուսակտիվի դպրոցների, մարքսիզմ-լենինիզմի համալսարանների ծրագրով նախատեսված է նոր՝ 32-ժամյա դասընթաց՝ «ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը արդի էտապում»։ Տեսական սեմինարների օրինակելի թեմատիկան տպագրվել է հայերեն և ուղարկվել քաղկոմներին ու շրջկոմներին։ Այդ թեմային վերաբերող նյութերը հրապարակվում են «Политическое самообразование», «Вопросы экономики», «Плановое хозяйство» ամսագրերում։ ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ, պրոպագանդիստներին և քաղուսուցման սիստեմի ունկնդիրներին օգնելու նպատակով, «Լենինյան ուղիով» ամսագիրը հրապարակում է հատուկ հավելված՝ նվիրված տնտեսագիտության պրոբլեմներին։ 1970—1971 ուսումնական տարում զգալիորեն աճել է հետաքրքրությունը դեպի տնտեսական գիտելիքները։ Դրա վկայությունն է այն փաստը, որ այժմ միայն տարրական օղակում 294 քաղդպրոցների 5611 ունկնդիրներ ուսումնասիրում են տնտեսական գիտելիքների հիմունքները։

Տնտեսական գիտելիքների ուսումնասիրումն առավել դրական արդյունք կտա, եթե մենք ամեն կերպ ջանանք բարձրացնել պարապմունքների արդյունավետությունը և ներգործունությունը։ Դրա համար անհրաժեշտ է, բացի դասախոսություններից, սեմինարներից, տեսական կոնֆերանսներից, մեծ ուշադրություն նվիրել ունկնդիրների կողմից պրակտիկ առաջադրանքների կատարմանը, ռեֆերատների, զեկուցումների պատրաստմանը։ Հարկավոր է հասնել այն բանին, որ տնտեսական գիտելիքները ոչ միայն օգնեն աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, այլև բարձրացնեն նրանց աշխատանքային և քաղաքական ակտիվությունը։

ՍՄԿԿ XXIV համագումարից անմիջապես հետո, ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես էլ Հայաստանի կուսկազմակերպության քաղաքական ուսուցման բոլոր օղակներում սկսել են բազմակողմանի և խոր ուսումնասիրել նրա նյութերը։ ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի ուսումնասիրությունն ու պրոպագանդումը երկարատև աշխատանք է պահանջում,

առաջիկա տարիներին դրանք դրվելու են կուսկազմակերպությունների դաստիարակչական գործունեության հիմքում։ Այդ գործը պետք է տարվի սիստեմատիկ և բարձր մակարդակով, ընդգրկի բոլոր կոմունիստներին և անկուսակցական ակտիվին, մոբիլիզացնի հանրապետության ողջ աշխատավորությանը՝ իններորդ հնգամյակի քաղաքական ու ժողովրդա-տնտեսական խնդիրները կենսագործելու համար։

Մինչև ուսումնական տարվա վերջը քաղաքական ուսուցման բոլոր օղակներում պետք է կազմակերպել ՍՄԿԿ XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման, իններորդ հնգամյակի մասին համագումարի դիրեկտիվների, որոշումների և նյութերի խոր ուսումնասիրությունը։ Տարրական քաղդպրոցներում, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում և կոմերիտական ուսուցման օղակներում պետք է անցկացնել 4—5 պարապմունք՝ նվիրված XXIV համագումարի նյութերին։ Քաղաքական ուսուցման բարձր օղակում՝ մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում, կուսակցական-տնտեսական ակտիվի շրջանային և քաղաքային դպրոցներում ու տեսական սեմինարներում անհրաժեշտ է կազմակերպել դասախոսություններ և անցկացնել 2—3 հատուկ պարապմունք։ Նպատակահարմար է XXIV համագումարի նյութերն ուսումնասիրել միասնական ծրագրի սահմաններում և ավարտել «ՍՄԿԿ արտաքին քաղաքականությունը համագումարից համագումար» թեմայով։

Համագումարի նյութերի ուսումնասիրությունը կազմակերպված է նաև պրոպագանդայի այնպիսի մասսայական ձևերում, ինչպիսիք են՝ ժողովրդական համալսարանները, կոմունիստական աշխատանքի դպրոցները, լեկտորիումները և այլն, որտեղ ընդգրկված է 52.584 մարդ։ Այստեղ առավել ևս պետք է հաշվի առնել ունկնդիրների հետաքրքրասիրություններն ու պահանջները։

ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի ուսումնասիրությունն ավելի լավ կազմակերպելու նպատակով՝ բոլոր քաղկոմ-շրջկոմներում անց են կացվում պրոպագանդիստների սեմինարներ, որտեղ հանդես են գալիս համագումարի պատգամավորներ, տնտեսական ղեկավար աշխատողներ, անվանի գիտնականներ։ Մի շարք քաղկոմ-շրջկոմների քաղլուսկաբինետներ մեթոդական խորհուրդներ են մշակել ծրագրով նախատեսված թեմաների վերաբերյալ, պրոպագանդիստներին ուղարկել նյութեր՝ ընթացիկ հնգամյակում ՍՍՀՄ, Հայկական ՍՍՀ, իրենց քաղաքի ու շրջանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման մասին, կազմակերպել ցուցահանդեսներ, անհրաժեշտ գրականության ցուցափեղկեր և այլն։

Այժմ, երբ կուսակցական լուսավորության ցանցի բոլոր օղակները ձեռնամուխ են եղել ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի ուսումնասիրությանը, կուսկազմակերպություններն իրենց գլխավոր ուշադրությունը նվիրում են քաղաքական ուսուցման գլխավոր հարցի՝ գաղափարական մակարդակի, նրա արդյունավետության բարձրացման վրա։

Փորձը ցույց է տվել, որ այնտեղ, ուր կուսկոմիտեները մասսաների քաղաքական դաստիարակությունն ու կոմունիստների քաղաքական ուսուցումը համարում են իրենց առաջնահերթ խնդիրը, ակնհայտ են հաջողությունները։ Լենինականում, Դիլիջանում, Թումանյանում, Ստեփանավանում, Սպիտակում կուսակցական, սովետական, տնտեսական գրեթե բոլոր ղեկավար



աշխատողները պրոպագանդիստներ են։ Հենց միայն այդ փաստը մեծ չափով բարձրացնում է աշխատավորների գաղափարական դաստիարակության նշանակությունն ու պատասխանատվությունը։

Քաղաքական ուսուցման մակարդակի բարձրացման գործում զգալի դեր են կատարում պրոպագանդիստներին ցույց տրվող մեթոդական օգնությունը, դիդակտիկ նյութերի օգտագործումը և պարապմունքների բազմակողմանի նախապատրաստումն ու անցկացումը։ Այս տեսակետից ուսանելի է Լենինականի կուսկազմակերպության փորձը։ Այս ուսումնական տարում Լենինականի քաղկոմի քաղլուսկաբինետը բոլոր պրոպագանդիստներին ապահովել է ծրագրերով ու դասագրքերով, ստեղծել պրոպագանդիստի անկյուն, ուր կենտրոնացրել է ուսումնական տարվա համար պրոպագանդիստներին անհրաժեշտ բոլոր նյութերը, ինչպես նաև այդ առթիվ միութենական ու հանրապետական ամսագրերում զետեղված հոդվածները, հանձնարարվող գրականության ցանկը, պարապմունքների օրացուցային պլանները։ Այստեղ կան նաև քաղաքի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացմանը վերաբերող թվեր ու փաստեր, արտադրության առաջավորների ու լավագույն պրոպագանդիստների փորձը պատմող և առանձին դասախոսությունների ձայնագրումներ, դիաֆիլմերի քարտացանկ, թերթեր, ամսագրեր և այլն։ Քաղլուսկաբինետը դարձել է կուսակցական պրոպագանդայի գիտամեթոդական կենտրոն, պրոպագանդիստների մշտական ու խելացի խորհրդատու։

Լենինականի հիմնարկությունների ու ձեռնարկությունների բոլոր հարմարավետ սենյակներն ու կարմիր անկյունները հատկացվել են քաղուսուցման սիստեմին։ Պատերին փակցված են քարտեզներ և դիդակտիկ նյութեր։ Նման օրինակներ կարելի է բերել նաև մյուս կուսկազմակերպությունների պրակտիկայից։

Քաղուսուցման հաջողության, նրա արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից մեկը ուսուցման նկատմամբ հետաքրքրասիրություն առաջացնելն է, որը, առաջին հերթին, կախված է պրոպագանդիստից։ Թեման շարադրելիս նա պետք է կարողանա ունկնդրին ցույց տալ ուսումնասիրվող նյութի նոր կողմերն ու երանգները։ Եթե պրոպագանդիստը կարողանա հետաքրքրել ունկնդրին, վերջինիս մոտ մեծ պահանջ կառաջանա քաղուսուցման հանդեպ։

Պրոպագանդիստները պետք է մարքս-լենինյան տեսության հիման վրա ո՛չ միայն բացահայտեն ՍՄԿԿ և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության էությունը, ունկնդիրների ուշադրությունը սևեռեն օրվա կարևոր պրոբլեմների վրա, այլև կարողանան ստեղծել այնպիսի հասարակական կարծիք, որի ներգործությամբ զարգանան ու հարատևեն մեր կյանքի բոլոր դրական երևույթները, իսկ բացասականները՝ խամրեն ու ոչնչանան։

Ինչպես ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի պրոպագանդման, այնպես էլ ամբողջ պրոպագանդիստական աշխատանքի հաջողությունը շատ բանով պայմանավորված է նրանով, թե կուսկազմակերպություններն ինչպես են զբաղվում ղեկավար կադրերի քաղաքական ուսուցման հարցով, ինչքանով են կարողանում նրանց անմիջականորեն ընդգրկել պրոպագանդիստական գործունեության մեջ։

Հաշվի առնելով միութենական մամուլի էջերում ՀԿԿ մի շարք կազմա-

կերպությունների հասցեին արված դիտողությունները՝ այս ուսումնական տարում կուսկազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում ղեկավար կադրերի և ինտելիգենցիայի քաղուսուցմանը։ Կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին կից գործում են կուսակցական և տնտեսական ակտիվի դպրոցներ։ Հանրապետության կազմակերպություններում ու ձեռնարկություններում ստեղծվել են տեսական սեմինարներ։ Զգալի չափով ավելացել է մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում, ՍՄԿԿ Կենտկոմին կից կուսակցական բարձրագույն հեռակա դպրոցում ընդգրկված ղեկավար աշխատողների թիվը։ ՀԿԿ Կենտկոմին կից գործում է հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական և կոմերիտական աշխատողների տեսական հատուկ սեմինար, որտեղ ուսումնասիրում են կոմունիստական շինարարության կառավարման կատարելագործման պրոբլեմները։ Սեմինարներում զեկուցումներով և դասախոսություններով հանդես են գալիս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամները, հանրապետության ու երկրի անվանի գիտնականները։ Մինիստրություններում և գերատեսչություններում ստեղծված շատ սեմինարներ գլխավորում են անձամբ դրանց ղեկավարները։

Գիտական ինտելիգենցիայի համար այս ուսումնական տարում ստեղծվել են մեթոդոլոգիական նոր սեմինարներ, որտեղ ուսումնասիրում են գիտության տարբեր ճյուղերի փիլիսոփայական պրոբլեմները, իսկ ստեղծագործական ինտելիգենցիայի համար կազմակերպված սեմինարների նյութը մարքսիզմ-լենինիզմի, գրականության և արվեստի զարգացման սկզբունքների, երկու համաշխարհային սիստեմների գաղափարական պայքարի պրոբլեմներն են։

Պետք է ընդգծել, սակայն, որ ղեկավար կադրերի և ինտելիգենցիայի քաղաքական ուսուցման կազմակերպման գործում դեռևս կան լուրջ թերություններ։ Ղեկավար կադրերի քաղաքային ու շրջանային դպրոցները, մինիստրությունների ու գերատեսչությունների տեսական սեմինարները գործում են անբավարար։ Անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում մարքսիզմ-լենինիզմի համալսարանների՝ որպես ղեկավար կադրերի և ինտելիգենցիայի քաղաքական պատրաստման կարևոր օջախներից մեկի, գործունեության վրա։ Երևան քաղաքի շրջկոմներն անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանի, հատկապես կուսակցական-տնտեսական ակտիվի ֆակուլտետի կոմպլեկտավորմանը։

Սովետական Միության կոմկուսի Կենտկոմը խնդիր է դրել, որ յուրաքանչյուր կուսակցական, տնտեսական, կոմերիտական, արհմիութենական ղեկավար աշխատող և մասնագետ ուսումնասիրի կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցի կամ մարքսիզմ-լենինիզմի համալսարանի ծրագիրը։ Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել քաղաքական ուսուցման այդ կարևոր օղակի մակարդակի բարձրացման վրա և մտածել նաև Կիրովականում ու մի քանի այլ խոշոր կազմակերպություններում մարքսիզմ-լենինիզմի համալսարան ստեղծելու մասին։

Ինչպես միշտ, առավել ևս այժմ կուսակցական և կոմերիտական ուսուցման սիստեմի գաղափարական-քաղաքական բարձր որակը, առաջին հերթին, պայմանավորված է պրոպագանդիստական կադրերի տեսական-մեթոդական պատրաստականության մակարդակով և ճիշտ ընտրությամբ։ Այդ առիթով Վ. Ի. Լենինն ասել է. «Ոչ մի վերահսկողություն, ոչ մի ծրագիր



և այլն բացարձակապես ի վիճակի չեն փոփոխելու պարապմունքների այն ուղղությունը, որ որոշվում է դասախոսների կազմով» (Երկեր, հ. 15, էջ 588)։ 1970—1971 ուսումնական տարում կուսակցական և կոմերիտական ուսուցման սիստեմում կան ավելի քան 8 հազար պրոպագանդիստ, որոնց 95 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, իսկ ավելի քան 50 տոկոսը՝ 10 տարուց ավելի փորձ։

Պրոպագանդիստական աշխատանքում ընդգրկված են առավել շատ մասնագետներ՝ տնտեսագետներ, ինժեներներ, ինչպես նաև՝ կուսակցական-տնտեսական ղեկավար աշխատողներ։ Պրոպագանդիստների այդպիսի կազմը հույս է ներշնչում, որ մեթոդական լավ պատրաստականության դեպքում նրանք լիովին հնարավորություն կունենան ապահովելու պարապմունքների գաղափարական բարձր մակարդակը։

Պրոպագանդիստի գործը դյուրին չէ։ Այն պահանջում է ո՛չ միայն գիտելիքներ և ընդունակություններ, այլև շատ ժամանակ ու համառություն, հոգեկան ու նյարդային լարվածություն։ Դրա համար հարկավոր է անհրաժեշտ պայմաններ ստեղծել պրոպագանդիստների ստեղծագործական աշխատանքի համար, չծանրաբեռնել հասարակական այլ հանձնարարություններով, նրանց ուշադրությունը կենտրոնացնել կուսակցական պրոպագանդայի արվեստի խոր տիրապետման վրա։

Գյուղի պատասխանատու կազմակերպիչների Համառուսաստանյան II խորհրդակցությունում Վ. Ի. Լենինն ասել է. «Դուք պետք է հաստատապես հիշեք, որ դուք ո՛չ միայն պրոպագանդիստ-ագիտատոր եք, այլ որ դուք պետական իշխանության ներկայացուցիչներ եք» (Երկեր, հ. 31, էջ 210)։ Կոմունիստական կուսակցությունը որպես կառավարող կուսակցություն պետք է ղեկավարի միլիոնավոր մարդկանց գործունեությունը։ Մասսաներին ղեկավարելու գործում իրենց պատվավոր տեղն ունեն պրոպագանդիստները։ Վ. Ի. Լենինը նրանց խնդիրն էր համարում լինել ո՛չ միայն խոսքի պրոպականդիստներ, այլև՝ կազմակերպիչներ։ Նրանք, ովքեր հակադրում են պրոպագանդիստական և կազմակերպական գործունեությունը, չեն ըմբռնում կուսակցական աշխատանքում լենինյան ոճի այբուբենը։ Գաղափարական ոլորտի աշխատողը՝ պրոպագանդիստը, մասսաների քաղաքական կազմակերպիչն է, իսկ մյուս կողմից՝ ամեն մի կազմակերպական աշխատանքի հիմնական մեթոդը մարդկանց համոզելն ու դաստիարակելն է։

Դեռևս մեր կուսակցության ստեղծման ու ամրապնդման տարիներին, հաշվի առնելով կուսակցության համար կայուն սկզբունքային, ընդունակ պրոպագանդիստներ ունենալու կարևոր նշանակությունը, Վ. Ի. Լենինը պահանջում էր նրանց նկատմամբ ցուցաբերել առանձնահատուկ հոգատարություն։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հետևողականորեն կենսագործելով լենինյան այդ ցուցումը, ամեն կերպ խրախուսում է լավագույն պրոպագանդիստներին, կազմակերպում նրանց ուսուցումը։ Լենինյան հոբելյանական օրերին հանրապետության ավելի քան 400 պրոպագանդիստներ «Հայաստանի պրոպագանդիստ» տուրիստական գնացքով մեկնեցին լենինյան վայրերը։ Վերջին 10 տարում փորձի փոխանակման նպատակով 100 պրոպագանդիստներ եղել են երկրի շատ քաղաքներում։ 1968 թ. մայիսի 7-ին տեղի ունեցավ Հայաստանի պրոպագանդիստների առաջին համագումարը։ 100 պատգամավոր պարգևատրվեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով։ Պրոպագանդիստների հանրապետական սովետի որոշմամբ ամեն

տարի քաղլուստան պատվոտախտակին են բարձրացվում հանրապետության 40 լավագույն պրոպագանդիստների լուսանկարները, նրանց աշխատանքի փորձի մասին հրատարակվում են բյուլետեններ, պլակատներ և այլն։

ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի պրոպագանդումը հաջող կազմակերպելու համար հարկավոր է է՛լ ավելի բարելավել պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը։ Հանրապետության կուսկազմակերպությունները այս տարի այդ ասպարեզում կուտակել են որոշակի դրական փորձ։ Ուսումնական տարվա ընթացքում արդեն անց են կացվել պրոպագանդիստների հանրապետական և շրջանային սեմինարներ։ Այս գործում քաղկոմ-շրջկոմներին մեծ օգնություն են ցույց տալիս բուհական կուսկազմակերպությունները, հատկապես պետական համալսարանի, պոլիտեխնիկական, գյուղատնտեսական, մանկավարժական, ֆիզկուլտուրայի և մյուս ինստիտուտների հասարակագիտության ամբիոնները։

ՀԿԿ Կենտկոմի քաղլուստունը քաղաքական ուսուցման բոլոր օղակների պրոպագանդիստների համար հեռակա ուսուցման նպատակով հրատարակում է հատուկ գրքույկներ, որտեղ զետեղված են մեթոդական նյութեր, թվերփաստեր, ընդհանրացվում է առանձին պրոպագանդիստների աշխատանքի փորձը։

Բազմակողմանի է պրոպագանդիստական աշխատանքը, այն ընդգրկում է մեր կյանքի բոլոր կողմերը։ Այժմ, երբ ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերն առաջ են բերել քաղաքական արտադրական մեծ ակտիվություն, մեր պրոպագանդիստների խնդիրն է՝ հասնել նրան, որ յուրաքանչյուր ունկնդիր քաջ գիտակցի իր պարտքը, իր դերը կոմունիզմի կառուցման գործում, որպեսզի սովետական յուրաքանչյուր քաղաքացի խոր գիտակցի, որ մեզանից ամեն մեկի լավ աշխատանքով է պայմանավորված ինչպես մեր մարդկանց նյութական բարեկեցության անշեղ վերելքը, այնպես էլ մեր մեծ հայրենիքի հարստացման ու հզորության բազմապատկումը։

Քաղաքական ուսուցման ամբողջ սիստեմը, որպես կուսակցության գաղափարական աշխատանքի կարևոր օղակներից մեկը, պետք է նպաստի կոմունիստների և ողջ աշխատավորների քաղաքական գիտակցության և աշխատանքային ակտիվության է՛լ ավելի բարձրացմանը, ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների անշեղ կենսագործմանը։





# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՆՄԻՋԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ


Մ. Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Ազիզբեկովի կուսշրջկոմի առաջին քարտուղար


Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ամենամեծ նվաճումներից մեկն արտադրության միջոցների նկատմամբ մասնավոր սեփականության վերացումն էր։ Տապալելով շահագործողական դասակարգերի տիրապետությունը՝ սովետական իշխանությունն իր առաջին դեկրետներով հողը, ընդերքի հարստությունները, բանկերը, գործարաններն ու ֆաբրիկաները հայտարարեց համաժողովրդական ունեցվածք։ Դրանով իսկ ստեղծվեց սեփականության նոր ձև՝ համաժողովրդական սոցիալիստական սեփականություն, որը դարձավ սովետական կարգերի հիմքը։

Սեփականության այդ նոր ձևը բացասում է մարդու կողմից մարդու շահագործումը։ Դա խոշոր նվաճում է մարդկային հասարակության պատմության մեջ։ Ահա թե ինչու սովետական մարդիկ հասարակական աշխատանքն ու արտադրության հանրային միջոցները դիտում են որպես երկրի հարստությունը բազմապատկելու և իրենց կենսամակարդակը բարձրացնելու հիմնական աղբյուր։ Նրանք սոցիալիստական սեփականությանը նայում են համընդհանուր շահերի դիրքերից և այն գիտակցությամբ, որ դրա պահպանումով ու բազմապատկումով են պայմանավորված ժողովրդական տնտեսության աննախադեպ վերելքը, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը։

Մյուս տնտեսական սիստեմների համեմատությամբ, սոցիալիստական հասարակարգի առավելություններից մեկն այն է, որ հասարակության անդամների ստեղծած նյութական բարիքներն ու արժեքները պատկանում են ամբողջ հասարակությանը, բաշխվում են նրանց միջև՝ ըստ աշխատանքի քանակի ու որակի սոցիալիստական սկզբունքի։ Այդ ամենը բխում է մեր երկրում սեփականության բնույթից։ Բնավ զարմանալի չէ, որ Սովետական Միության բանվորները, կոլտնտեսականներն ու ծառայողները մեծ շահագրգռվածություն են դրսևորում սոցիալիստական սեփականությունը պահպանելու և բազմապատկելու գործում։ Կոմունիստական կուսակցությունը սովետական մարդկանց դաստիարակում է հանրային ունեցվածքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, ամեն ինչ անում, որպեսզի ճիշտ զուգակցվեն անհատի և հասարակության շահերը։ Ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի հարաճուն բարձրացման համար ՍՄԿԿ և սովետական կառավարության մշակած բազմազան միջոցառումները դրանց ցայտուն փկայությունն են։

Այս ասպարեզում նշանակալից գործ են կատարել նաև Ազիզբեկովի շրջանի կուսկազմակերպությունները։ Շրջանի շատ կոլտնտեսություններում և

սովխոզներում, հիմնարկություններում ու ձեռնարկություններում ամուր հիմքերի վրա է գտնվում աշխատանքային ու պետական կարգապահությունը, սրբորեն է պահպանվում սոցիալիստական սեփականությունը, կոլեկտիվի անդամները շահագրգռված են հանրային ունեցվածքի բազմապատկմամբ։

Ագիզբեկովի էլցանցի, էլեկտրապարատուրաների գործարանի մասնաճյուղի կոլեկտիվներն ամեն տարի հսկայական չափերի հասնող էլեկտրաէներգիա են խնայում։ Տնտեսությունը հաշվենկատ վարելու շնորհիվ օգուտով են աշխատում Ջերմուկի ավտոտրանսպորտային ձեռնարկությունը, կենցաղ-սպասարկման կոմբինատը, Մարտիրոսի սովխոզը և այլ կազմակերպություններ։ Այդ և ուրիշ շատ տնտեսություններում աչքի լույսի պես է պահպանվում սոցիալիստական սեփականությունը։ Դայլախլուի, Գնդևազի և Փոռի կոլտնտեսություններում տարիներ շարունակ չի արձանագրվել հանրային ունեցվածքին ձեռք մեկնելու որևէ դեպք։

Սակայն, պետք է ընդունել, որ սոցիալիստական հասարակարգում առանձին անհատների հոգևոր ոլորտում դեռևս չեն հաղթահարված հնի մնացուկները։ Ոմանք սոցիալիստական սեփականությանը նայում են իրենց անձնական նեղ շահերի դիրքերից, դրսևորում մանր-բուրժուական, գռփողական տրամադրություններ, ձեռք մեկնում հանրային ունեցվածքին։ Այդ կարգի երևույթներ նկատվել են նաև մեր շրջանում։ Ջերմուկի շինտրեստի ավտոգրասենյակում, օրինակ, թույլ են տրվել ֆինանսական կարգապահության կոպիտ խախտումներ, արձանագրվել են 4.500 ռուբլու պետական միջոցների հափշտակման, ինչպես նաև հսկայական գումարի հավելագրման փաստեր։ Միայն աշխատավարձի գերածախսը մեկ տարում կազմել է 44.800 ռուբլի։ Տրեստի ղեկավարության (նախկին կառավարիչ՝ Պ. Պետրոսյան) թողտվությամբ ավտոգրասենյակի ղեկավարները շռայլել են պետական միջոցները։ Նրանք իրենց մերձավոր բարեկամների երեխաներին, որոնք սովորում էին դպրոցում, հրամանագրել են որպես հավաքող բանվորներ և անօրինական աշխատավարձ վճարել։ Հարկ եղավ կազմել հանձնաժողով և ուսումնասիրել ավտոգրասենյակի գործերը։ Կուսշրջկոմի բյուրոն քննարկեց ստուգման արդյունքները և գործը հանձնեց դատաքննչական մարմիններին։ Վերջիններս մեղավորներին ենթարկեցին պատասխանատվության։ Հատուցվեց պետությանը հասցված նյութական վնասը։

Սոցիալիստական սեփականությունը պահպանելու վերաբերյալ իր որոշման մեջ ՍՄԿԿ Կենտկոմը պահանջում է դատապարտել առանձին կոլեկտիվներում ստեղծված անտարբերությունը, հանդուրժողականության և ներողամտության մթնոլորտը շռայլումների, զեղծարարության, հափշտակության և նյութական արժեքների փչացման մեջ մեղավորների նկատմամբ։ Որովհետև, ինչպես զգուշացնում է ՍՄԿԿ Կենտկոմը, անտարբերությունը, աշխատանքի սոցիալիստական կարգապահության խախտումները կասեցնում են տնտեսական զարգացման տեմպերը, դժվարացնում ժողովրդի կյանքի հետագա բարելավման բազմաթիվ կարևոր խնդիրների լուծումը։ Սկզբնական կուսկազմակերպությունները պարտավոր են իրենց ակտիվ գործունեությամբ փակել կորուստների և հափշտակությունների բոլոր ուղիները՝ յուրաքանչյուր ձեռնարկությունում, տնտեսությունում, արտադրամասում և ճյուղում։

Մինչդեռ, շրջանի առանձին կուսկազմակերպություններ անբավարար են իրագործում իրենց այդ խնդիրը։ Դրա հետևանքով մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում թույլ է սոցիալիստական սեփականության պահպանության համար մղվող պայքարը։ Դեռ մինչև վերջերս էլ Խնձորուտի և Արտա-



վանի կոլտնտեսություններում շարունակվում էր անպատասխանատու վերաբերմունքը հանրային ունեցվածքի պահպանության նկատմամբ։ Արտավանում, օրինակ, կոլտնտեսության նախագահի, ճյուղերի վարիչների անփութության ու անպատասխանատվության հետևանքով տեղի էր ունեցել մեծ քանակությամբ խոշոր ու մանր եղջերավոր անասունների անկում։ Ընդհանուր վնասը կոլտնտեսային հաշվեկշռային արժեքով կազմում էր 10.175 ռուբլի։ Թույլ տված հանցանքի համար ժողդատարանը կոլտնտեսության նախագահ Կ. Մակարյանին ենթարկել էր քրեական պատասխանատվության՝ մեկ տարվա ուղղիչ աշխատանքի՝ աշխատավարձի 15 տոկոսի բռնագանձումով։ Մինչդեռ, կոլտնտեսության կուսկազմակերպությունն անտեսել էր աղաղակող թերություններն ու սխալները և Կ. Մակարյանին միայն հայտարարել նկատողություն։

Կոմունիստները պետք է անձնական օրինակ ցույց տան կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման, հասարակական ունեցվածքի պահպանության գործում։ Ցավոք, մեր շարքերում դեռևս կան մարդիկ, որոնք արատավորում են կոմունիստի անունը, իրենց ցանկացած ձևով վերաբերվում սոցիալիստական սեփականությանը, դրսևորում սովետական մարդուն անհարիր տրամադրություններ։ Կուսկազմակերպությունները պարտավոր են անհանդուրժողականության մթնոլորտ ստեղծել բոլոր նրանց նկատմամբ, ովքեր թանկ չեն գնահատում հանրային արտադրության շահերը։ Սակայն մի շարք կուսկազմակերպություններ այդպես չեն վարվում։ «Ջերմուկ» հանքային ջրի գործարանի կուսկազմակերպությունը դատապարտելի դիրք էր բռնել շշերի տարայի պահեստապետ, ՍՄԿԿ անդամ Ս. Աղաբաբյանի հանդեպ և, պետությանը հասցրած 22.473 ռուբլու վնասի համար, նրան հայտարարել խիստ նկատողություն՝ գրանցելով անձնական քարտում։

Կուսշրջկոմի բյուրոն, անդրադառնալով սոցիալիստական սեփականության պահպանության հարցին, իրավացիորեն չհաստատեց ինչպես Արտավանի կոլտնտեսության, այնպես էլ «Ջերմուկ» գործարանի կուսկազմակերպությունների որոշումները և կոլտնտեսության նախկին նախագահ Կ. Մակարյանին ու պահեստապետ Ս. Աղաբաբյանին հեռացրեց ՍՄԿԿ շարքերից։ Բյուրոն աշխատանքից ազատեց նաև Խնձորուտի կոլտնտեսության նախագահ Հ. Ստեփանյանին։

Հանրային ունեցվածքի պահպանման նկատմամբ անփույթ և անպատասխանատու վերաբերմունքի, թույլ տված վատնում-յուրացումների և ֆինանսական կարգապահության խախտումների համար շրջկոմի բյուրոն կուսակցական գնահատական է տվել նաև Կապույտի սովխոզի և Ջեյթայի կոլտնտեսության կուսկազմակերպությունների գործունեությանը, դատապարտել նրանց վարքագիծը։ Ընդ որում, 1969—1970 թթ. Ջեյթայի կոլտնտեսության հարցին բյուրոն անդրադարձել է երկու անգամ ու, հանրային անասունների ապօրինի փոխանակության համար, ֆերմայի վարիչ Զ. Զաքարովին հեռացրել ՍՄԿԿ շարքերից։

Տնտեսության մեջ տեղ գտած թերությունները կարելի է վերացնել աշխատանքային, արտադրական և պետական կարգապահությունն ամրապնդելու, կադրերի ընտրության ու դաստիարակության գործը խելացիորեն կազմակերպելու միջոցով։ Կուսակցությունը պահանջում է ամենօրյա աշխատանք տանել կադրերի հետ, նրանց դաստիարակել սկզբունքայնության, իրենց պարտքի խոր գիտակցության, հանրային ունեցվածքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։ Հատկապես կարևոր է նյութական պատասխանատու անձանց ընտրությունը։ Այդ գործին պետք է կարգել այնպիսի մարդկանց՝ կոմունիստ-

ների ու անկուսակցականների, որոնք վստահություն են ներշնչում, հեղինակություն վայելում շրջապատում, հանրային ունեցվածքին վերաբերվում աղնվորեն։

Երբ հարցը քննում ենք այս առումով, ապա աչքի են զարնում մեր կազմակերպություններում գոյություն ունեցող աղաղակող թերություններ։ Շրջսպառկոոպի վարչությունն ու կուսկազմակերպությունը, օրինակ, անհրաժեշտ հետևություն չեն արել հանրային սեփականությունը պահպանելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի որոշումներից։ Նրանք խախտել են կադրերի ընտրության և տեղաբաշխման լենինյան սկզբունքը, առևտրի ցանցը չեն մաքրել նախկինում առևտրի կանոնները խախտած, վատնում-յուրացում կատարած մարդկանցից և կանգնել են ոչ-ցանկալի փաստի առջև։ Շրջսպառկոոպում նյութական խոշոր արժեքներ էին վստահվել չստուգված, նախկինում առևտրի սիստեմից հեռացված ոմն Խաչատրյանի։ Օգտվելով առևտրական այս կազմակերպության ղեկավարության բարեհոգի ու անտարբեր վերաբերմունքից՝ վերջինս ութ ամսում յուրացրել է 36 հազար ռուբլու նյութական արժեքներ։ Ընդ որում, կուսկազմակերպության (նախկին քարտուղար՝ Ս. Բաբայան), շրջսպառկոոպմիության վարչության (նախկին նախագահ՝ Ռ. Կարապետյան) անպատասխանատվությունն ու կուսակցական զգոնության բացակայությունը հասցրին այն բանին, որ առանձին աշխատողներ կարողացան թաքցնել մեծ չափերի հասնող հափշտակություն ու պակասորդ։ Դրանք հայտնաբերվեցին միայն վերադասի ստուգումների ժամանակ։

Քննարկելով այդ հարցը՝ շրջկոմի բյուրոն հիմնովին փոխեց շրջսպառկոոպի ղեկավարությանը, գործը հանձնեց դատաքննչական մարմիններին՝ մեղավորներին քրեական պատասխանատվության ենթարկելու համար։

Անտարբերությունն ու անփութությունը վնասակար երևույթներ են, որոնք կարող են դառնալ հանցագործություն ծնող պատճառներ։ Դրանց դեմ պայքարը կուսկազմակերպությունների պարտքն է։ Պետք է լավ իմանալ, թե ում է վստահվում հանրային բարիքի պահպանությունը։ Մինչդեռ Ջերմուկի քաղաքի ղեկավարները և կուսկազմակերպությունն այդպես չեն վարվել։ Նրանք արդյունաբերական ապրանքների պահեստը վստահել են թեև ՍՄԿԿ անդամ, բայց գոփողական տրամադրություններ ունեցող ինչ-որ Խ. Հովակիմյանի։ Այլ խոսքով, ինչպես ժողովրդական իմաստությունն է ասում. «Ոչխարի հոտին հովիվ են կարգել գայլին»։ Եվ ահա վայ-կոմունիստ Խ. Հովակիմյանը, իր հանցագործության հետքերը թաքցնելու նպատակով, հրդեհել է պահեստը և 51 հազար ռուբլու լրացուցիչ նյութական վնաս հասցրել պետությանը։ Այս ամենից հետո կուսկազմակերպությունը, փոխանակ վճռական խոսք ասելու հանցագործի հասցեին, իր անտարբերությանն ավելացրել է բարեհոգությունը և բավարարվել Խ. Հովակիմյանին խիստ նկատողություն անելով։

Կուսշրջկոմի բյուրոն դատապարտեց սկզբնական կուսկազմակերպության լիբերալ վերաբերմունքը, պահեստապետ Հովակիմյանին հեռացրեց ՍՄԿԿ շարքերից և նրա գործը հանձնեց դատաքննչական մարմիններին։

«Սոցիալիստական սեփականության պահպանության, չարաշահումների ու հափշտակումների վերացման գործում կուսակցական կազմակերպությունների աշխատանքն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը (1968 թ.) գործողության ուղեցույց է դարձել մեր շրջանի կուսկազմակերպությունների համար։ Այն բազմակողմանի քննարկվել է կուսշրջկոմի բյուրոյի նիստում և հեր-



թական պլենումում, ինչպես նաև սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Կուսշրջկոմը մշակել է կոմպլեքսային աշխատանքի պլան՝ հանրային ունեցվածքի վատնում-յուրացումների դեմ պայքարն ուժեղացնելու համար։

Սոցիալիստական սեփականության պահպանման գործին մեծապես նպաստեց նաև շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում «Արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակի քննարկումը։ Այն արժանացավ շրջանի բոլոր կոմունիստների, ողջ աշխատավորության ջերմ հավանությանը։ Այդ նամակով կոչ է արվում Սովետական Միության բոլոր աշխատավորներին՝ խնայողաբար օգտագործել յուրաքանչյուր մեքենան ու մեխանիզմը, հումքի, նյութերի ու վառելիքի յուրաքանչյուր գրամը, ժողովրդական յուրաքանչյուր կոպեկը։ Արծարծված այս խնդիրների կարևորությունը ելնում է Վ. Ի. Լենինի այն հիմնարար դրույթից, որ «Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքներ, որոնք հասնում են ո՛չ թե առանձնապես աշխատողներին և ո՛չ թե նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն՝ ամբողջ հասարակությանը՝ տասնյակ և հարյուր միլիոնավոր մարդկանց, որոնք սկզբում միավորվում են մեկ սոցիալիստական պետության մեջ, հետո սովետական հանրապետությունների Միության մեջ» (Երկեր, հ. 29, էջ 524)։

Շրջանի ժողովրդական տնտեսության զարգացման համար մղվող պայքարում լենինյան այս սկզբունքով իրենց ավանդն են ներդնում կոլտնտեսությունների և սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները։

Ցավոք, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տնտեսությունները հաշվենկատ վարելու, խնայողության ռեժիմ կիրառելու ասպարեզում դեռևս կան լուրջ թերություններ։ Առանձին տնտեսություններում ու ձեռնարկություններում սկզբնական կուսկազմակերպություններն այս հարցերին պատշաճ ուշադրություն չեն նվիրում։ Մինչդեռ տարիների փորձը ցույց է տվել, որ բարձր շահութաբերությունը պայմանավորված է տնտեսության հաշվենկատ վարմամբ, նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքի ստացմամբ։ Նոր հասարակարգի կառուցումն ու զարգացումը, նրա հարաճուն վերելքը ենթադրում են ո՛չ միայն աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակ, այլև խնայողության խստագույն ռեժիմի կիրառում։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը կուսկազմակերպությունների, արտադրական կոլեկտիվների պարտքն են համարում խնայողության մասին հոգ տանել ո՛չ միայն մեծ, այլև փոքր բաներում։ Անժխտելի է, որ խնայված կիլոգրամներից են գոյանում տոննաները։ Հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի առավել խնայողական ծախսումները արտադրանքի թողարկումն ավելացնելու և այն էժանացնելու խոշորագույն ռեզերվ են։ Թե՛ արդյունաբերության, թե՛ գյուղատնտեսության մեջ խնայողության ամեն մի տոկոսը դիտվում է որպես մեծ ներդրում հանրային արտադրության վերելքի գործում։ Հաշված է, որ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ, օրինակ, նյութական ռեսուրսների միայն մեկ տոկոս տնտեսումը երկրին կտա ա-

վելի քան երեք միլիարդ ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Մեր շրջանի արդյունաբերությունը, շինարարությունն ու գյուղատնտեսությունը միայն մեկ տոկոս խնայողությունից կարող են շահել 175 հազար ռուբլի։

Ահա թե ինչու կուսակցությունը պահանջում է մետաղը, հումքը, նյութերը ծախսել տեխնիկայի և տեխնոլոգիայի ժամանակակից նվաճումներին համապատասխանող նորմաներով, արմատավորել տեխնիկապես հիմնավորված նորմատիվներ։ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումում Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ արտադրանքի արտադրությունը կավելացվի ո՛չ միայն նոր կապիտալ ներդրումների և աշխատողների թվի ավելացման, այլև աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեի, յուրաքանչյուր մեքենայի ու մեխանիզմի, հումքի ու վառելիքի յուրաքանչյուր գրամի նկատմամբ հոգատար վերաբերմունքի միջոցով։ Դրանցից բխում է, որ ներդրված յուրաքանչյուր ռուբլին պետք է առավելագույն փոխհատուցում տա։

Սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած ամենօրյա և հետևողական դաստիարակչական գործունեության շնորհիվ շրջանի աշխատավորները հայտաբերում ու գործողության մեջ են դնում արտադրական նոր հնարավորություններ ու ռեզերվներ, պայքարում նյութական արժեքների խնայողության և անարտադրողական ծախսերի վերացման համար։

Շրջանի հաջողություններն առավել ծանրակշիռ կլինեն, եթե բոլոր տնտեսություններում, արտադրական կազմակերպություններում գործերը վարեին հաշվենկատորեն, վճռական պայքար մղեին խնայողության ռեժիմի կիրառման, անարտադրողական ծախսերի վերացման համար։ Բերեմ մի օրինակ. «Ջերմուկ» հանքային ջրերի գործարանում, անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծված նյութական միջոցները խնայողաբար օգտագործելու համար։ Տարիներ շարունակ արտադրանքի ընդունման և բացթողման կետերում հայտաբերվում էր մեծ չափերի հասնող պակասորդ։ Այստեղ վատ է կազմակերպված շշերի պահպանության գործը։ 1966—1968 թթ. ընթացքում, միայն շշերի նորմայից ավելի ջարդի պատճառով, գործարանը կրել է 621 հազար ռուբլու վնաս։ Ընդ որում, 130 հազարն առաջացել է գործարանի արտադրամասերում, նյութական պատասխանատու անձանց մեղքով։

Այս ամենի կողքով, իհարկե, կուսշրջկոմը չէր կարող անտարբեր անցնել։ Նրա միջամտությամբ ձեռնարկությունում որոշակի բարեփոխություններ կատարվեցին՝ նյութական պատասխանատու կադրերի նշանակման, նյութական արժեքների հաշվառման և պահպանման գործում։ Այդ ամենը տվեց դրական արդյունք, վնասները նվազեցին. 1969 թ. արձանագրվեց միայն 18 հազար ռուբլու շշերի գերնորմատիվային ջարդ։

Վերոհիշյալ հարցի կապակցությամբ հարկ եմ համարում վերստին անդրադառնալ Ջերմուկի շինարեստի ավտոգրասենյակին։ Այստեղ ընկած էր աշխատանքային կարգապահությունը, անհոգի, ոչ-պետական վերաբերմունք գոյություն ուներ մեքենաների ու մեխանիզմների նկատմամբ, միանգամայն անտեսված էր խնայողության ռեժիմի կիրառումը։ Սահմանված վազքի դեռ կեսը չկատարած՝ 10-ից ավելի ավտոմեքենա հանվել էր գործածությունից, գրասենյակն աշխատում էր վնասով։ Մինչդեռ ավտոտրանսպորտի արդյունավետ օգտագործմամբ հնարավոր կլիներ տնտեսել մեծ միջոցներ։

Կուսկազմակերպությունների ծավալած քաղաքական-դաստիարակչական աշխատանքի և դատաքննչական մարմինների արդյունավետ գործունեության շնորհիվ, մեր շրջանում աստիճանաբար նվազում են սոցիալիստական հասարակության անհարիր երևույթները, վատնում-յուրացումների դեպքերը, բարձրանում է մեր մարդկանց պատասխանատվությունը հանրային սեփականության պահպանության հանդեպ։

Սկզբնական կուսկազմակերպությունները, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, վարչական և ժողովրդական վերահսկողության մարմինները պետք է համապատասխան հետևություն անեն կուսակցության և կառավարության որոշումներից, հանրային հարստության պահպանության գործում հանդես բերեն ավելի մեծ սկզբունքայնություն, խստիվ և անշեղորեն կիրառեն սովետական օրենքները, ժամանակին բացահայտեն յուրացման և հափշտակության ամեն մի դեպք, պատասխանատվության կանչեն մեղավորներին։ Սակայն ինչպես կուսկազմակերպությունները, այնպես էլ վարչական մարմինները չպետք է սահմանափակվեն միայն պատժելով։ Նրանք պարտավոր են ծավալել դաստիարակչական բազմակողմանի գործունեություն։

ՀԿԿ XXV համագումարում Ա. Ե. Քոչինյանը Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ կուսակցության քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների պարտքը համարեց՝ «...վճռական միջոցներ ձեռնարկել կանխելու հափշտակություններն ու վատնումները, անհանդուրժողականության մթնոլորտ ստեղծել հանրային ունեցվածքի նկատմամբ ոտնձգություն կատարող անձանց շուրջը, բարձրացնել կոմունիստների պատասխանատվությունը սոցիալիստական սեփականության վիճակի համար»։

Այս պահանջները պետք է գործողության ուղեցույց դառնան մեզ համար։ Կուսկազմակերպությունների խնդիրն է պայքարել բոլոր նրանց դեմ, ովքեր թանկ չեն գնահատում արտադրության շահերն ու աշխատավորի պատիվը, անձնական շահի համար ձեռք են մեկնում պետության գրպանը։

ՍՄԿԿ XXIV համագումարը նախանշեց մեր երկրի զարգացման գլխավոր խնդիրը նոր հնգամյակում։ Դա ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքի ապահովումն է սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա։ Մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա վերելքի և բնակչության կենսամակարդակի բարձրացման շնորհիվ սովետական մարդիկ հանրային ունեցվածքին կնայեն իսկական տիրոջ աչքերով, վճռականորեն կպայքարեն այն բազմապատկելու և հարստացնելու համար։

Համագումարը կուսկազմակերպությունների պարտքը համարեց՝ ամրապնդել պետական ու աշխատանքային կարգապահությունը, բարձրացնել կադրերի անձնական պատասխանատվությունը գործի նկատմամբ, աչքի լույսի պես պահպանել հանրային սեփականությունը։ Կոմունիստները պետք է լինեն սոցիալիստական սեփականության համար մղվող պայքարի ավանգարդում, այդ գործում դրսևորեն պարտքի խոր գիտակցություն։



# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱՆՁՆԱԿԱՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

Կ. Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար

Ամեն անգամ, երբ կուսակցությունը կոմունիստական շինարարության հերթական խնդիրներն է առաջադրում, մեկ անգամ ևս ընդգծում է յուրաքանչյուր կոմունիստի անձնական պատասխանատվությունը դրանց իրականացման գործում։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1970 թ.) պլենումի որոշման մեջ այդպես էլ շարադրված է. «ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը կուսակցական կազմակերպությունների, կուսակցության ու պետության բոլոր կադրերի ուշադրությունն է հրավիրում այն բանի վրա, որ անհրաժեշտ է բարձրացնել կարգապահությունը, անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, սովետական օրենքների անշեղ պահպանման ու կատարման համար»։

Ինչպես միշտ, վերջին տարիներին ևս կուսակցության Սիսիանի շրջանային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները հետևողական աշխատանք են կատարում կոմունիստների անձնական պատասխանատվությունը բարձրացնելու համար՝ ղեկավարվելով Վ. Ի. Լենինի նշանավոր ասույթով. «Մեր խնդիրն է՝ պահպանել մեր կուսակցության ամրությունը, կայունությունն ու մաքրությունը։ Մենք պետք է աշխատենք կուսակցության անդամի կոչումն ու նշանակությունն ավելի ու ավելի բարձրացնել» (Երկեր, հատ. 6, էջ 642)։

Անցյալ տարվա մարտին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննարկեց «Սիսիանի կուսակցական կազմակերպության աշխատանքը կոմունիստների ավանգարդային դերի ապահովման գործում» հարցը և մի շարք լուրջ խնդիրներ դրեց շրջանի կուսկազմակերպության առջև։ Բյուրոյի որոշման մեջ պարզորոշ նշվում էր, որ այդ խնդիրները հնարավոր է իրականացնել բացառապես կոմունիստների ավանգարդային դերի ապահովմամբ, նրանց անձնական պատասխանատվության բարձրացմամբ։ Այդ հարցերը գործարար մթնոլորտում քննարկեցինք նաև հունիսին տեղի ունեցած կուսշրջկոմի պլենումում։ Այստեղ ևս որոշակի ընդգծվեց, որ յուրաքանչյուր կոմունիստի ավանգարդային դերի, նրա անձնական պատասխանատվության բարձրացումով է պայմանավորված շրջանի առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրների հաջող լուծումը։ Չէ՞ որ չկա արտադրության փոքր կամ մեծ բնագավառ, որտեղ կոմունիստները վճռական դեր չխաղան այս կամ այն հարցը վճռելիս։



Մեզ համար առաջնային նշանակություն ունի անասնապահական ֆերմաների կոմպլեքսային մեքենայացումը, որը բանվորական ուժի կրճատման մթերքների արտադրության ավելացման ու ինքնարժեքի իջեցման կարևոր գործոն է։ Այստեղ ևս մեծ նշանակություն ունի գյուղի կոմունիստների անձնական պատասխանատվության բարձրացումը։

Հենց այդ պատասխանատվության բարձր զգացումով էլ համակված՝ Բռնակոթի կոլտնտեսության և Աշոտավանի սովխոզի կոմունիստները հանդես եկան անասնապահական ֆերմաները կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու նախաձեռնությամբ։ Այն լավ ընդունելություն գտավ շրջանի 13 ֆերմաներում. աշոտավանցիների օրինակով տեղադրվեցին կթի ագրեգատներ, կատարվեցին կոմպլեքսային մեքենայացման լայն աշխատանքներ։

Կոմունիստների բարձր պատասխանատվության մասին է վկայում նաև այն փաստը, որ շրջանի տնտեսություններում, մսի արտադրության և անասունների գլխաքանակի ավելացման նպատակով, ծնվում են նոր նախաձեռնություններ։ Անգեղակոթի, Սպանդարյանի կոլտնտեսային, Սիսիանի, Աշոտավանի սովխոզային կուսկազմակերպությունների նախաձեռնությամբ, օրինակ, տնտեսություններում վերականգնվեցին խոզաբուծական ֆերմաները։ Այստեղ կարևորը նաև այն է, որ այդ տնտեսությունների օրինակով հնարավոր եղավ ցույց տալ մեր շրջանում խոզաբուծության արդյունավետությունը և նրա զարգացման անհրաժեշտությունը։ Այդ տնտեսությունների մարդկանց օրինակին հետևում են մյուսները. շուտով խոզաբուծական նոր ֆերմաներ կստեղծվեն Սառնակունքի սովխոզում, Բարձրավանի, Սալվարդի, Լորի կոլտնտեսություններում։

Կուսշրջկոմի պլենումը գյուղատնտեսության բնագավառի աշխատողների ուշադրությունը հրավիրեց նաև շրջանում ջրաշինարարության ծավալման վրա։ Անցյալ տարի հարվածային կառույց հայտարարվեց դեռևս 1940 թվականից սկսված 48 կիլոմետրանոց Սպանդարյան ջրանցքի երեսպատումը, որը լրիվին կավարտվի այս տարի։

Մյուս կարևոր միջոցառումը վերաբերում է կոլտնտեսություններում և սովխոզներում կերի բազայի ամրապնդմանը։ Սիսիանի պայմաններում, երբ տարեկան մթնոլորտային միջին տեղումները 360 մմ-ից չեն անցնում, բնական խոտհարքների միջոցով հնարավոր չէ լուծել հանրային հոտի կերի հարցը։ Ուստի, վերջին շրջանում խնդիր դրվեց ավելացնել ցանովի խոտաբույսերի ցանքատարածությունը՝ հասցնելով 10 հազար հեկտարի։ Միաժամանակ լրջորեն առաջ քաշվեց սիլոսի պատրաստման հարցը։ Մշակել ենք միջոցառումներ՝ սիլոսային կուլտուրաների հաշվին շրջանում հյութալի կերի արտադրությունը 25—30 հազար տոննայի հասցնելու համար։

Մեր շրջանում կապիտալ շինարարությունը հիմնականում իրականացնում են երկու շինարարական կազմակերպություններ՝ ՏաթՀԷԿի գլխային կառույցների շինվարչությունը և գյուղշին № 6 տրեստի շարժական մեքենայացված № 6 և № 20 շարասյուները։ Իր ստեղծման առաջին օրվանից ՏաթՀԷԿի շինվարչության կոլեկտիվը պատվով է կատարում պլանային առաջադրանքները։ Անցյալ տարի նրա մարդիկ ժամանակին ավարտեցին Տաթևի հիդրոկայանի № 1 թունելախորշի շինարարությունը և օգնեցին օրվա կարգավորիչ ջրամբարի շինարարներին։ Այժմ էլ շինվարչության կոլեկտիվը հերոսական աշխատանք

է կատարում Որոտանի կասկադի մյուս թունելախորշում: Մի խոսքով, նա օրինակելի է դարձել ամբողջ շրջանում: Իսկ ո՞րն է տաթևհէկցիների հաջողությունների գրավականը: Ամենից առաջ այն, որ շինվարչության 125 կոմունիստներն էլ արտադրության առաջավորներ են, նրանցից յուրաքանչյուրը ձգտում է ամուր կանգնել իր տեղամասում, որովհետև գիտի, որ գործերի վիճակի համար ինքն էլ է պատասխանատու՝ տեղամասի ղեկավարի կամ շինվարչության պետի հետ հավասար: Երբ Տաթևհէկի № 1 թունելախորշում վերջին աշխատանքներն էին կատարվում, տեղամասի պետ, երիտասարդ կոմունիստ Սերգեյ Եղյանը դադար չուներ: Նա ոչ մի րոպե չէր թողնում հրամանատարական կետը. ավելին, երբեմն փոխարինում էր լեռնային վարպետներին և նույնիսկ՝ բետոնագործներին, որի շնորհիվ այդ տեղամասում թունելի գործարկման գրաֆիկը չխախտվեց: Այժմ, երբ թունելը սնում է Տաթևի հիդրոկայանը, Եղյանը փոքրաթիվ կոլեկտիվով կատարում է չափազանց դժվարին մի աշխատանք՝ Շամբի ամբարտակի շինարարական թունելի խցանումը:

Կոմունիստ Ս. Եղյանի օրինակը Տաթևհէկի շինվարչությունում եզակի չէ: Կուսկազմակերպության քարտուղարի տեղակալ Վիկտոր Տարաշանսկին, որը շարքային թունելագործ է, ոչ միայն ստորգետնյա աշխատանքում է իրեն գերազանց դրսևորում, այլև՝ ամենուրեք: Մեծ պատասխանատվությամբ են աշխատում նաև կոմունիստ թունելագործներ Հակոբ Վարդանյանը, Ալբերտ Կլապիշչևը, Յուրիկ Նազարյանը և ուրիշներ: Նրանք գործին նայում են սրտացավությամբ, հանդես բերում սկզբունքայնություն, թերությունների նկատմամբ՝ անհանդուրժողականություն:

Բավական ուշագրավ է, որ ինչպես նշված, այնպես էլ շրջանի մի շարք այլ կուսկազմակերպություններում սովորույթ է դարձել առանձին կոմունիստների հաշվետվությունները կուսակցական ժողովներում: Բոնակոթի կոլտնտեսությունում, օրինակ, ժողովներում հաշվետվությամբ հանդես են գալիս ո՛չ միայն ճյուղերի ղեկավարները, այլև կթվորները, հովիվները, անասնապահ-բրիգադավարները, մեխանիզատորները: Այս մեթոդը լրջորեն խթանում է նաև սոցիալիստական մրցությանը, մանավանդ, որ ամեն մի հաշվետվություն զգաստացնում է մարդկանց, նրանց վրա դնում նոր պարտավորություններ: Կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու արդյունք է, որ այժմ բոնակոթցիների ձեռքում է գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջնության փոխանցիկ դրոշը, իսկ կաթի արտադրության ավելացման համար փոխանցիկն արդեն երրորդ ամիսն է, որ Բոնակոթի ֆերմայում է:

Կոմունիստների անձնական պատասխանատվության բարձրացման համար կարևոր նշանակություն ունի հետևողականությունն ու նպատակին հասնելու ձգտումը: Այդ տեսակետից հատկանշական է կուսշրջկոմի աշխատանքը Գյուղշին № 6 տրեստի կուսկազմակերպության հետ:

Երբ 1970 թ. առաջին եռամսյակում, կապիտալ շինարարության բնագավառում բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար՝ շրջանին տրվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության կառավարության և ՀՍՄԽ-ի փոխանցիկ դրոշը, շրջկոմում կար միայն մի կարծիք՝ հաջողությունների գաղտնիքը № 6 տրեստի կոմունիստների պատասխանատվության բարձրացման մեջ է: Սեղմելով հենց այդ լծակը՝ կուսակցության շրջկոմը տրեստի կոմունիստների ուշադրությունը հրավիրեց նաև մյուս չլուծված հարցերի վրա՝ դարձյալ



ընդգծելով կոմունիստների անձնական պատասխանատվության բարձրացման խնդիրը:

Արդյունքը գոհացուցիչ եղավ. հնգամյակի վերջին տարվա երրորդ եռամսյակում շրջանի շինարարները նորից նվաճեցին հանրապետության փոխանցիկը: Այդ ժամանակ գյուղշին № 6 տրեստի № 20 շարժական մեքենայացված շարասյան կոլեկտիվը կարողացավ գործարկել Երևան-Զանգեզուր ռադիոռելեային գիծը, և նոյեմբերի 29-ին Սիսիանում առաջին անգամ կայծկլտացին հեռուստատեսային էկրանները:

Կոմունիստների անձնական պատասխանատվության բարձրացման մասին խոսելիս՝ անհրաժեշտ է ամենայն սրությամբ դնել ղեկավար աշխատողի պատասխանատվության բարձրացման հարցը: Ինքնըստինքյան հասկանալի է, որ արտադրության վճռական տեղամասերում աշխատող շարքայինների համար չափազանց կարևոր է ղեկավարի անձնական օրինակը: Կադրերի նկատմամբ վստահությունն ու հարգանքը,— ընդգծել է Լ. Ի. Բրեժնևը,— անպայման պետք է զուգորդվեն նրանց նկատմամբ բարձր պահանջկոտության հետ:

Կուսակցությունը, վստահելով իր կադրերին, նրանցից պահանջում է ամենայն բարեխղճությամբ կատարել հանձնարարված գործը, բայց միաժամանակ պատժում է կուսակցական և պետական կարգապահության խախտման համար՝ անկախ գրաված դիրքից և անցյալի արժանիքներից:

Գաղտնիք չէ, որ ոչ բոլոր ղեկավար աշխատողներն են լիովին իրականացնում այս պահանջը: Կան դեպքեր, երբ առանձին ղեկավարներ կորցնում են պատասխանատվության զգացումը, չարաշահում պաշտոնական դիրքը և, ինչպես հարկն է, չեն ղեկավարում կոլեկտիվը: Ավելի վատթար վիճակի մեջ է ընկնում այն ղեկավարը, որը մեծամտանում է, անտեսում կոլեկտիվին, գործընկերներին, իրեն վերագրում չեղած արժանիքներ: Այդ ամենի հետևանքով վերջինս կտրվում է կոլեկտիվից, կորցնում վստահությունը: Այդպիսի վիճակում էր Հացավանի կոլտնտեսության նախկին նախագահ Վ. Հովակիմյանը: Հաշվի չառնելով, որ ինքը պատասխանատու է կոլտնտեսության ընդհանուր ժողովի, նրա վարչության առջև, Վ. Հովակիմյանն ինքնագլուխ սերմացու էր վաճառել: Արտելականները չներեցին նրան և ետ կանչեցին զբաղեցրած պաշտոնից:

Շատ հաճախ անձնական պատասխանատվությունը գլխավորապես պահանջվում է շարքային աշխատողներից: Սակայն, ըստ էության, հիմնականում ղեկավարների պատասխանատվության բարձրացումից է կախված ամբողջ աշխատանքի հաջողությունն ու արդյունավետությունը, և նրանց ամեն մի սխալը կարող էր լուրջ հետևանքների հանգեցնել: Այս առումով պետք է նշել, որ շրջանային կուսակցական ղեկավարությունը, հաշվի առնելով Սիսիանում Եգիպտացորենի կուլտուրայի համատարած արմատավորման անօգտավետ հետևանքները, վճռեց հիմնավորապես կիրառել ցանքաշրջանառության կանոնները և առաջնորդվել գիտության առաջավոր փորձի արդյունքներով: Համոզված ենք, որ դա կարդարացնի մեր ակնկալությունները:

Յուրաքանչյուր կոմունիստ ղեկավար պետք է իրեն հաշիվ տա, որ պատասխանատու է կուսակցության ու իր ղեկավարած կոլեկտիվի առջև, այն կուսկազմակերպության առջև, որի անդամն է, և վերջապես այն մարդկանց առջև, որոնց հետ ինքն աշխատում է: ՍՄԿԿ XXIV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ ղեկավար կադրերի գործունեության մեջ կարևորա-

գույն տեղ է գրավում մարդկանց կազմակերպումն ու դաստիարակությունը: Կուսակցությունը պահանջում է, որ ղեկավար աշխատողները մշտապես մտածեն իրենց ընդունած տնտեսական և վարչական որոշումների դաստիարակչական հետևանքների մասին:

Կուսակցությունը կադրերի կարգապահությունը և պատասխանատվության բարձրացումը դիտում է որպես մեր կարևորագույն խնդիրներից մեկը: Ընդ որում, այդ կարգապահությունը պետք է կառուցված լինի ոչ թե վախի և կոպիտ վարչարարության մեթոդների վրա, որոնք մարդկանց զրկում են վստահությունից ու նախաձեռնությունից, ծնում են ինքնապահովագրում և անազնվություն, այլ՝ մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության:

Կոմունիստի անձնական պատասխանատվության բարձրացման գործը, մեր կարծիքով, պետք է կրի սիստեմատիկ բնույթ: Այդ հարցը անհրաժեշտ է կոմունիստի առջև դնել նրան կուսակցությանն անդամագրելու հենց առաջին օրը: ՍՄԿԿ կանոնադրության պահանջները երիտասարդ կոմունիստներին պարզաբանելու հետ մեկտեղ, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է նրանց ներգրավեն ակտիվ կուսակցական կյանքի մեջ:

Մեր շրջանում կուսակցության շարքերը համալրողների հետ առանձնահատուկ աշխատանք է կատարվում: Կուսշրջկոմում գործում է երիտասարդ կոմունիստների դպրոց, որտեղ ընդգրկված են ինչպես նոր ընդունված, այնպես էլ 2—3 տարվա ստաժ ունեցող ՍՄԿԿ անդամերն ու թեկնածուները: Դպրոցի պարապմունքները բարերար ազդեցություն են ունենում երիտասարդ կոմունիստների դաստիարակության և նրանց անձնական պատասխանատվության բարձրացման վրա:

Կուսակցական ժողովը կոմունիստների քաղաքական դաստիարակության դպրոց է: Չափազանց մեծ է նրա դերը կոմունիստների անձնական պատասխանատվության բարձրացման գործում: «Յարոսլավլի քաղաքային կուսակցական կազմակերպությունում ժողովների անցկացման պրակտիկայի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է, պետք է հասնել այն բանին, որ դրանք իրոք դառնան կոմունիստների դաստիարակության դպրոց, ակտիվորեն նպաստեն նրանց քաղաքական կոփմանը, բարձրացնեն անձնական պատասխանատվությունն իրենց կազմակերպության և ամբողջությամբ վերցրած կուսակցության գործերի վիճակի համար:

Մեր շրջանի կուսկազմակերպությունների գերակշռող մասը, կարևոր նշանակություն տալով կոմունիստների պատասխանատվության բարձրացման գործում կուսժողովների դերին, լուրջ ուշադրություն է նվիրում դրանց նախապատրաստմանն ու անցկացմանը, այդ կարևոր օղակն օգտագործում տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների, դպրոցների առջև դրված խնդիրների լուծմանը: Բարձրավան գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպությունում կուսակցական ժողովները միշտ անցնում են գործարար մթնոլորտում և նպաստում կոմունիստների դաստիարակությանն ու նրանց պատասխանատվության բարձրացմանը: Այդ կազմակեպությունում, բացի տնտեսության ղեկավարներից, մյուս 21 կոմունիստները, առանց բացառության, շարքային գործ են կատարում: Գարնան ու ամռան դաշտային աշխատանքների ժամանակ ղեկավարները շարքայինների հետ հավասար աշխատում են, ոգևորում նրանց ու կազմակերպում: Այստեղ կուսակցական ժողովներում



վճռում են, թե ով ինչով պետք է զբաղվի և ինչպես կենսագործի մշակված միջոցառումը: Մի խոսքով, յուրաքանչյուր կոմունիստ ժողովից հետո արդեն գիտի իր կոնկրետ խնդիրը և ձեռնամուխ է լինում դրա լուծմանը:

Երբ Բարձրավանի կոմունիստները քննարկում էին ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները, առաջարկություն եղավ, մսի արտադրության ավելացման նպատակով, հիմնել խոզաբուծական ֆերմա: Առաջարկությունը վերլուծելուց հետո կոմունիստները միաձայն որոշեցին զբաղվել այդ եկամտաբեր ճյուղով, իսկ մի շարք կոմունիստներ ցանկություն հայտնեցին աշխատել խոզաբուծական ֆերմայում:

Բարձրավանի կոլտնտեսության օրինակը եզակի չէ: Սիսիանի շրջկենտրոնի սովխոզը, որն ընդգրկում է նաև Ուզ և Կզլչուղ գյուղերը, տարիներ շարունակ վնասով էր աշխատում: Դա խիստ մտահոգում էր կոմունիստներին: Ժողովներում, ինչպիսի հարց էլ քննարկվելիս լիներ, նրանք իրենց առջև խնդիր էին դնում պայքարել մթերքների արտադրության ավելացման համար, անտընտեսվարության ու շռայլումների դեմ: Հետևողականությունը չէր կարող արդյունք չտալ. սովխոզը 1970 թվականը փակեց 51,5 հազար ռուբլու օգուտով: Այդ հաջողության մեջ մեծ ավանդ ներդրեցին ինչպես կուսկազմակերպության քարտուղար Հ. Հարությունյանը, այնպես էլ դիրեկտոր Վ. Մարտիրոսյանը: Ավելորդ չի լինի նշել, որ այդ կազմակերպության 74 անդամներից և ոչ մեկը վերջին հինգ տարիներին կուսակցական պատասխանատվության չի ենթարկվել:

Կուսակցական ժողովներում կոմունիստների անձնական պատասխանատվության հարցերն ամենայն սրությամբ են դրվում Անգեղակոթի կոլտնտեսությունում: Այստեղ կոմունիստներն աշխատանքային սխրանքի օրինակ են տալիս, իսկ դրա համար լիցք են ստանում կուսակցական ժողովներում: Հենց գյուղի կոմունիստների ջանքերի շնորհիվ էր, որ անցյալ տարի արտելն արժանացավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության կառավարության և ՀԱՄԽ-ի հոբելյանական հուշամեդալին:

Խոսելով կուսակցական ժողովների արդյունավետության մասին՝ կապված կոմունիստի անձնական պատասխանատվության բարձրացման հետ, չենք կարող կանգ չառնել մի կարևոր հանգամանքի վրա ևս: Կուսակցական ժողովների դերը կարող է բարձրանալ միայն այն դեպքում, երբ յուրաքանչյուր ժողովի ավարտից հետո կոմունիստն զգա, որ քննարկված հարցի առթիվ ընդունվել է գործնական որոշում և այն անպայման պետք է իրականանա: Ցավոք, շատ կուսկազմակերպություններում այս հանգամանքի վրա քիչ ուշադրություն են դարձնում: Նախօրոք կազմելով որոշման նախագիծը՝ երբեմն անտեսվում են կոմունիստների առաջարկությունները և որոշումը չի արտահայտում կոմունիստների կոլեկտիվ կարծիքը: Լինում է և այնպես, որ որոշումը, թեև կոնկրետ առաջարկություններ է պարունակում, սակայն հետագայում անուշադրության է մատնվում և, հաջորդ ժողովում կամ ժողովներից մեկում լսելով դրա կատարման անհաջող ընթացքի մասին, կոմունիստները թերահավատորեն են մնում իրենց կազմակերպության նկատմամբ: Այս հանգամանքները չեն կարող բացասաբար չանդրադառնալ կոմունիստի անձնական պատասխանատվության բարձրացման վրա: Հետևաբար, որոշում ընդունելիս, պետք է ձգտել, որպեսզի այն պարունակի կոմունիստների առաջարկությունները, լինի կոնկրետ և նշվի, թե երբ է նախատեսված իրականացնել այս կամ այն միջոցառումը:

Մեր մի շարք կուսկազմակերպություններում (Տաթևհէկի շինվարչության, Ծալվարդի, Շաղաթի կոլտնտեսությունների) հետևողական աշխատանք է կատարվում որոշումների կենսագործման համար։ Եվ պատահական չէ, որ այդ կազմակերպություններում յուրաքանչյուր կոմունիստ պատասխանատվություն է զգում որոշումների համար՝ համոզված լինելով, որ սիստեմատիկաբար հաշիվ պետք է տրվի, թե ով ինչպես է մասնակցում դրանց կատարմանը։

Կուսակցության XXIV համագումարը նշանակալից իրադարձություն էր կուսկազմակերպությունների և սովետական ժողովրդի կյանքում։ Սիսիանի կոմունիստներն այն դիմավորեցին աշխատանքային ու քաղաքական վերելքի պայմաններում։ Մեր կոմունիստների պատասխանատվության բարձրացման շնորհիվ շրջանը զեկուցեց, որ համագումարի պատվին ստանձնած պարտավորությունները կատարվել են հաջողությամբ։ Նոր հնգամյակի առաջին եռամսյակի համար նախատեսված 3850-ի փոխարեն մթերակայան է ուղարկվել 5882 ցենտներ միս, որը քիչ է պակաս կիսամյա առաջադրանքից, 15400-ի փոխարեն՝ 18267 ցենտներ կաթ։ Թռչնապահները ձվի վաճառքի եռամսյա առաջադրանքը կատարել են 207 տոկոսով։ Որոշակի հաջողությունների են հասել նաև արդյունաբերական ձեռնարկությունները, ինչպես նաև Տաթևհէկի և Գյուղշին № 6 տրեստի շինարարները։

Նոր հնգամյակում լուրջ խնդիրներ են ծառացած Սիսիանի շրջանի աշխատավորների առջև։ Նախորդ հնգամյակի համեմատությամբ, մեծ չափերով կաճի արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքը, կծավալվեն շինարարական լայն աշխատանքներ։ Այդ խնդիրները հնարավոր է լուծել միայն այն դեպքում, երբ յուրաքանչյուր կոմունիստ մեծ պատասխանատվություն զգա հանձնարարված գործի նկատմամբ, երբ ամեն մի կուսկազմակերպություն, ամբողջությամբ վերցրած, պատասխանատվության զգացումով ձեռնամուխ լինի դրան, մոբիլիզացնի բոլոր ուժերն ու հնարավորությունները։ ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Լ.Ի. Բրեժնևը կուսաշխատողների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ՝ «Կադրերի աճի ու դաստիարակության, մեր ամբողջ աշխատանքի ճիշտ կազմակերպման անհրաժեշտ պայմանը ղեկավարության կոլեկտիվությունը հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության հետ զուգորդելն է։ ... Աշխատողների անձնական պատասխանատվությունը բարձրացնելու գործում կոչված է կարևոր դեր խաղալու կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման՝ լավ հիմքերի վրա դրված ստուգումը»։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՆՅՈՒԹԱՊԵՍ ԽԹԱՆԵԼ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

Ժողովրդական տնտեսությունը նոր տեխնիկայով ապահովելու գործում հատուկ դեր է խաղում մեքենաշինությունը, որովհետև այստեղ են ստեղծվում աշխատամիջոցները՝ մեքենաները, սարքավորումները, գործիքները։ Մեքենաշինության զարգացման աստիճանը շատ բանով որոշում է աշխատանքի արտադրողականության մակարդակը երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ։

Մեքենաշինության արդյունաբերության մեջ հատուկ տեղ է գրավում հաստոցաշինությունը, որի արտադրանքի աճն ու որակի բարձրացումը զգալի չափով որոշում են մեքենաշինության տեխնիկական առաջադիմությունը։

Մեքենաշինության և մետաղամշակման զարգացման վերլուծությունը ցույց է տալիս, որ հաստոցաշինական արդյունաբերությունն ըստ թողարկվող հաստոցների թվի դեռևս լրիվ չի բավարարում ժողովրդական տնտեսության պահանջները։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի դիրեկտիվներում ասված է. ընդլայնել բարձր և, հատկապես, բարձր ճշգրտության հաստոցների, ավտոմատ ու կիսավտոմատ գծերի, դարբնա-մամլակային և ձուլման սարքավորումների թողարկումը, ինչպես նաև մետաղահատ և հղկաքարային գործիքների մասնագիտացված արտադրությունը, բարձրացնել այդ գործիքների որակը։ 1975 թվականին մետաղահատ հաստոցների թողարկումը հասցնել 230—250, դարբնա-մամլակային մեքենաներինը՝ 60—65 հազարի։

Արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրը չի կարող լուծվել առանց մետաղահատ հաստոցների տեխնիկական մակարդակի բարձրացման և կառուցվածքի կատարելագործման։ Դրա համար, ամենից առաջ, անհրաժեշտ է որակյալ աշխատուժ։ Մինչդեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վերջին տարիներս հաստոցավար բանվորների քանակը չի ապահովում մետաղահատ հաստոցների և սարքավորման աճը։ Այսպես, Հայկական ՍՍՀ մեքենաշինության մեջ յուրաքանչյուր տարի հաստոցավար բանվորների թիվն աճում է 3, մինչդեռ հաստոցներինը՝ ավելի քան 5 տոկոսով։

Աշխատուժի, առաջին հերթին, որակյալ աշխատուժի պակասը կանխելու, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության աճն ապահովելու համար անհրաժեշտ է հին սարքավորումը փոխել նոր, ավելի բարձր արտադրողական սարքավորմամբ, որը հնարավորություն կընձեռի կիրառել բազմահաստոցային սպասարկում և հեշտացնել ֆիզիկական աշխատանքը։

Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում կատարված հաշվումները ցույց են տալիս հին ունիվերսալ սարքավորումը նորով փոխարինելու բարձր տնտեսական արդյունավետությունը։ Այստեղ պինոլի կոնական մակերևույթի հղկման գործողությունը կատարվում էր 1956 թվականի թողարկված «3 Ա 250» մակնիշի հաստոցով, իսկ դա չէր ապահովում անհրաժեշտ ճշգրտություն և բարձր արտադրողականություն։ Գործարանում տեղակայվեց «ԵՏ—37» մակնիշի հատուկ ներհղկող հաստոցը, որի արտադրողականությունը 25—30 տոկոսով բարձր է, քան նախորդինը, իսկ շահագործման հետ կապված տարեկան ծախսերը 2—2,5 հազար ռուբլով պակաս են։

Տեխնիկական առաջադիմության տեմպերը պահանջում են նոր սարքավորման անընդհատ կատարելագործում և արմատավորում, արտադրանքի մշտական թարմացում, տեխնոլոգիայի և դրա սպառողական հատկությունների բարելավում։ Սակայն առանձին գործարաններում հաճախ նոր տեխնիկայի արմատավորման, արտադրանքի որակի բարձրացման կամ նոր արտադրանքի յուրացման համար պահանջվում են զգալի ծախսեր, կոլեկտիվի առավել լարված ստեղծագործական աշխատանք, որոնք կապված են որոշ արտադրական ռիսկի հետ։ Բացի այդ,

այն կոլեկտիվները, որոնք մեծ ջանքեր են գործադրում իրենց արտադրանքի նորացման և որակի բարձրացման համար, միշտ չէ, որ ըստ արժանվույն են խրախուսվում։

Բերենք մի քանի օրինակներ։

Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանը շարունակում է 675 և 675Պ մակնիշների հին ունիվերսալ հաստոցների արտադրությունը, թեև երկու տարի է, ինչ Օդեսայից ստացված են 6Ա73(Պ) և 6Ա75Վ(Պ) մակնիշների նոր, բարձր ճշգրտության գամմաների ֆրեզերային հաստոցների թողարկման նախագծա-կոնստրուկտորական փաստաթղթերը։

Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում նախատեսվում էր նախագծել նոր, ավելի կատարելագործված խառատային հաստոց և դրա հիման վրա թողարկել համապատասխան գամմաների հաստոցներ։ Բայց զանազան պատճառներով հիմնային հաստոցի արտադրությունը չյուրացվեց։ Հաստոցաշինական գործարանը մինչև այժմ թողարկում է հին կոնստրուկցիայի խառատային հաստոցներ։

Դրությունը նույնն է նաև Լենինականի հղկող հաստոցների գործարանում, ուր ավելի քան տասը տարի շարունակ թողարկվում են 3Բ12 մոդելի հղկող հաստոցներ, որոնք նվազ արդյունավետ են։

Վերոհիշյալ գործարանները հին հաստոցները թողարկում են խոշոր սերիաներով, որը կոլեկտիվին հնարավորություն է տալիս հեշտությամբ կատարելու արտադրական պլանը։ Մինչդեռ արդի գիտա-տեխնիկական հեղափոխությունը հրամայաբար պահանջում է արագացնել նոր գյուտերի արմատավորումը և բարձր արտադրողականությամբ օժտված նոր հաստոցների թողարկումը։

Այդ կապակցությամբ ծագում է կենսական մի հարց. ի՞նչ պայմաններ է անհրաժեշտ ստեղծել և ինչպե՞ս շահագրգռել ձեռնարկությունների կոլեկտիվներին արտադրությունն ինտենսիվացնելու և արտադրանքի որակը բարձրացնելու գործում։ Այդ պրոբլեմի լուծումը հնարավոր է միայն այն ամբողջական կոմպլեքսային միջոցառումների հիման վրա, որոնք խարսխվում են ինչպես տնտեսական լծակների, այնպես էլ տնտեսական օրգանիզմի բոլոր օղակների (սկսած գործարանային արտադրամասից մինչև վերադաս մարմիններն ու մինիստրությունները) աշխատանքների բարելավման վրա։

Արտադրական պրոցեսների բարդացման և ինտենսիվացման կապակցությամբ հատուկ նշանակություն է ձեռք բերում տնտեսական գործոնը։ Ավելի կատարյալ մեքենաների թողարկման գործում ձեռնարկությանը շահագրգռելու համար անհրաժեշտ է կատարելագործել տնտեսական խրախուսման սիստեմը։ Այդ նպատակով ցանկալի կլիներ սահմանել այնպիսի կարգ, որի պայմաններում խրախուսման տնտեսական ֆոնդերը լրացուցիչ ավելանան այն արտադրանքի տեսակարար կշռի բարձրացման դեպքում, որն իր տեխնիկական մակարդակով և որակով կհամապատասխանի հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշներին և, ընդհակառակը, նվազեն այնպիսի արտադրանքի դեպքում, որը չի բավարարում արդի պահանջները։

Հարկավոր է նաև արագացնել գնագոյացման սիստեմի հետագա կատարելագործումը։ Պետք է գներ սահմանել, որ շահագրգռվածություն ստեղծվի նոր, ավելի կատարյալ արտադրանքի թողարկման գործում։

1967 թ. հուլիսի 1-ից գործող նոր մեծածախ գները, որոնք սահմանված են տեխնիկական առաջադիմությունը և մեքենաների որակի բարձրացումը խրախուսելու նկատառումով, որոշ չափով լուծում են այդ հարցերը։ Այսպես, գնացուցակում նախատեսված է ավելի բարձր շահավետություն՝ առավել կատարյալ արտադրանքի համար։ Օրինակ, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի արտադրած 1Մ61 մակնիշի շրջտաշ-պտուտակահատ հաստոցի (որը պատրաստված է հին տեխնիկական պայմաններում) գինը սահմանված է 1650 և 1800 ռուբլի (այն համապատասխանում է 710 մմ և 1000 մմ հաստոցի գնին)։ Նույն հաստոցի նկատմամբ, որն արտադրված է նոր տեխնիկական պայմաններում բարձրացված ճշգրտությամբ և հուսալիությամբ, արտադրված 1Մ61 մակնիշի հաստոցի մեծածախ գինը սահմանված է, համապատասխանաբար՝ 1690 և 1910 ռուբլի։ Բայց շատ կարճ ժամանակում այդ արժեքը հատուցվում է։

Մեքենաշինության մի շարք ճյուղերում նախապատրաստվում է, այսպես կոչված, սահող (սանդղավոր) գների փորձնական կիրառում։

Ինչպես հայտնի է, մեքենաների ժողովրդատնտեսական արդյունավետությունը, սկսած յուրացման ժամանակաշրջանից, բարձրանում և առավել մեծության է հասնում մասսայական թողարկման ժամանակաշրջանում և, այնուհետև, նվազում է մեքենայի բարոյական մաշվածության համեմատ։ Ուստի, անհրաժեշտ է շարժուն (սանդղավոր) մեծածախ գներ սահմանել արտադրող ձեռնարկությունների ծախսերը խըթանելու համար, դրա հետ միասին ապահովելով առաջավոր տեխնիկայի թողարկումը։

Սարքավորման բարոյական մաշվածության ժամկետների, դրանց թարմացման պարբերականության, ինչպես նաև նոր կառուցվածքի մեքենաների ժողովրդատնտեսական արդյունավետության և լրացուցիչ ծախսերի վերաբերյալ տվյալներ ունենալով, կարելի է, հավանաբար, սարքավորման առանձին խմբերի գների սիստեմ կարգել՝ սանդղավոր գների որոշակի սանդղակների ձևով, ինչպես նաև որոշել այդ ժամանակաշրջանում սանդղավոր գների մեծությունը և դրանց յուրաքանչյուրի տևականությունը։

Սանդղավոր գների կիրառումը հնարավորություն է ընձեռում հնացած արտադրանքի գներն իջեցնել և խրախուսել նոր տեխնիկայի արտադրությունն ու կիրառումը։

Թողարկվող սարքավորման արդյունավետությունն իջեցնող պատճառներից է նաև գիտահետազոտական աշխատանքների արդյունքների, արտադրության մեջ դրանց արագ ներդրման ասպարեզում ձեռնարկությունների և գիտահետազոտական կազմակերպությունների ընդհանուր շահագրգռվածության բացակայությունը։ Փորձը ցույց է տալիս, որ ամենևին էլ բավարար վիճակում չէ գիտական հիմնարկությունների հետ այժմ արդեն ընդհանուր ճանաչում գտած պայմանագրային հարաբերությունների սիստեմը։ Մի կողմից գիտա-հետազոտական ինստիտուտները պատասխանատվություն չեն կրում արմատավորվող նմուշների տնտեսական արդյունավետության և հուսալիության համար, մյուս կողմից գիտնականները չեն քաջալերվում ինստիտուտի ստեղծած և արմատավորած նոր առաջադիմության արտադրանքի համար։

Հավանաբար, անիմաստ չի լինի, եթե գործարաններին իրավունք վերապահվի իրենց հետ մշտապես համագործակցող գիտա-հետազոտական ինստիտուտներին որոշ տոկոսներ փոխանցելու այն շահույթներից, որ ստացվում են նոր տեխնիկայի մշակման ու արմատավորման շնորհիվ։ Դա գիտական կոլեկտիվներին կօգնի ամրապնդելու իրենց փորձնական և հետազոտական բազան և այդ հանգամանքը, անշուշտ, կնպաստի տեխնիկական առաջադիմությանը։

Շատ տեխնիկական պրոբլեմների հաջող լուծման համար հսկայական նշանակություն ունի գործարանային հետազոտական լաբորատորիաների գործունեությունը։ Բայց այստեղ ևս կան մի շարք չլուծված պրոբլեմներ։ Բանն այն է, որ ֆինանսավորումը սովորաբար կատարվում է առանց խորապես հաշվի առնելու գործարանի պահանջները։ Այդ հանգամանքը հնարավորություն չի տալիս նախապես նկատի ունենալ առավել հրատապ թեմաներն ու դրանց կատարողներին համապատասխան խրախուսումը։ Գիտա-հետազոտական աշխատանքների համար միջոցները միշտ պակաս են, թեև նրանց առաջադրվող պահանջները շատ բարձր են։

Ձեռնարկությունների աշխատանքում մեծ դժվարություններ են ստեղծվում որակյալ կադրերի՝ ինժեներների, տեխնիկների և բանվորների հոսունության հետևանքով։ Դրա հետ միասին ուշագրավ է այն փաստը, որ բուհերի և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների շրջանավարտների զգալի մասը գործարաններում օգտագործվում է ոչ իր մասնագիտությամբ։ Այսպես, 1971 թվականի տվյալներով, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում 129 ինժեներա-տեխնիկական աշխատողներից 50-ը ունեն բարձրագույն, իսկ 30-ը՝ թերի միջնակարգ կրթություն։ Մնացածը չունեն մասնագետի դիպլոմներ, բայց ինժեների պաշտոն են գրավում։ Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում 67 ինժեներա-տեխնիկական աշխատողներից 15-ը ունեն բարձրագույն, իսկ 25-ը՝ միջնակարգ կրթություն։ Ինժեներ-կոնստրուկտորներից, տնտեսագետներից, տեղամասի պետերից շատերը չունեն մասնագիտական կրթություն։ Նույնիսկ գյուղատնտեսական և մանկավարժական կրթություն ունեցողներից շատերը գրավում են ինժեների պաշտոն։

Արդյունաբերական ձեռնարկություններում այնպիսի պաշտոններ են ստեղծվել, որոնց օգտագործումը տնտեսապես և տեխնիկապես ամենևին էլ նպատակահարմար չէ (օրինակ, ինժեներ սոցմրցության գծով, կադրերի պատրաստման և այլն)։ Որոշ դեպքերում ինժեներներն օգտագործվում են որպես տեխնիկներ, իսկ տեխնիկները գծագրողներ և այլն։

Արդյունաբերության մեջ մասնագետների օգտագործման նորմալացումը, մեր կարծիքով, նախ՝ պահանջում է նրանց նյութական շահագրգռվածության բարձրացում՝ աշխատավարձի սիստեմի կանոնավորման միջոցով։ Հանրապետության 6 հաստոցագործարանների ինժեներա-տեխնիկական աշխատողների և բանվորների միջին աշխատավարձի փոփոխությունների վերլուծությունը ցույց տվեց, որ 1966—1969 թթ., բանվորների աշխատավարձի համեմատությամբ , ինժեներա-տեխնիկական աշխատողների աշխատավարձի մակարդակը 4,5 տոկոսով իջել է։

Այսպիսի հանգամանքը չի կարող խթանել տեխնիկական առաջադիմությունը և արտադրության կատարելագործման ասպարեզում բարձրացնել ինժեներա-տեխնիկական անձնակազմի շահագրգռվածությունը։ Այստեղից հետևում է, որ ինժեներա-տեխնիկական անձնակազմի բարոյական խթանման հետ միասին, պետք է արմատապես լուծվի նաև նյութական խրախուսման հարցը, որի համար անհրաժեշտ է մտածված ու տնտեսապես հիմնավորված միջոցառումներ իրագործել։

Ս. Կ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Ա. Ս. ՍԱՐՅԱՆ

## ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ՍԻՍՏԵՄԸ

*Աշխատավարձը սոցիալիզմի օրոք հասարակությանը պատկանող ազգային եկամտից յուրաքանչյուր աշխատողին հասանելիք բաժինն է։ Ի տարբերություն բաշխման այլ ձևերի, աշխատավարձի մեծությունը որոշվում է ըստ յուրաքանչյուրի աշխատանքի։*

*Ղեկավարվելով ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքով և հաշվի առնելով աշխատավարձի նկատմամբ աշխատանքի արտադրողականության բարձրացման առավել արագ աճի ապահովման անհրաժեշտությունը, աշխատանքի առանձին տեսակների որակական առանձնահատկությունները, պայմանների տարբերությունը և արտադրության ճյուղերի ժողովրդատնտեսական նշանակությունը, տարբեր խմբերի և կատեգորիաների համար սահմանվում են աշխատավարձի տարբեր մակարդակներ։ Աշխատավարձի կարգավորման հիմնական նպատակն է՝ ճիշտ օգտագործել հասարակական ամբողջական արդյունքի այն մասը, որն առանձնացվում է աշխատավարձի, յուրաքանչյուրի մոտ իր աշխատանքի արդյունքների նկատմամբ նյութական շահագրգռվածություն ստեղծելու, վարձատրման գործում չհիմնավորված հավասարեցում թույլ չտալու և առանձին խմբերի ու կատեգորիաների բանվորների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի ու ծառայողների աշխատավարձի մակարդակներում հիմնավորված տարբերություններ սահմանելու համար։*

*Աշխատավարձը հասարակական ամբողջական արդյունքի այն մասն է, որը հատուցվում է բանվորներին և ծառայողներին անձնական սպառման համար։ Դրա մեծությունն անմիջականորեն պայմանավորված է արտադրանքի թողարկման աճով, որակի բարելավմամբ, նյութական և աշխատանքային ծախսումների տնտեսմամբ։ Հետևաբար, արտադրության արդյունավետության բարձրացումը հնարավորություն է ընձեռում, համապատասխանաբար, ըստ գործունեության արդյունքների, ստանալ ավելի բարձր աշխատավարձ։*

*Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում աշխատավարձը յուրաքանչյուր աշխատողի կողմից ներդրված աշխատանքի համապատասխան նյութական բարիքների բաշխման ամենաարդարացի միջոցն է։ Անհրաժեշտ է նշել, որ աշխատավարձի ճիշտ կազմակերպումն ապահովում է աշխատողների շահագրգռվածությունը ո՛չ միայն անձնական աշխատանքի արդյունքների բարելավման, այլև արտադրամասի, ձեռնարկության արտադրական գործունեության լավագույն ցուցանիշների հասնելու գործում։*



*Աշխատավարձի դերը չի սահմանափակվում միայն տարիֆային դրույքների, աշխատանքային հաստիքների, պարգևատրման սիստեմների միջոցով ըստ աշխատանքի բաշխման պրակտիկ արտահայտությամբ։ Այն նպաստում է դիֆերենցված ձևով աշխատավորների դրամական եկամուտների ավելացմանը, ստեղծելով ցածր վարձատրվող կատեգորիայի աշխատողների աշխատավարձի առավել արագ աճի ապահովման հնարավորություն։ Աշխատավարձը հնարավորություն է ընձեռում ավելացնելու բանվորների և ծառայողների դրամական եկամուտները, բարձրացնելու նրանց նյութական շահագրգռվածությունը, իրականացնելու առանձին կատեգորիայի աշխատավորների եկամուտների դիֆերենցված աճ։ Դրա համար աշխատավարձի աճը, աշխատավորների եկամուտների ավելացումն ապահովելու գործում, որոշիչ է։ Բավական է բերել այն փաստը, որ բանվորների և ծառայողների ռեալ եկամուտների աճի մոտ 8/10-ը ապահովվում է աշխատավարձի բարձրացման հաշվին։*

*Ինչպես անցած (1966—1970 թթ.) այնպես էլ ընթացիկ հնգամյակում (1971—1975 թթ.) ամեն կերպ ուժեղանում է բոլոր այն գործոնների ազդեցությունը, որոնք որոշում են հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում աշխատավարձի, դրանով իսկ բանվորների և ծառայողների եկամուտների ավելացման նշանակությունը։*

*Ըստ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվների՝ նախատեսվում էր բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը բարձրացնել 20 տոկոսից ոչ պակաս չափով։ Փաստորեն այն աճեց 26 տոկոսով և 1970 թվականին կազմեց 122 ռուբլի, 1965 թվականի 96,5 ռուբլու փոխարեն։ Ընթացիկ հնգամյակում (1971—1975 թթ.) բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը պետք է աճի 20—22 տոկոսով։ Այնուամենայնիվ, պետք է նկատի ունենալ, որ աշխատավարձի աճի նախատեսված տեմպերը դեռևս վերջնական չեն։ Պլանավորման և նյութական շահագրգռվածության նոր սիստեմը ձեռնարկություններին հնարավորություն է ընձեռել իրենց սեփական նախաձեռնությամբ ավելացնել արտադրությունը նախատեսված առաջադրանքների նկատմամբ և դրան համապատասխանաբար բարձրացնել նաև աշխատավարձը, ապահովել աշխատավորների բարեկեցության հետագա աճը։*

*Մեր երկրում աշխատավորների բարեկեցության աճը տեղի է ունենում ո՛չ միայն միջին աշխատավարձի բարձրացմամբ, այլև աշխատունակ բնակչությանը հասարակական արտադրության մեջ ներգրավելու շնորհիվ, որը, վերջին հաշվով, հանգեցնում է աշխատավարձի ֆոնդի մեծացման համար պետության կողմից կատարվող ծախսերի աճին։*

*Բանվորների և ծառայողների բարեկեցությանը նպաստեց նաև աշխատաժամանակի կրճատումը՝ առանց աշխատավարձի փոփոխության։ Այսպես, 1955 թվականին աշխատաժամանակը շաբաթական 47,8 ժամից 1966 թվականին իջավ մինչև 40,6 ժամի։ 1967 թվականին հիմնականում ավարտվեց բանվորների և ծառայողների անցումը հնգօրյա աշխատանքային շաբաթի այն ձեռնարկություններում, կազմակերպություններում և հիմնարկություններում, որտեղ նպատակահարմար էր չփոփոխել շաբաթվա ընդհանուր աշխատաժամանակի տևողությունը։*

*1960 թվականից հարկերի կրճատման, իսկ ցածր վարձատրվողների նկատմամբ, լրիվ վերացման շնորհիվ, զգալի չափով աճեցին աշխատավորների դրամական եկամուտները։ Տեղին է նշել այն փաստը, որ մեզ մոտ գործող*

հարկավորման կարգը նախատեսում է պրոգրեսիվ սանդղակ, այսինքն՝ որքան բարձր է աշխատավարձը, այնքան մեծ է հարկի գումարը։

1970 թվականին ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բանվորների և ծառայողների աշխատավարձի ֆոնդը, 1969 թվականի համեմատությամբ, ավելացավ 7, իսկ հասարակական սպառման ֆոնդերի հաշվին կատարվող վճարումների ընդհանուր ծավալը՝ 5,4 տոկոսով։ Այսպիսով, հետևողականորեն ապահովվում է ինչպես ըստ աշխատանքի, այնպես էլ հասարակական սպառման ֆոնդերի ավելացումը։

Աշխատանքի ճիշտ կազմակերպումն ու վճարումը չի նախատեսում աշխատավարձի և ռեալ եկամուտների մեխանիկական աճ։ Դրանք պետք է ավելանան աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ միասին՝ որոշակի համամասնությամբ։

Քանի որ սոցիալիստական սիստեմին յուրահատուկ է ո՛չ թե պարզ, այլ հասարակական արդյունքի մշտապես ընդլայնվող վերարտադրությունը, ապա ազգային եկամտի մի մասն օգտագործվում է այդ նպատակներով, իսկ դա հնարավոր է միայն աշխատավարձի նկատմամբ աշխատանքի արտադրողականության առավել աճի պայմաններում։ Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունն այն է, որ, չդանդաղեցնելով հասարակական արտադրության ընդլայնման տեմպերը, միաժամանակ ապահովվում է ժողովրդի բարեկեցության բարձրացման և, առաջին հերթին, ըստ աշխատանքի վարձատրման համար առանձնացվող միջոցների ծավալի աճը։ Օրինակ, 1970 թվականին, 1969-ի համեմատությամբ, ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակով առանձնացվող միջոցների ծավալն աճեց 10,9 մլրդ ռուբլով։

Նյութական արտադրության աշխատողների մոտ աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի հարաբերակցության պրոբլեմի քննարկման ժամանակ պետք է նկատի ունենալ հավելյալ արդյունքի այն մասը, որն ստեղծվում է արտադրաճյուղերի աշխատողների կողմից, հասարակական սպառման ֆոնդերի ձևով նորից անցնում է նրանց տրամադրության տակ և ապահովում բարեկեցության աճը։

Աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի ճիշտ հարաբերակցությունն ապահովելու նպատակով անհրաժեշտ է հիմնավորված ձևով աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի տեմպերը որոշել ո՛չ միայն ժողովրդական տնտեսության մասշտաբով, այլև առանձին ճյուղերում և, հատկապես, ձեռնարկություններում, որտեղ, վերջին հաշվով, հիմնավորվում է այդ կարևորագույն հարաբերակցությունը։ Դրանով է բացատրվում այն փաստը, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշմամբ պլանավորման և տնտեսական խթանման նոր կարգին անցած ձեռնարկություններին թույլ տրվեց ինքնուրույն վճռել աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի տեմպերի հարցը։ Դա, իհարկե, չի նշանակում նշված ցուցանիշների նկատմամբ ուշադրության թուլացում։ Ընդհակառակը, բացի նրանից, որ այդ ցուցանիշներն արտացոլվում են ձեռնարկության արդտեխֆինպլանում, այժմ տեղերում ստեղծված են այնպիսի խթանիչ պայմաններ, որոնց շնորհիվ ձեռնարկության բոլոր աշխատողները գործնականում շահագրգռված են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, որովհետև դրա հետ համապատասխան աճում է նաև աշխատավարձը։ Բայց, դրանով հանդերձ, ապահովվում է



աշխատանքի արտադրողականության առավել աճը՝ աշխատավարձի աճի նկատմամբ։

Անհրաժեշտ է նշել, որ կարևոր է աշխատավարձի ո՛չ թե մեխանիկական, այլ այնպիսի աճ, որն առավել սերտ կապված է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, աշխատանքի արդյունքների նկատմամբ աշխատավորների նյութական շահագրգռվածությունն ավելի ուժեղացնելու հետ։

Այդ նկատառումով էլ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի դիրեկտիվներում մեծ տեղ է հատկացված աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Տեխնիկայի և սոցիալիստական արտադրության անընդհատ աճն ու կատարելագործումը կոմունիզմի կառուցման կարևորագույն պայմանն են և պահանջում են արտադրության մեջ ընդգրկել ավելի շատ բարձր որակավորում ունեցող աշխատողների։ Քանի որ հասարակության սոցիալիստական զարգացման շրջանում պահպանվում է աշխատողների միջև էական տարբերությունն ըստ որակավորման աստիճանի, ապա սոցիալիստական հասարակարգն իրականացնում է բարձրորակ աշխատանքի նկատմամբ ավելի բարձր վարձատրություն. դա սոցիալիստական հասարակության աշխատավորներին հնարավորություն է ընձեռում մշտապես բարձրացնելու իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակը և օժանդակում մտավոր ու ֆիզիկական աշխատանքների միջև գոյություն ունեցող էական տարբերության աստիճանական վերացմանը։ Դիֆերենցացիայի հետևողական կիրառումը, այսինքն՝ աշխատավորների համար վարձատրության տարբեր մակարդակների սահմանումը՝ կախված է դրանց որակավորումից։ Ուստի, բարձրորակ աշխատողների հսկայական բանակի ստեղծումը կարևոր միջոցառում է, առանց որի հնարավոր չէ իրականացնել արդի գիտության և տեխնիկայի հաջող զարգացումը։

Դիֆերենցիալ աշխատավարձը պայմանավորված է աշխատանքի ծանրությամբ, դրա վնասակարության աստիճանով։ Համապատասխան հարաբերակցություն է ստեղծված բանվորների գործավարձային և ժամանակավարձային դրույքների մակարդակների, բանվորների ու ինժեներա-տեխնիկական անձնակազմի հաստիքների միջև և այլն։

Այսպիսով, աշխատավարձի հիմնավորված կարգավորման սիստեմը բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների տնտեսական խթանման ճիշտ կազմակերպման անհրաժեշտ պայմանն է։ Աշխատավարձի (որպես խթանման գործիքի) օգտագործման հնարավորությունը բխում է նրանից, որ աշխատավարձը սոցիալիզմի պայմաններում ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի արտահայտման հիմնական ձևն է։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ հնգամյա պլանի վերաբերյալ՝ կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է. առաջիկայում ևս կբարելավվի և կկատարելագործվի աշխատանքի վարձատրության հարաբերությունն ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի և աշխատողների կատեգորիաների, հաշվի առնելով նրանց աշխատանքի պայմաններն ու որակը։ Միջոցներ կձեռնարկվեն բարձրացնելու տարիֆային սիստեմի դերը, աշխատավորների շահագրգռվածությունը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության ծախքերի կրճատման և արտադրանքի որակի բարձրացման համար։

Մ. Ս. ԱՍԼԱՆՅԱՆ

# ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

## ԼԵՆԻՆԸ ԵՎ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Գ. Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

*Պատմա-փիլիսոփայական գիտությունն ունի տեսական-մեթոդոլոգիական բնույթի բազմաթիվ խնդիրներ, որոնք վերաբերում են գլխավորապես փիլիսոփայության պատմության այլևայլ կողմերի բացահայտման եղանակներին, փիլիսոփայական տարբեր ուսմունքների ու սիստեմների հաջորդականության պատճառներին, զարգացման օրինաչափություններին, պարբերացման ու գնահատման սկզբունքներին և այլ հարցերի։ Այստեղ էական են նաև տարբեր երկրներում երևան եկած փիլիսոփայական ուսմունքների և գաղափարների վերլուծության ու արժեքավորման խնդիրները և այլն։*

*Վ. Ի. Լենինն իր աշխատություններում բազմիցս անդրադարձել է պատմա-փիլիսոփայական գիտության մեթոդոլոգիական պրոբլեմներին։ Նա մեծ ուշադրություն է նվիրել փիլիսոփայության պատմությանը։ Օգտագործելով յուրաքանչյուր փոքր հնարավորություն՝ կարդալու և ուսումնասիրելու փիլիսոփայության դասական ներկայացուցիչների գործերը։ Իլյիչը մեծ խնամքով քաղվածքներ է կատարել փիլիսոփայության պատմության դարակազմիկ մի շարք աշխատություններից և իր վերաբերմունքը դրսևորել այնտեղ արծարծված հարցերի վերաբերյալ։ Փիլիսոփայության պատմությանը նվիրված Լենինի ուսումնասիրությունները, որոնք հիմնականում տեղ են գտել Փիլիսոփայական տետրերում, գիտական մեծ արժեք են ներկայացնում։ Սակայն տվյալ ժողովածուն տակավին չի ընդգրկում այն բոլորը, ինչ կա լենինյան տեսական ժառանգության մեջ։*

*Տարբեր ուսմունքների, գաղափարական հոսանքների, մտածողների հայացքների լենինյան վերլուծությունն ու գնահատականը նույնպես հիմք ու նյութ են տալիս խոր և համակողմանի ըմբռնելու փիլիսոփայության պատմության հանգուցային հարցերը։ Պատմա-փիլիսոփայական հետազոտության մարքսիստական մեթոդոլոգիական սկզբունքների բովանդակությունն ու էությունն անքակտելիորեն կապված են մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի հետ և բխում են նրանից։*

*Լենինը ելնում էր այն հիմնարար դրույթից, որ փիլիսոփայության պատմությունը փիլիսոփայական մտքի զարգացման պատմությունն է, որը ցույց է տալիս դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի լինելության*



*պրոցեսը և նրա հաստատման օբյեկտիվ ու պատմական անհրաժեշտությունը։ Իրենց բովանդակությամբ փիլիսոփայությունն ու նրա պատմությունը տարբեր առարկաներ չեն։ Փիլիսոփայության պատմությունը նույն փիլիսոփայությունն է, միայն թե իր զարգացման մեջ։ Այս միտքը, որն առաջին անգամ որոշակիորեն արտահայտել է Հեգելը, արժանացել է Լենինի հավանությանը։ Քննելով Լենինի բազմաթիվ դիտողություններն ու եզրակացությունները, ակնհայտ է դառնում դրանց միջով կարմիր թելի նման անցնող այն միտքը, թե դիալեկտիկան պետք է դիտել իր զարգացման մեջ, պատմականորեն՝ կապված ճանաչողության պրոցեսի զարգացման հետ։ Այդ դեպքում միայն կարելի է ճիշտ հասկանալ ու ըմբռնել մարքսիստական դիալեկտիկան։*

*Հեգելի* Փիլիսոփայության պատմություն *աշխատությունը, որը բարձր են գնահատել Մարքսն ու Էնգելսը, ներթափանցված է փիլիսոփայական ուսմունքների ներքին կապի ու պատմական զարգացման դիալեկտիկական գաղափարով։ Այստեղ ցույց է տրված փիլիսոփայական ճանաչողության աստիճանական շարժումը, զարգացումը, այդ շարժման յուրաքանչյուր փուլը, որը, ըստ նրա, իմացության որոշակի աստիճաններից է։ Պատմական զարգացման ընթացքում նոր փիլիսոփայական սիստեմները ոչ թե ժխտում, այլ անցյալից վերցնում են նրա դրականը։ Փիլիսոփայական սիստեմները, այսպիսով, հանդես են գալիս որպես փիլիսոփայական գիտելիքների հարաբերական ճշմարտության աստիճաններ, որոնք բովանդակում են բացարձակ ճշմարտության սաղմեր։ Փիլիսոփայական ճանաչողության ողջ պրոցեսը կամ փիլիսոփայության պատմությունը հարաբերական ճշմարտությունից դեպի բացարձակն ընթացող պրոցես է։ Այս է փիլիսոփայության պատմության այն ըմբռնումը, որն արժանացել է Լենինի դրական գնահատականին։*

*Հասարակական գիտության ներկայացուցիչների առջև Լենինը խնդիր էր դնում չանտեսել պատմական կապը, հետազոտել ու բացահայտել առաջադրված գաղափարների զարգացման հիմնական փուլերը։ Փիլիսոփայության պատմությունն ուսումնասիրելիս լենինյան այս ցուցումը հնարավոր է իրականացնել տարբեր եղանակներով ու մասշտաբներով։ Այսպես, կարելի է քննել փիլիսոփայական առանձին բնագավառների պրոբլեմների և հարցերի սկզբնավորման ու զարգացման պատմությունը, կամ առանձին մտածողների հայացքների վերլուծության միջոցով ցույց տալ փիլիսոփայական ուղղությունների ու սիստեմների զարգացումը։ Ուսումնասիրության այս երկու եղանակն իր հերթին կիրառելի է ինչպես փիլիսոփայության ընդհանուր, այնպես էլ որևէ երկրի պատմության հետազոտման ժամանակ։*

*Բայց ինչպես էլ շարադրվի փիլիսոփայության պատմությունը, գաղափարների պատմական կապն ու զարգացման հիմնական փուլերն արտացոլելու լենինյան պահանջը կարող է իրականացվել միայն այն դեպքում, երբ լուսաբանված է տվյալ երկրի փիլիսոփայական հայացքների սիստեմը, նրանց հեղինակների կենսագրության, ստեղծագործության ու վերջինիս ակունքների հետ առնչվող փաստերը։ Առանց նման հետազոտության, անհնար է տալ որևէ ժողովրդի փիլիսոփայական մտքի գիտական պատմությունը։*

*Հայտնի է, որ փիլիսոփայական միտքը զանազան ձևերով հատուկ է եղել քաղաքակիրթ շատ ժողովուրդների և այդ մտքի զարգացումը չի ընթացել լոկալ ձևով, այլ տեղի է ունեցել Արևելքի ու Արևմուտքի ժողովուրդների մշակույթի փոխազդեցության ու փոխներթափանցման պայմաններում։ Ուստի,*

գաղափարների զարգացման փուլերի ու կապի վերաբերյալ լենինյան պահանջը նկատի է առնում նաև միջազգային կապերը։

Փիլիսոփայության պատմության հետազոտության մարքս-լենինյան մեթոդոլոգիայի հիմնական սկզբունքներից է պատմականության սկզբունքը, որը բխում է մարքս-լենինյան ուսմունքի, դիալեկտիկական մատերիալիզմի էությունից։ Փիլիսոփայության պատմության պրոբլեմները, որևէ երկրի փիլիսոփայական մտքի պատմությունը, անհնար է գիտականորեն մեկնաբանել ու արժեքավորել առանց այս սկզբունքի բազմակողմանի կիրառման։ Ի վերջո, պատմա-փիլիսոփայական հետազոտության մեթոդոլոգիական շատ հիմնական սկզբունքներ հանգում են պատմականության կատեգորիային։

Հեգելը պահանջում էր անցյալի մտածողների ժառանգությունը քննել ոչ թե պատմությունից դուրս, այլ կոնկրետ պատմական ժամանակաշրջանում նկատի ունենալով փիլիսոփայական մտածողության մակարդակը։ Լենինը Հեգելի պատմության փիլիսոփայության դասախոսություններն ուսումնասիրելիս հատկապես ընդգծել է նրա այն միտքը, թե «Յուրաքանչյուր դարաշրջանի հատուկ են այնքան յուրօրինակ հանգամանքներ, դա այնքան ինդիվիդուալ գոյավիճակ է իրենից ներկայացնում, որ նրանից ելնելով միայն, նրա վրա հենվելով պետք է և միմիայն հնարավոր է դատել նրա մասին» (Երկեր, հատ. 38, էջ 388)։ Լենինը բարձր է գնահատել անտիկ աշխարհի փիլիսոփայական հայացքների հեգելյան վերլուծությունը։ «Հիանալի է ասված փիլիսոփայության պատմության մեջ խիստ պատմականության մասին,— գրում է Լենինը,— որպեսզի հներին չվերագրվի նրանց գաղափարների այնպիսի «զարգացում», որը մեզ համար հասկանալի է, բայց հների մոտ իրականում դեռ բացակայում էր» (Նույն տեղը, էջ 310—311)։

Փիլիսոփայության պատմության ուսումնասիրության մարքս-լենինյան մեթոդոլոգիայի կարևոր պահանջներից է փիլիսոփայական գաղափարների ու սիստեմների և կոնկրետ պատմական իրականության միջև գոյություն ունեցող կապի բացահայտումը։ Վերջինս բխում է պատմության մատերիալիստական ըմբռնումից, որը Լենինը համարում էր հասարակական-գիտական մտքի խոշոր նվաճումներից մեկը։

Լինելով հասարակական գիտակցության ձև, փիլիսոփայությունը սերտորեն առնչվում է հասարակության տնտեսական հարաբերությունների հետ և պայմանավորվում դրանցով։ «Ճիշտ այնպես,— նշել է Լենինը, ինչպես մարդու իմացությունն արտացոլումն է նրանից անկախ գոյություն ունեցող բնությունը, այսինքն՝ զարգացող մատերիան, նույնպես և մարդու հասարակական իմացությունը (այսինքն՝ զանազան փիլիսոփայական, կրոնական, քաղաքական և այլ հայացքներ ու ուսմունքներ), արտացոլում է հասարակության տնտեսակարգը» (Երկեր, հ. 19, էջ 6)։ Ուստի, փիլիսոփայական ուսմունքների առաջացումն ու բնույթը, նրանց մեկը մյուսով փոխարինելու պատմական անընդհատ պրոցեսը և հենց նրանց էությունն ու արժեքը կարելի է ճիշտ հասկանալ ու մեկնաբանել միայն այն դեպքում, երբ դրանք դիտվում են հասարակության հիմքերի երևույթների կապակցության մեջ։ Փիլիսոփայական գիտելիքների համակարգը որպես տեսական գիտելիքների ամբողջություն, տվյալ կոնկրետ պատմական ժամանակաշրջանի գիտական իմացության տարբեր բնագավառների նվաճումների ընդհանրացումն է և պատասխանը այն հարցերի, որոնք տվյալ հասարակությունն առաջադրում է տեսական մտքին։



Լենինը պաշտպանելով հասարակական գիտակցության, տվյալ դեպքում փիլիսոփայության պայմանավորվածությունը սոցիալ-տնտեսական հարաբերություններով մարքսիստական թեզը, միաժամանակ հանդես եկավ գռեհիկ սոցիոլոգիզմի դեմ։ Այդ են ապացուցում Լենինի դիտողությունները Շուլյատիկովի Կապիտալիզմի արդարացումն արևմտաեվրոպական փիլիսոփայության մեջ։ Դեկարտից մինչև Է. Մախը գրքի վերաբերյալ։ Շուլյատիկովն իր գրքում փիլիսոփայական կատեգորիաների բովանդակությունը հանգեցնում էր հասարակական երևույթները արտացոլող հասկացություններին։ Նա ուղղակի և անմիջական կապ էր տեսնում սոցիալ-տնտեսական, դասակարգային հարաբերությունների և փիլիսոփայական գաղափարների միջև։ Օրինակ, Դեկարտին, Սպինոզային, Լայբնիցին, անգլիական մատերիալիստներին, Կանտին նա դիտում էր որպես կապիտալիստական արտադրության մանուֆակտուրային փուլի արտահայտություն և այլն։ Ամփոփելով իր դիտողություններն այդ գրքի վերաբերյալ, Լենինը եզրակացնում է. «Ամբողջ գիրքը մատերիալիզմի անչափ գռեհկացման օրինակ է» (Երկեր, հ. 38, էջ 647)։

Որևէ փիլիսոփայի հայացքները վերլուծելիս, անշուշտ, նախ պետք է հաշվի առնել տվյալ երկրի սոցիալ-տնտեսական պայմանները, դասակարգային ուժերի տեղաբաշխումը, գիտության և կուլտուրայի զարգացման մակարդակը։ Սակայն պատմականության սկզբունքը չի բացառում սոցիալ-տնտեսական կյանքից փիլիսոփայության գաղափարների «հարաբերական ինքնուրույնությունը» (Էնգելս), չի բացառում այն հանգամանքը, որ փիլիսոփայական գաղափարները կարող են սերված լինել անցյալի ժառանգությունից և լինել այդ գաղափարների տրամաբանական զարգացումը։ Պատմականության սկզբունքը պահանջում է ժամանակի գիտության և սոցիալ-տնտեսական կյանքի հիմնական տենդենցների ու բովանդակության բացահայտմանը զուգընթաց ցույց տալ նաև, թե տվյալ փիլիսոփան մտավոր որ ժառանգությունից է սերվել։ Յուրաքանչյուր դարաշրջանի փիլիսոփայությունն իր տրամադրության տակ որպես ելակետ ունի որոշակի մտածական նյութ, որը նրան ժառանգություն է թողել նախորդ սերունդը։ Այդ նյութը հիմք է հանդիսանում խորհրդածությունների համար և եթե հաշվի չառնվի այն, ապա դժվար կլինի բացատրել գաղափարական շատ երևույթներ։ Ըստ էության փիլիսոփայությունը պատմական ժամանակաշրջանի արդյունք է միայն վերջին հաշվով և եթե սոսկ սոցիալ-տնտեսական հարաբերություններով, դասակարգային ուժերի փոխհարաբերությամբ փորձենք այն բացատրել, կկանգնենք դժվարին, եթե չասենք անլուծելի, շատ առեղծվածների առաջ կամ կընկնենք սուբյեկտիվիզմի գիրկը և խեղաթյուրված կտանք պատմության օբյեկտիվ ընթացքը։

Փիլիսոփայության պատմության տարբեր փուլերի առանձին ներկայացուցիչների հայացքները վեր հանելիս ու արժեքավորելիս, հետազոտողն անպայման առաջնորդվում է հասկացությունների որոշակի սիստեմով։ Անհրաժեշտ է, անշուշտ, որ փիլիսոփայության պատմության հետազոտողը շատ կոնկրետ ու որոշակի ըմբռնում ունենա օգտագործվող հասկացությունների վերաբերյալ, որը նշանակում է, միաժամանակ, նկատի առնել փիլիսոփայական հասկացությունների ու կատեգորիաների դիալեկտիկան։ Յուրաքանչյուր միտք, առավել ևս փիլիսոփայականը, չի կարող արտահայտվել կատեգորիալ սիստեմից դուրս, իսկ յուրաքանչյուր կատեգորիա իմաստավորվում է տրամաբանական որոշակի սիստեմում, հայացքների որոշակի ամբողջության մեջ։ Փիլիսոփա պատմաբանը պետք է նկատի ունենա այս, ինչպես

և այն հանգամանքները, որ հասկացությունները պատմական տարբեր փուլերում, իմացության զարգացման աստիճաններում ծավալա-բովանդակային առումով չեն կարող միանշանակ լինել։ Հասկացություններն իրենց առաջացման ու զարգացման պատմությունն ունեն և դրանք միանշանակ չի կարելի կիրառել տարբեր դարաշրջանների մտածողների հայացքները բնութագրելիս։

Լենինը գրում է. «Հասկացությունների վերլուծումը, նրանց ուսումնասիրումը, «նրանցով գործառնելու արվեստը» (Էնգելս) միշտ պահանջում է հասկացությունների շ ա ր ժ մ ա ն, նրանց կապի, նրանց փոխանցումների ուսումնասիրում» (նույն տեղը, էջ 317)։

Այսպես, մենք խոսում ենք միջնադարում նոմինալիստական և ռեալիստական ուղղությունների առկայության մասին, որոնք առաջացել են, այսպես կոչված՝ «ունիվերսալիաների» բնույթի խնդրի լուծման կապակցությամբ։ Միջնադարում բուռն վիճել են այն հարցի շուրջ, թե ընդհանուրը գոյություն ունի անկախ, եզակիներից առաջ, թե՝ եզակիների հիման վրա ու նրանց միջոցով։ Այս հարցը, իհարկե, սոսկ միջնադարյան հարց չէր. նրա արմատները ձգվում են մինչև հին աշխարհ։ Հիշենք, թեկուզ Անտիսֆենին (մոտ 435—370 մ. թ. ա.), որը քննադատելով Պլատոնի (428—348 մ. թ. ա.) ուսմունքը, ընդհանուր գաղափարների անկախ գոյության մասին, պնդում էր, թե իրականում և անկախ գոյություն ունեն միայն եզակիները, զգայաբար ընկալելին, կոնկրետը և ոչ ընդհանուրը։ Բայց այս հիման վրա, մեզ թվում է, հակապատմական կլինի Անտիսֆենին որակել որպես նոմինալիստ, իսկ Պլատոնին՝ ռեալիստ։ Նույնը կարելի է ասել նաև Արիստոտելի մասին, չնայած ընդհանուրի և եզակի հարցը քննվել է նաև անտիկ աշխարհի այս մեծագույն մտածողի մոտ՝ առաջին և երկրորդ գոյացությունների մասին նրա ուսմունքի առնչությամբ և որոշ առումով իր լուծումն է ստացել։

Նոմինալիզմն ու ռեալիզմը ուրույն միջնադարյան ծագում ունեն։ Նոմինալիստներն ու ռեալիստները յուրովի են քննել ընդհանուրի և եզակիի հարցը։ Նրանց մոտ հարցը քննելիս առկա է եղել նաև կրոնական, աստվածաբանական ասպեկտը։ Ընդհանուրի բնույթի փիլիսոփայական հարցը նրանց մոտ կոչված է ծառայելու, «աղախնի» դեր կատարելու, աստվածաբանական դոգմաներ պարզաբանելու և համոզիչ դարձնելու համար, հատկապես մեկնաբանելու այն հարցը, թե, ըստ էության, միասնական աստվածը՝ ընդհանուրը, ի՞նչ փոխհարաբերության մեջ է իր երեք անձերի, եզակիների՝ «հոր», «որդու», «սուրբ հոգու» հետ, ի՞նչ հիման վրա է իրականանում նրանց միասնությունը (եռամիասնությունը), որն է իրականը՝ միասնությու՞նը, թե՞ եզակին։

Անշուշտ, ընդհանուր գաղափարների՝ զգայելի, եզակի իրերից անկախ ու նրանցից առաջ գոյություն ունենալու վերաբերյալ պլատոնյան իդեալիստական հայացքը սնել է ռեալիզմը, ինչպես նաև Արիստոտելի Կատեգորիաներ աշխատությունը մեկնաբանելիս միջնադարյան մտածողը դրսևորել է իր պատկանելությունը նոմինալիզմին կամ ռեալիզմին։ Քանի որ մեր օրինակը վերաբերում է նոմինալիզմին, ապա պետք է ասել, որ նոմինալիզմ հասկացությունը միանշանակ չի կարելի օգտագործել նաև XI—XIV դարերի մտածողների կամ, ասենք, Հոբսի հայացքները բնորոշելիս։ Նույնը կարելի է ասել նաև կոնցեպտուալիզմի վերաբերյալ։

Պատմականության մեթոդոլոգիական սկզբունքը պահանջում է, որ փիլիսոփա պատմաբանը հաշվի առնի վերոհիշյալ հանգամանքները և կարողա-



նա բացահայտել հարցերի մոտեցման ու նրանց լուծման այն տարբերությունները, ուրույն եղանակները, որոնք չեն կարող առկա չլինել սոցիալ-տնտեսական պայմանների, կուլտուրայի և մտածողության տարբեր մակարդակներում։ Պատմական տարբեր փուլերում զանազան ձևով են դրվել ու քննվել ոչ միայն ընդհանուրի ու եզակիի, այլև սկզբնապատճառի, նյութականի և աննյութականի, հոգու և մատերիայի, զգայական և ռացիոնալ ճանաչողության և այլ բազմաթիվ հարցեր։

Այստեղ տեղին է մեջբերել Լենինի այն միտքը, թե փիլիսոփայության պատմությունն այնպես պետք է վեր հանել ու ներկայացնել, որպեսզի նրա անցյալի ներկայացուցիչներին չվերագրվի գաղափարների այնպիսի «զարգացում», որը նրանց մոտ «իրականում դեռ բացակայում է»։

Փիլիսոփայության պատմության առանձին ներկայացուցիչների հայացքները կարող են սխալ վերլուծվել ու բնութագրվել նաև այն դեպքում, երբ նկատի չի առնվում, թե ինչ ծավալ ու բովանդակություն ունեն, ինչ իմաստով են օգտագործվում ուսումնասիրվող մտածողի մոտ փիլիսոփայական հասկացությունները։ XIX դարի մտածող Գարագաշյանը, օրինակ, գրում է, թե «մեր դավանանքը նյութապաշտությունն է»։ Բայց սրանից ելնելով չի կարելի Գարագաշյանին անվերապահորեն նյութապաշտ, այսինքն՝ մատերիալիստ համարել։ Պետք է նախ՝ պարզել, «նյութապաշտ» հասկացության բովանդակությունը և թե ինչ տեղ է բռնում այն նրա հայացքների սիստեմում։

Պատմականության սկզբունքն իր բուն էությամբ հակադրվում է մոդեռնացմանը։ Փիլիսոփայության պատմության ուսումնասիրությունը կոչված է օգնելու փիլիսոփայության ժամանակակից պրոբլեմների ավելի խոր ըմբռնման ու լուծման խնդրին։ Սակայն այդ իսկ խնդրի դրական լուծման համար անհրաժեշտ է լավ ըմբռնել հարցադրման ու դրանց մեկնաբանման այն ուրույն եղանակը, որ դրսևորվել է փիլիսոփայական գիտության զարգացման յուրաքանչյուր փուլում, ինչպես համաշխարհային առումով, այնպես և տարբեր երկրներում։

Առանձին հետազոտողներ այս կամ այն դարաշրջանի ու տարբեր երկրների մտածողների հայացքները վերլուծելիս, աշխատում են դրանք տեղավորել նախօրոք գծված ինչ-որ սխեմայի մեջ, քննում մտածողի հայացքների սիստեմը այսօրվա տեսանկյունից ու մակարդակով։ Ուսումնասիրության նման մոտեցումն ի չիք է դարձնում հարցերը քննելու ու մեկնաբանելու այն ուրույն եղանակը, որ հատուկ է եղել պատմական տարբեր ժամանակներում, տարբեր ժողովուրդների մոտ ու սոցիալ-քաղաքական կյանքի ու գիտության զարգացման տարբեր մակարդակներում։ Փիլիսոփայության պատմության հետազոտողի խնդիրն է ո՛չ միայն բացահայտել ու գնահատել անցյալի մտածողների հայացքների էությունը, այլև միաժամանակ ցույց տալ, թե ինչպես են նրանք խորհել ու արտահայտել իրենց մտքերը, դրել ու լուծել փիլիսոփայական պրոբլեմները։ Պատմականության կատեգորիայի այս պահանջի անտեսումը պատմա-փիլիսոփայական որոշ հետազոտություններում, այս կամ այն երկրի մտածողին համաշխարհային փիլիսոփայության մակարդակին բարձրացնելու ընդգծված տենդենցի է հանգեցնում։ Դրա արդյունքը լինում է նաև այն, որ փիլիսոփայության պատմությանը նվիրված աշխատությունները նմանվում են միմյանց թե՛ իրենց ձևով ու հարցերի շարադրման հաջորդականությամբ, թե՛ բովանդակությամբ։

Պատմա-փիլիսոփայական հետազոտության կարևոր խնդիրներից է՝ տե-

սական մտքի զարգացման շղթայում հանդես եկած նրա առանձին ներկայացուցիչների հայացքների, առանձին սիստեմների տեղի ու դերի գնահատումը։ Այս կապակցությամբ Լենինը նշում է, որ «Պատմական ծառայությունների մասին դատում են ոչ թե նրանով, թե ինչ չեն տվել պատմական գործիչները ժամանակակից պահանջների համեմատությամբ, այլ նրանով, թե նրանք ինչ նոր բան են տվել իրենց նախորդների համեմատությամբ» (Երկեր, հ. 2, էջ 229)։ Լենինյան այս կարևոր ցուցումը անգնահատելի նշանակություն ունի և պետք է ուղեցույց լինի պատմա-փիլիսոփայական հետազոտություններ կատարելիս։

Փիլիսոփայական հասկացությունների ու կատեգորիաների, փիլիսոփայական ըմբռնումների զարգացումը ուղագիծ պրոցես չէ, այստեղ նկատելի է սպիրալաձև զարգացման դիալեկտիկան։ Ուստի, իրար անմիջապես հաջորդող փիլիսոփաների հայացքներում պարտադիր չէ, որ առկա լինի փիլիսոփայական կատեգորիաների զարգացում։ Փիլիսոփայության պատմության ուսումնասիրության մեթոդոլոգիան պահանջում է ցույց տալ այն իրական դերն ու նշանակությունը, որ տվյալ երկրում պատմականորեն խաղացել են փիլիսոփայության առանձին ներկայացուցիչներ։ Հաճախ այդ դերը կարող է սահմանափակվել սոսկ արդեն հայտնի գաղափարների սիստեմատիկ շարադրանքի, կամ զարգացման տենդենց ունեցող հարցադրումների, առաջավոր սկզբունքների պաշտպանության, կամ տվյալ երկրի տեսական մտածողության համար նոր պրոբլեմների ու գաղափարների բարձրացման մեջ և այլն։ Այսինքն՝ յուրաքանչյուր կոնկրետ պատմական հանգամանքներում առանձին ներկայացուցիչների դերի հարցը պետք է միայն կոնկրետ լուծում ստանա։

Լենինն իր աշխատություններում անցյալի փիլիսոփայական ժառանգության վերլուծման ու գնահատման հարցում կոնկրետ-պատմական մոտեցում ցուցաբերելու փայլուն օրինակներ է տվել։ Անդրադառնալով, լուսավորիչներին, որոնց բնութագրում են որպես բուրժուազիայի գաղափարախոսներ, նա գրում է. չպետք է նեղ, ոչ պատմականորեն (ընդգծումը մերն է— Գ. Գ.) հասկանալ բուրժուա բառը, «...նրա հետ կապելով (առանց պատմական դարաշրջանների տարբերության) փոքրամասնության շահերի աչառու պաշտպանությունը։ Չի կարելի մոռանալ, որ այն ժամանակ, երբ գրում էին XVIII դարի լուսավորիչները... երբ գրում էին մեր լուսավորիչները 40-ական թվականներից մինչև 60-ական թվականները, հասարակական բոլոր հարցերը հանգում էին ճորտատիրական իրավունքի և նրա մնացորդների դեմ մղվող պայքարին։ Հասարակական-տնտեսական նոր հարաբերությունները և նրանց հակասություններն այն ժամանակ դեռ սաղմնային վիճակում էին, ուստի և այն ժամանակ բուրժուազիայի իդեոլոգների մեջ ոչ մի շահախնդրություն չէր դրսևորվում. ընդհակառակը, թե՛ Արևմուտքում և թե՛ Ռուսաստանում նրանք լիովին անկեղծորեն հավատում էին ընդհանուր բարօրության և անկեղծորեն ցանկանում էին այն, անկեղծորեն չէին տեսնում (մասամբ դեռ չէին կարող տեսնել) հակասություններ այն կարգի մեջ, որ ճորտատիրականից էր աճում» (Երկեր, հ. 2, էջ 646)։ Պատմականության նման կիրառման լենինյան սկզբունքը մեթոդոլոգիական ելակետ է տեսական-գաղափարական երևույթների ուսումնասիրման բնագավառում։

Փիլիսոփայության պատմության մարքս-լենինյան մեթոդոլոգիայի հիմնարար սկզբունքներից է փիլիսոփայական ուսմունքների, դրանց առանձին ներկայացուցիչների հայացքների կուսակցականության բացահայտումը։



Լենինն ընդգծում է մարքսիստական այն սկզբունքը, ըստ որի փիլիսոփայության մեջ կարող է լինել միայն երկու կուսակցություն, «փիլիսոփայական հարցերի լուծման երկու հիմնական գիծ, երկու հիմնական ուղղություն»՝ մատերիալիզմ և իդեալիզմ։ Պատմա-փիլիսոփայական հետազոտությունն կատարելիս չի կարելի անտեսել մեթոդոլոգիական այս արմատական հարցը։ Սակայն լենինյան հիշյալ մտքից չի հետևում, թե իդեալիզմը ոչ մի դեր չի խաղացել փիլիսոփայական մտքի զարգացման ասպարեզում և կարելի է անտեսել ու չուսումնասիրել այն մտածողներին, որոնց ուսմունքը իդեալիստական է։ Նման մոտեցումը սխալ է և պատմականորեն չի արդարացվում։ Կուսակցականության սկզբունքը կիրառելիս և որևէ մտածողի հայացքները գնահատելիս պետք է նույնպես ելնել պատմականության սկզբունքից։

Փիլիսոփայության պատմությունը բնության, հասարակության և մտածողության ընդհանուր օրենքների, հասկացությունների ու կատեգորիաների զարգացման, նրանց ծավալի ու բովանդակության կոնկրետացման ու հարստացման պատմություն է և չի կարելի ասել, որ իդեալիզմն այս հարցում որևէ դրական դեր չի կատարել։ Բավական է, թեկուզ, հիշել Պլատոնին, Լայբնիցին, Կանտին և վերջապես Հեգելին։ Տեսական մտքի զարգացման գործում էական է իդեալիզմի դերը։ Փիլիսոփայության պատմությունից հայտնի է, որ քիչ չեն դեպքերը, երբ իդեալիստների հարցադրումները բաց են արել գիտական ճանաչողության մի նոր բնագավառ։ Պատմական փաստ է, որ իդեալիզմի աչքի ընկնող ներկայացուցիչները ավելի մեծ ծառայություններ ունեն ընդհանուր տեսական մտքի զարգացման մեջ, քան շատ մատերիալիստներ։

Քննադատելով իդեալիզմը, Լենինն այն չեմից չէր մերժում։ Նա գրում էր, որ փիլիսոփայական իդեալիզմն անմտություն է կոպիտ, պարզ մետաֆիզիկական մատերիալիզմի և ոչ երբեք դիալեկտիկական մատերիալիզմի տեսակետից։ Այս առումով անգնահատելի մեթոդոլոգիական նշանակություն ունի Լենինի դիտողությունը Հեգելի Տրամաբանության գիտության աշխատության կապակցությամբ։ Նա նշել է, որ «Հեգելի այս ա մ ե ն ա ի դ ե ա լ ի ս տ ա կ ա ն երկում ա մ ե ն ի ց քիչ իդեալիզմ կա, ա մ ե ն ի ց շ ա տ՝ մատերիալիզմ։ «Հակասական է», բայց փաստ է» (Երկեր, հ. 38, էջ 290)։

Փիլիսոփայության պատմության պրոցեսի դրական յուրացումը պահանջում է վերհանել իդեալիզմի ռացիոնալ կողմը, ճշմարտության այն հատիկները, որոնք հաճախ դրսևորվում են մանվածապատ դատողությունների մեջ։ Այս բխում է փիլիսոփայության պատմության ուսումնասիրության լենինյան մեթոդոլոգիայից։

Փիլիսոփայության պատմության ողջ ընթացքում մատերիալիզմն ու իդեալիզմը պայքարել են միմյանց դեմ։ Սակայն, դրանից չի հետևում, որ այդ հակոտնյա ուղղությունների զարգացումը մեկուսի է ընթացել և նրանք չեն գտնվել փոխադարձ ազդեցության ներքո։

Պատմականության սկզբունքը պահանջում է ցուցաբերել ուրույն մոտեցում, գտնել ուրույն չափանիշներ փիլիսոփայության երկու հիմնական ուղղությունների պայքարի բնույթը բացահայտելու ու գնահատելու համար։

Փիլիսոփայության պատմությունը փիլիսոփայական բազմաճյուղ գիտության կարևոր բնագավառներից է։ Փիլիսոփայության բազմադարյան պատմության լուսաբանումը մեծ չափով նպաստում է բազմակողմանիորեն բացահայտելու փիլիսոփայության ժամանակակից պրոբլեմները, օգնում մշակելու վերջիններիս զարգացման տենդենցներն ու հեռանկարները։

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ՌԿ(Բ)Կ ԱՍՏՐԱԽԱՆԻ ԵՎ ՍԱՐԱՏՈՎԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՍԵԿՑԻԱՆԵՐԸ

Հեղափոխությունից առաջ, հատկապես նրա հաղթանակի առաջին տարիներին, ՌԿ(բ)Կ իր սեկցիաների միջոցով ուժեղացրեց քաղաքական աշխատանքը ազգային փոքրամասնությունների շրջանում: Այդպիսիներից էին նաև Հայկական սեկցիաները, որոնք ստեղծվեցին Սովետական Ռուսաստանի այն վայրերում (Աստրախանում, Սարատովում, Դոնի Ռոստովում, Եկատերինոդարում (Կրասնոդար), Կիևում, Ղրիմում, Պոլտորացկում (Աշխաբադ) և մի շարք քաղաքներում, որտեղ կային մեծ թվով հայեր:

Աստրախանը Ռուսաստանի այն քաղաքներից էր, որտեղ հայերը բնակություն էին հաստատել դեռ շատ վաղուց: Այստեղ հայերի թիվը կրկնապատկվեց Արևմտյան Հայաստանում տեղի ունեցած 1915 թ. հայկական կոտորածներից և հատկապես Բաքվի կոմունայի անկումից հետո: Այդ տարիներին Աստրախանի հայ բնակչության թիվը հասավ շուրջ 15.000 մարդու: Նրանց շրջանում աշխատանք կատարելու համար կուսակցության մարզային կոմիտեի ցուցումով և հայ կոմունիստների նախաձեռնությամբ 1919 թ. կեսերին ստեղծվեց ՌԿ(բ)Կ Աստրախանի հայկական սեկցիա: Բայց, իրականում, հայկական սեկցիան գործել սկսել էր դեռևս 1918 թ. վերջերին՝ «հայ կոմունիստների խումբ» անվան տակ: Այդ խմբում աշխատում էին անվանի հեղափոխականներ Ա. Խումարյանը, Հ. Գյուլիքևխյանը, Ս. Զալաբյանը, Ի. Սահրադյանը, Հ. Լազյանը և ուրիշներ:

Բազմահազար հայ աշխատավորությանը և գաղթականությանը բուրժուա-նացիոնալիստական ուժերի ազդեցությունից դուրս բերելու համար՝ հայ կոմունիստների խմբի գլխավոր խնդիրներից մեկն էլ տնտեսապես և քաղաքականապես այդ ուժերին չեզոքացնելն էր: Հայ կոմունիստների խմբի և հայկական գործերի կոմիսարիատի Աստրախանի բաժանմունքի ջանքերով, տեղական սովետական մարմինների միջոցով լիկվիդացվում են բոլոր հակահեղափոխական կազմակերպությունները:

Աստրախանի և նրա շրջանների հայ աշխատավորությանը սովետական իշխանության գաղափարներին հաղորդակից դարձնելու և նրանց քաղաքական ինքնագիտակցությունը բարձրացնելու նպատակով՝ հայ կոմունիստների խումբը ձեռնամուխ է լինում հայերեն թերթի հրատարակման: Եվ ահա լույս է տեսնում «Կարմիր բանվոր» թերթի անդրանիկ համարը, որի առաջնորդողում կարդում ենք. «Մեր նպատակն է հայ աշխատավորությանը բացատրել այն, ինչ կատարվում է հեղափոխական Ռուսաստանում, ինչով ներկայումս ապրում, շնչում, տենչում է հեղափոխական մեծ Ռուսաստանի կարմիր բանվորը, լուսաբանել նրա մարտի ու իշխանության ուղին» («Կարմիր բանվոր», 7, 16 հունվարի, 1919):

Հայ կոմունիստների խմբի ջանքերով Աստրախանում հայ աշխատավորների համար բացվում են դպրոցներ, ճաշարան, հանրակացարաններ, հիվանդանոց, կազմակերպվում էին ժողովներ, դասախոսություններ, զրույցներ, գեղարվեստական ինքնագործունեության ելույթներ: Մեծ ուշադրություն էր նվիրվում աշխատավորների քաղաքական կրթության բարձրացմանը: Այդ խնդիրն ավելի հաջողությամբ իրագործելու համար՝ հայ կոմունիստների խումբը բաց է անում ակումբ:

Իրենց եռանդուն աշխատանքի շնորհիվ մեծանում էր հայ կոմունիստների խմբի հեղինակությունը, դրանով իսկ ավելի էր ընդլայնվում նրա գործունեության ոլորտը: Հայ կոմունիստների խումբն այն միջուկն էր, որի հիման վրա կազմվեց Աստրախանի կուսակցության մարզային կոմիտեի հայկական սեկցիան:

1919 թ. դեկտեմբերի սկզբներին հրավիրվում է կոնֆերանս, որտեղ քննարկվում է հայկական սեկցիա կազմելու խնդիրը: Կոնֆերանսի նախօրյակին հրապարակվում է ազգային փոքրամասնությունների Աստրախանի բաժնի դիմումը՝ ուղղված հայերին. «Ուշադրություն քաղաքացի հայեր, Ազգությունների գործերի բաժնին առընթեր... բացվում է ազգային փոքրամասնությունների ենթաբաժին, որին կից կազմակերպվում է հայկական սեկցիա: Դրա համար անհրաժեշտ է պարզել հայերի այն պահանջները, որոնք պետք է սպասարկվեն ազգբաժնից: Այս նկատառումով նշանակվում է հայ աշխատավորների կոնֆերանս, որին իրավունք է տրվում մասնակցելու հանրօգուտ աշխատանքով զբաղվող բոլոր քաղաքացիներին»:

Իր կազմավորման առաջին իսկ օրից Աստրախանի հայկական սեկցիայի առջև ծառացավ ագիտացիայի ու պրոպագանդայի ճիշտ դրվածքի հարցը: Սեկցիայի մեջ միավորված և նրան հարող համակրողների ու անկուսակցական աշխատավոր մասսաների ինքնագիտակցությունը խորացնելու և կոմունիստական կուսակցության ազդեցությունն ամրապնդելու նպատակով՝ սեկցիան իր աշխատանքի հիմքում դնում էր զրույցների, դասընթացների ու դասախոսությունների միջոցով կուսակցության ծրագրի մշտական պարզաբանումը: Քաղաքական ակտիվ գործիչներ պատրաստելու նպատակով՝ հիշված ակումբում բացվում է ագիտացիոն բյուրո: Իր գործունեության ընթացքում այդ բյուրոն բազմաթիվ ագիտատորներ պատրաստեց և ուղարկեց Հայաստան ու Կովկաս՝ քաղաքական աշխատանքի:

Սեկցիայի առջև ծառացած խնդիրներից մեկն էլ աշխատավոր մասսաների շրջանում հակակրոնական ագիտացիայի ու պրոպագանդայի կազմակերպումն էր ու ղեկավարումը: Թե որքան մեծ նշանակություն էր տրվում հակակրոնական պրոպագանդային, երևում է կուսակցության մարզային կոմիտեի՝ ազգային սեկցիաներին ուղարկած հրահանգում: Այնտեղ ասվում է. «Հատուկ ուշադրություն դարձնել մասսայական հիմնարկություններում կրոնական ռեակցիոն տենդենցների դեմ մղվող պայքարի վրա, հակակրոնական ագիտացիա և քաղգրագիտական խմբակներ կազմակերպելով»[1]: Այդ նպատակով սեկցիան լայն մասսաների համար մատչելի էր դարձնում բնապատմական գիտելիքները՝ հրատարակելով հակակրոնական բնույթի գրքույկներ, կազմակերպելով դասախոսությունների սիստեմատիկ ցիկլեր, «Կարմիր բանվոր»-ում տպագրելով հոդվածներ:

Հայկական սեկցիան կազմակերպում էր նաև ինտերնացիոնալ երեկոներ, ազգային սեկցիաների փոխադարձ զեկուցումներ և դասախոսություններ: Սեկցիաների ընդհանուր ժողովներին մասնակցում են նաև հյուրեր մյուս սեկցիաներից:

Հայկական սեկցիայի նախաձեռնությամբ հայկական և հրեական մանկատների միջև ստեղծվել էր փոխօգնության կոմիտե, նրանց մեջ հաստատվել էր սերտ համագործակցություն: Այդ մասին ազգային փոքրամասնությունների ենթաբաժնի զեկուցագրում ասվում է. «Քաղաքում հրեական և հայկական փոխօգնության կոմիտեների միջև կնքվել է պայմանագիր՝ հրեական ու հայկական մանկատները նյութապես ապահովելու համար»[2]: Շուտով հայկական և հրեական փոխօգնության կոմիտեների համագործակցությունն ընդգրկում է կուլտ-լուսավորական բաժինը: «Քաղաքում գոյություն ունեն հայկական և հրեական փոխօգնության կոմիտեներ, որոնք նպատակ ունեն նյութապես աջակցել ազգային լուսավորական հիմնարկներին»[3],— ասվում է նույն զեկուցագրում:

Հայկական ու հրեական սեկցիաների այդ լավ նախաձեռնությանը հետևում են նաև Աստրախանի մարզի ազգային մյուս սեկցիաները: Այդ նպատակով սեկցիաների ներկայացուցիչների մասնակցությամբ տեղի է ունենում ժողով, որտեղ մշակվում է կուլտ-լուսավորական բնագավառի փոխադարձ օգնության միասնական մի կանոնադրություն. «Ազգային փոքրամասնությունների կոմունիստ պատասխանատու աշխատողների ժողովի որոշմամբ մշակվել է նոր կազմակերպվող՝ հրեաների, հայերի, գերմանացիների, թաթարների և կիրգիզների կուլտ-լուսավորական միացյալ ընկերության միասնական կանոնադրություն: Ընկերության գլուխ անպայման պետք է կանգնած լինի ՌԿԿ նահանգային կոմիտեի անդամը»[4]:

Նոր տնտեսական քաղաքականության շրջանում սեկցիայի աշխատանքի բովանդակությունն ու մեթոդները նույնպես փոխվեցին նոր պայմանների համեմատ: Իր պրոպագանդիստական աշխատանքում սեկցիան հիմնականում կողմնորոշվում էր տնտեսական ուղղությամբ՝ հայ աշխատավորությանը ծանոթացնելով այն բանի հետ, ինչ կուսակցությունն անում էր տնտեսական փլուզման դեմ մղվող պայքարում:

[1] ГААО, ф. 1362 по. 1, д. 2472, л. 253.

[2] *Նույն տեղը*, л. *237:*

[3] *Նույն տեղը*, д. *242*, л. *238:*

[4] ГААО, ф. 1362, оп. 1, д. 2472, л. 238.

Աստրախանի մարզի ազգային փոքրամասնությունների կյանքում խոշոր իրադարձություն էր ազգային փոքրամասնությունների I համագումարի բացումը, որը տեղի ունեցավ 1921 թ. նոյեմբերի 26—28-ին: Համագումարը վերլուծեց և գնահատեց ազգային սեկցիաների կատարած աշխատանքները, վեր հանեց եղած թերությունները, նշեց այն ուղիները, որով պետք է ընթանար նրանց գործունեությունը:

Ազգային փոքրամասնությունների I համագումարից անմիջապես հետո, սեկցիան կազմակերպում է հայ անկուսակցականների կոնֆերանս, որտեղ քննարկվում են համագումարի արդյունքների, նոր տնտեսական քաղաքականությանն անցնելու, կուլտուր-լուսավորական աշխատանքների բարելավման հարցերը: Համագումարի աշխատանքի մասին տրված զեկուցման առթիվ ընդունված բանաձևում ասվում է. «Կոնֆերանսը գոհունակությամբ լսեց զեկուցումը և ցանկություն հայտնեց, որ համագումարի բանաձևը մոտ ապագայում իրագործվի կյանքում»[1]: Կոնֆերանսը միջոցառումներ մշակեց ժողովրդական տնտեսության վերականգնման գործին հայ աշխատավոր լայն մասսաների մասնակցությունն ապահովելու համար:

Հայաստանում սովետական իշխանության հաղթանակից հետո սկսվում է հայ գաղթականների մասսայական հայրենադարձությունը: Հայաստան, կուսակցական աշխատանքի են մեկնում նաև սեկցիայում աշխատող բազմաթիվ կոմունիստներ: Նրանցից շատերն ակտիվ մասնակցում են Հայաստանում քաղաքացիական կռիվներին: Այդ կռիվներում իր անունը փառքով է պսակում Ստ. Զալաքյանը, որը, բացի սեկցիայում աշխատելուց, եղել է Ս. Մ. Կիրովի անձնական քարտուղարը: Դաշնակցականների դեմ մղվող մարտերի ժամանակ նա զոհվում է:

Հայ աշխատավորության և սեկցիայում աշխատող կոմունիստների Հայաստան մեկնելուց հետո էլ, սեկցիան, որը վերանվանվել էր որպես ազգային փոքրամասնությունների հայկական ենթաբաժին, շարունակում էր գործել: Բայց ենթաբաժնի գործունեությունն արդեն սահմանափակ էր և հիմնականում ուղղված էր կուլտուր-լուսավորական աշխատանքներին: Ենթաբաժինը 1926 թ. հետո փաստորեն դադարեց գոյություն ունենալուց:

Սարատովում հայկական սեկցիա ստեղծվեց նույն ժամանակ, ինչ Աստրախանում: Այստեղ ևս, մինչև հայկական սեկցիայի կազմակերպումը, գործում էր հայ կոմունիստների խումբը:

Սարատովի հայ կոմունիստների խումբն ստեղծվել է 1918 թ. նոյեմբերի սկզբին: ՌԿ(բ)Կ Սարատովի մարզային կոմիտեի անկետային այն

[1] ЦГАОР, ф. 1318, оп. 1, д. 881, л. 4.

հարցին, թե ե՞րբ և ո՞վ է կազմակերպել հայ կոմունիստների խումբը, պատասխանում է՝ 1918 թ. նոյեմբերին, Հայկազ Կոստանյանի նախաձեռնությամբ: Մինչև հայ կոմունիստների խմբի առաջացումը Սարատովի մարզի հայ աշխատավորության շրջանում քաղաքական աշխատանք էր տանում հայ ուսանողական հեղափոխական կոմիտեն: Հայ կոմունիստների խումբը կազմակերպվելուց հետո, ուսանողական հեղափոխական կոմիտեն դադարեցնում է իր գործունեությունը, իսկ նրա անդամները մտնում են այդ խմբի մեջ:

Հայ կոմունիստների խմբին կից ստեղծվում է համակրողների բջիջ, որի անդամները ընդունվում են կուսակցության շարքերը:

Սովետական իշխանության գաղափարները հայ բանվորների ու գյուղացիների լայն խավերի շրջանում պրոպագանդելու և սովետական կարգերի ամրապնդման միջոցառումներին ծանոթացնելու համար, հայ կոմունիստների խումբն անց էր կացնում բազմաթիվ ու բազմապիսի դասախոսություններ, զրույցներ, համերգ-միտինգներ: Այդ նպատակով խումբը 1919 թ. մայիսի 1-ին բացել էր ակումբ, որին տվել էր բոցաշունչ հեղափոխական Ստ. Շահումյանի անունը: Ակումբում կարդացվող դասախոսությունների ու ռեֆերատների նկատմամբ ցուցաբերվում էր մեծ պահանջկոտություն[2]:

Հայ կոմունիստների խմբի ջանքերով, 1918 թ. վերջերին, Սարատովում հրատարակվում է «Կայծ» շաբաթաթերթը, որը, մի քանի համար լույս տեսնելուց հետո, վերածվում է «Բյուլետեն»-ի: «Բյուլետեն»-ը հրատարակվում է մինչև 1919 թ. սկզբները:

Չնայած իր կարճատև կյանքին՝ հայ կոմունիստների օրգանն զգալի դեր խաղաց տեղի հայ աշխատավոր մասսաների շրջանում կոմունիստական գաղափարներ պրոպագանդելու գործում:

1919 թ. նոյեմբերի 26-ին տեղի է ունենում հայ կոմունիստների խմբի կազմակերպական ժողովը՝ հայկական սեկցիա ստեղծելու նպատակով:

Իր գործունեությունը հայ կոմունիստների խումբը սկսել էր 16 կոմկուսակցության անդամով և 10 համակրողով: Մեկ տարի անց, հայկական սեկցիա կազմակերպելու պահին, այն համարյա կրկնապատկվել և հասել էր 50 անդամի և համակրողի: Այդ հանգամանքը հնարավորություն էր տալիս ավելի աշխուժացնելու սեկցիայի գործունեությունը:

Սարատովի հայկական սեկցիան իր ամենօրյա ագիտացիոն-պրոպագանդիստական և կուլտուր-լուսավորական աշխատանքներում չէր սահմանափակվում միայն սեկցիայի անդամներով, այսինքն՝ կուսակցականներին ու համակրողներին առաջադրանքներ տալով, այլև իր գործունեությանը ներգրավում էր սովետական իշխանությանն անկեղծորեն նվիրված անկուսակցականներին: «Քաղաքում գտնվող 400 հայ արհեստավորներ ու գաղթականներ հիմնականում համարվում են սեկցիայի գլխավոր հենարանը»[1],— ասվում է սեկցիայի՝ կուսակցության մարզային կոմիտեին տված զեկուցագրում: Սրանց համար սեկցիան բաց է անում քաղգրագիտական դպրոց, որտեղ ուսուցվում էր հեղափոխությունների պատմություն, ռուսաց լեզու, անցկացվում էին գիտահանրամատչելի զրույցներ՝ քաղաքատնտեսությունից: Դպրոցում ընդգրկված էր 36 ունկնդիր: Դասընթացներն ավարտելուց հետո նրանք պետք է շարունակեին սովորել նոր կազմավորվող կուսակցական դպրոցում:

[2] Տե՛ս ПАСО, ф. 27, оп. 2, д. 174, л. 7.



Բանավոր ագիտացիայի բնագավառում լայն գործունեություն էին ծավալել անհատական և խմբակային ագիտատորները, որոնք միշտ շրջվում էին աշխատավորների հետ: Միտինգներից մեկում հայ աշխատավորները, դեռևս տեղյակ չլինելով Բաքվի կոմունայի հերոս գործիչների ողբերգական մահվան մասին, «Հայերը և սովետական իշխանությունը» թեմայով դասախոսությունը լսելուց հետո, ընդունում են հետևյալ բանաձևը. «Մենք, չքավոր հայերս, շպրտված հարազատ վայրից հեռավոր Ռուսաստան, քննարկելով Կովկասում ընթացիկ մոմենտը և մասնավորապես Բաքվի իրադարձությունները, նզովում ենք հայ պրոլետարիատի բոլոր թշնամիներին, որոնք մտադիր են մեր երկիրը մատնել հրի ու սրի, դարձնելով այն իմպերիալիստական սպանդանոցի թատերաբեմ:

Մենք մեր ողջ էությամբ բողոքում ենք մեր թանկագին առաջնորդ Ստ. Շահումյանի ձերբակալության դեմ և պահանջում ամբողջովին դադարեցնել հալածանքները, որոնք անզոր են քանդել մեր միասնությունը»[2]:

Նման բանաձև է ընդունվում նաև Գերմանիայում հեղափոխության առաջնորդներ Կ. Լիբկնեխտի և Ռ. Լյուքսեմբուրգի գազանային սպանության առթիվ:

Սեկցիայի գործունեությունը չէր սահմանափակվում միայն բուն քաղաքում կատարվող քաղաքական և կուլտուր-լուսավորական աշխատանքով, այլև միջոցառումներ էին մշակվել մարզի հայ աշխատավորների քաղաքական դաստիարակության նպատակով: Հատուկ ուշադրություն էր նվիրվում նրանց շրջանում սոցիալիստական գրականության տարածմանը: Հայկական սեկցիան բազմաթիվ միջոցառումներ էր անցկացնում՝ հայ աշխատավորությանը Սարատովի մարզի մյուս ազգություններին մերձեցնելու նպատակով: Կազմակերպվում էին ինտերնացիոնալ երեկոներ, դասախոսություններ և միտինգներ: Առանձնապես սերտ հարաբերություն էր հաստատվել պարսկական և հայկական սեկցիաների միջև: Չնայած, որ պարսիկներն այստեղ զգալի տոկոս էին կազմում, բայց պարսիկ կոմունիստները, սակավաթիվ և անփորձ լինելու հետևանքով, չէին կարողանում արդյունավետ աշխատանք կատարել: Պարսիկ կոմունիստներին օգնելու նպատակով՝ պարսկական սեկցիայի խնդրանքով հայկական սեկցիան այնտեղ էր ուղարկել իր երկու անդամներին, որոնք պարսկական սեկցիայի ընդհանուր ժողովում ընտրվել էին նրա բյուրոյի անդամ: Որպեսզի աշխատավորների շրջանում տարվող քաղաքական աշխատանքն ավելի աշխուժացվի, պարսկական սեկցիան որոշել էր միավորել պարսկական և հայկական սեկցիաները: Քննարկելով պարսկական սեկցիայի առաջարկությունը՝ հայկական սեկցիայի ընդհանուր ժողովը որոշում է. «ա) Հայկական սեկցիան համալրել պարսիկ կոմունիստներով՝ համապատասխանաբար վերանվանելով հայ-պարսկական սեկցիա, բ) նախագահությունը լրացնել պարսիկ և ասորի կոմունիստներով, գ) լուրջ աշխատանք տանել պարսիկ աշխատավորների շրջանում»[3]: Պարսկական և հայկական սեկցիաների որոշումն ուղարկվում է հաստատման կուսակցության մարզային կոմիտեին:

Քաղաքացիական կռիվների ամենավճռական շրջանում, երբ Սովետական Ռուսաստանը մահու և կենաց կռիվ էր մղում սպիտակգվարդիական գեներալների և իմպերիալիստական ռեակցիոն ուժերի դեմ, պրոլետարական հեղափոխության նվաճումները պահպանելու համար, ազգային սեկցիաների գործունեությունը հիմնականում ուղղված էր աշխատավորության ուժերի մոբիլիզացմանը՝ սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար: Կարմիր բանակը հայ հայրենասեր աշխատավորներով համալրելու նպատակով՝ սեկցիան ագիտացիոն և պրոպագանդիստական եռանդուն գործունեություն էր ծավալում: Նա տարածում էր թռուցիկներ, կոչեր, կազմակերպում դասախոսություններ, միտինգներ և զրույցներ, իսկ գեղարվեստական միջոցառումներից ստացված գումարները հատկացնում ռազմանակատի ֆոնդին:

Սոցիալիստական հայրենիքի նկատմամբ տածած անսահման սերը, նրա ճակատագրի հանդեպ ունեցած մտահոգությունը հանգիստ չեն տալիս սեկցիայի անդամներին և հատկապես նրանցից երեքին՝ Անդրանիկ, Հակոբ և Հարու-

[1] Նույն տեղը, ց. 3, գ. 551, թ. 5:

[2] ПАСО, ф. 27, оп. 2, д. 174, л. 121.

[3] ПАСО, ф. 27, оп. 3, д. 551, л. 14.

մայրաքաղաքի մթնոլորտն են արտանետում հազարավոր տոննա մուր: Ոստիկաններն ստիպված են աշխատանքի ժամանակ երբեմն դիմել թթվածնի դիմակների: Թունավոր նյութերի թանձր, առողջության համար խիստ վտանգավոր մառախուղով է հաճախ պատվում ԱՄՆ-ի մեծագույն քաղաքը՝ Նյու-Յորքը, որտեղից այն անցնում է Վաշինգտոն, Ֆիլադելֆիա, Բալթիմոր և այլուր: Եվ, այսպիսի պայմաններում, ողջ հույսը մարդկանց օրգանիզմի հարմարվողականությունն է. բայց ահա թե ինչ է գրում Ռոկֆելերյան համալսարանի՝ մթնոլորտի կենսաբժշկական ուսումնասիրությունների ամբիոնի ղեկավար Ռենե Դյուբոն. «Համոզված եմ, որ մենք կարող ենք հարմարվել աղտոտվածությանը, Նյու-Յորքի և Տոկիոյի թունավորված օդին ու աղմուկին... Բայց հենց դրանում է իսկական ողբերգությունը: Էկոլոգիական ճգնաժամն սպառնում է ոչ թե մարդուն, այլ կյանքի մարդկային էությանը, այն հատուկ ունակություններին ու որակին, որոնցով մարդկային կյանքը տարբերվում է անասնականից»:

Բնությունը չպետք է աղտոտել այնքան, որ այն վրեժ լուծի մարդուց իր նկատմամբ անհոգի վերաբերմունքի համար: Իսկ իր կյանքը կարգավորելու համար մարդը կարող է օգտագործել աշխարհի բազմազանությունները, հանդես գալով ոչ թե իբրև բնության նվաճող, այլ անընդհատ արարչագործության մասնակից: Հակառակ դեպքում նա կգոյատևի միայն, կորցնելով իր մարդկային էության մի մասը,— գրում է Ռենե Դյուբոն:

Այս տագնապը հիմնավոր է ողջ աշխարհի համար: Հնդկաստանի ջերմաէներգիայի հիմնական աղբյուրը քարածուխն է. 1966 թ. այնտեղ սպառվել է մոտ 110 մլն տոննա քարածուխ. եթե հաշվի առնենք, որ գործածվող քարածխի 85 տոկոսն ունի 25 տոկոս մոխրայնություն, ապա ակնհայտ կդառնա, թե որքան անհրաժեշտ է կանխել մոխրի հսկայական քանակության արտանետումը մթնոլորտ: Ամբողջ աշխարհում տարեկան այրվում է 2 մլրդ տոննա քարածուխ, մոտ 1 մլրդ տոննա նավթ, վերամշակվում են մոտ 2 մլրդ տոննա հանքային և ոչ-հանքային սորուն նյութեր:

XX դարը կիբեռնետիկայի, ատոմային էներգիայի, տիեզերական թռիչքների, նաև ավտոմոբիլների դար է: 200 մլն ավտոմոբիլ ամբողջ աշխարհում անընդհատ արտանետում են ածխածնի և ազոտի օքսիդներ, կապարի միացություններ, կանցերոգեն (քաղցկեղահարույց) ածխաջրածիններ և մարդու առողջության համար սաստիկ վնասակար տասնյակ այլ նյութեր: 1966 թ. ԱՄՆ-ում ավտոմոբիլներն օրական գործածել են 600 հազար տոննա բենզին և ամեն օր մթնոլորտ արտանետել 9 մլն տոննա գազ, որից 270 հազարը ածխաջրածիններ, ածխածնի ու ազոտի օքսիդներ և այլն: Այսպես, Հռոմի ծանրաբեռնված առանձին խաչմերուկներում օդում կա 560 մգ/մ$^3$ ածխածնի օքսիդ, Լոնդոնի՝ 450 մգ/մ$^3$, Մյունխենի՝ 375 մգ/մ$^3$:

Լենինգրադի և Երևանի օդային միջավայրի համեմատությունը ցույց է տալիս, որ աղտոտման աստիճանը երկու քաղաքներում մոտավորապես նույնն է: Միաժամանակ հայտնի է, որ Լենինգրադում մի քանի անգամ ավելի շատ ավտոմոբիլ է բանում, քան Երևանում: Հապա ինչո՞ւ է այդպես: Պատճառն այն է, որ Լենինգրադում ավելի լավ է կազմակերպված ավտոմոբիլային տրանսպորտի շարժումը, կառուցված են շատ մայրուղիներ, որոնք հատվում են տարբեր բարձրություններում, կիրառվում են շարժումը կարգավորող զանազան ավտոմատ սիստեմներ, կազմակերպված է ավտոտրանսպորտի տեխնիկական վիճակի խիստ վերահսկողություն և այլն: Այնտեղ ավտոտրանսպորտը շահագործվում է շարժման մեծ արագություններով, ուստի, ավելի քիչ թունավոր նյութեր են արտանետվում: Մեր մայրաքաղաքում դրությունն զգալիորեն վատ է: Այստեղ նույնիսկ նոր բնակելի թաղամասեր կառուցելիս չեն օգտագործվում այն նորագույն նվաճումները, որոնք հնարավորություն են ընձեռում բարելավելու ավտոմոբիլային տրանսպորտի շարժումը: Երևանում շատ քիչ են ստորգետնյա անցումները և տրանսպորտային մայրուղիների ժամանակակից ճամփաբաժանները: Դրա հետևանքով ավտոտրանսպորտը շարժվում է փոքր արագությամբ ու հաճախակի կանգառներով և ավելի շատ վնասակար նյութեր է արտանետում: Այդ մասին են վկայում նաև Երևանի սանէպիդկայանի, ՀՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության լաբորատորիաների ուսումնասիրությունները:

Քաղաքների օդավազանի մաքրման պրոբլեմը հնարավոր է լուծել, թերևս, էլեկտրամոբիլների ստեղծմամբ: Երևանում ևս նախագծվում են էլեկտրամոբիլներ:

ՍՍՀՄ-ում, ԱՄՆ-ում, ԳԴՀ-ում և մյուս երկրներում կատարված հետազոտությունները ցույց են տվել, որ ինտենսիվ ավտոմոբիլային շարժում ունեցող քաղաքների մթնոլորտի օդն աղտոտված է կանցերոգեն նյութով՝ բենզապիրենով: Լոս-Անջելոսի օդում հայտաբերվել է 3,0 մկգ/100$^3$ բենզապիրեն: Այն քաղաքներում, որտեղ տրանսպորտն աշխատում է էթիլային բենզինով, մթնոլորտի օդն աղտոտված է նաև կապարի միացություններով:

Մթնոլորտն աղտոտող նյութերի վնասակար հատկություններն զգալիորեն կախված են օդերևութաբանական պայմաններից: Մեծ քանակությամբ ածխաջրածիններ և ազոտի օքսիդներ պարունակող օդում, արեգակի ճառագայթման հետևանքով, գոյանում է թունավոր ֆոտոքիմիական «սմոգ» մառախուղը, որը ոչնչացնում



է բույսերը, դրգռում աչքերը և վնասում տեսողությանը. այն դարձել է մեծ աղետ Լոս-Անջելոսի, Սան-Ֆրանցիսկոյի, Կալիֆոռնիայի շատ քաղաքների բնակիչների համար:

Մեծ մասամբ մառախլապատ և քամազուրկ Լոնդոնում վերջին 15 տարիներին արձանագրված են ավտոմոբիլների արտանետած գազերից մարդկանց թունավորման մի քանի դեպք: 1952 թ. վերջերին մի քանի օրվա ընթացքում մեռել է մոտ 4000 մարդ: Այդ թիվն զգալիորեն գերազանցում է 1886 թ. խոլերայի համաճարակի, երկու անգամ՝ Վեզուվի (79 թ.) ժայթքման զոհերի թվին:

Կուտակումների հավասարման, թունավոր աղտոտությունների ցրման, մթնոլորտի աղտոտված ու մաքուր շերտերի խառնման պրոցեսը, արդյունաբերական թափոնների ստացման համեմատությամբ, դանդաղ է կատարվում: Մրրիկն ու քամին չեն կարողանում մեծ քաղաքների և արդյունաբերական խոշոր կենտրոնների օդավազանից հեռացնել արտադրական ձեռնարկությունների և ավտոտրանսպորտի՝ ավելի մեծ չափերով արտանետվող թունավոր նյութերը: Օդի աղտոտման հետևանքով մթնոլորտը պակաս թափանցիկ է դառնում և, հետևաբար, կլանում է արևի ճառագայթման առավել արժեքավոր մասը՝ ուլտրամանուշակագույն ճառագայթները, որոնք անհրաժեշտ են բոլոր մարդկանց, առաջին հերթին՝ երեխաներին: Մթնոլորտի աղտոտումը վնասակար ազդեցություն է գործում բնակչության առողջության, նրա կյանքի սանիտարա-հիգիենիկ պայմանների վրա: Առավել տագնապալի է քաղցկեղով և, մասնավորապես, թոքերի քաղցկեղով հիվանդների թվի աճը: Այն ամենից արագ է աճում Անգլիայում:

Աշխարհի որոշ գիտնականներ գտնում են, որ մթնոլորտի օդի աղտոտումը կարող է փոխել միկրո և, նույնիսկ, մակրոկլիման: Իսկ դա, առաջին հերթին կապում են մթնոլորտում ածխաթթու գազի պարունակության ավելացման հետ: Վերջին հարյուրամյակում արդյունաբերական ձեռնարկությունները մթնոլորտ են նետել 300 միլիարդ տոննա ածխաթթու գազ, նրա խտությունն ավելացել է 13 տոկոսով:

Օդավազանն աղտոտումից պաշտպանելը ո՛չ միայն գիտատեխնիկական, այլև սոցիալական կարևորագույն խնդիր է: Օդի մաքրության պրոբլեմի սոցիալական կողմին հատկապես մեծ նշանակություն է տրվում մեր երկրում, որտեղ հոգատարությունը մարդու նկատմամբ կուսակցության ու պետության քաղաքականության հիմքն է: ՍՄԿԿ XXIII համագումարում ընդունված կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ծրագիրը, երկրի արդյունաբերության զարգացման հետ մեկտեղ, նախատեսում է նաև բոլոր քաղաքների ու բանավանների բարեկարգում, այն է՝ բնակչության կենսապայմանների բարելավում, կանաչապատում, ոռոգում և պայքար մթնոլորտի աղտոտման դեմ: Սովետական իշխանության տարիներին շատ բան է արվել քաղաքների վերակառուցման, բնակարանային պայմանների բարելավման, կուլտուր-կենցաղային սպասարկման, առողջապահության, հանգստի, սպորտի և այլ հիմնարկությունների ցանցի զարգացման, ընդլայնման ասպարեզում:

Սովետական Միությունն աշխարհում առաջին երկիրն է, որի օրենսդրության մեջ սահմանված են մթնոլորտի աղտոտումների թույլատրելի կուտակումների սահմանները:

Մթնոլորտի օդի մաքրության գնահատման համար ՍՍՀՄ-ում ընդունված է երկու ցուցանիշ— մի անգամվա առավելագույն և օրական միջին թույլատրելի կուտակումների սահման. ցուցանիշներ, որոնց հիմքում դրված է մարդու օրգանիզմի վրա թունավոր նյութերի ռեֆլեկտորային (կարճատև) և ռեզորբտիվային-խրոնիկական ներգործության կանխումը:

Մթնոլորտի աղտոտման կուտակման թույլատրելի սահմանն այնպիսի կուտակումն է, որը մարդու վրա ուղղակի կամ անուղղակի վնասակար կամ տհաճ ազդեցություն չի գործում, չի իջեցնում նրա աշխատունակությունը, բացասաբար չի անդրադառնում ինքնազգացողության և տրամադրության վրա:

Մթնոլորտի օդի պահպանման սանիտարական հսկողության հիմքում դրված հիգիենիկ նորմատիվները հնարավորություն են տալիս հուսալիորեն կանխատեսելու օդի աղտոտման հավանականությունն արդյունաբերական օբյեկտների շրջանում գտնվող բնակավայրերում: Այժմ հիգիենիկ նորմատիվներ են սահմանված 96 նյութերի և 17 կոմպլեքսների համար:

Արտադրության տեխնոլոգիայի փոփոխման ասպարեզում մեր երկրում կիրառվող միջոցառումներն ամբողջովին կամ զգալիորեն կրճատում են վնասակար նյութերի արտանետումը մթնոլորտ. գազամոխրափոշեորսիչ, ռեկուպերացիոն (թափուկների վերօգտագործման) սարքերի ստեղծումը, գազիֆիկացիան, էլեկտրիֆիկացիան և ջերմաֆիկացիան պլանավորող և այլ միջոցառումներ հնարավորություն ընձեռեցին՝ զգալիորեն նվազեցնելու մթնոլորտի օդի աղտոտումը երկրի մի շարք քաղաքներում ու արդյունաբերական կենտրոններում:

Մթնոլորտի օդի աղտոտման տեսակետից մեր երկիրը, իհարկե, չի կարելի համեմատել Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ: Սակայն մեզ մոտ ևս դրությունը բավական լուրջ է: Մթնոլորտում եղած վնասակար նյութերի կուտակումները գերազանցում են թույլատրելի կուտակումների նորմաները:

Մթնոլորտի օդն զգալի չափով աղտոտում են և ջերմաէլեկտրակայանները, որոնք աշխատում են կարծր ու հեղուկ վառելիքով, ինչպես և շի-

ռուստացույցներ, լվացքի մեքենաներ և այլ հարմարանքներ։ Բնակչության կուլտուրական բարձր մակարդակի ցուցանիշն են գրքերը, լրագրերը, ամսագրերը... Գրեթե բոլոր գյուղերը կապված են իրար ասֆալտապատ ճանապարհներով, լայնահուն երթուղիների կառուցումն արագ տեմպերով շարունակվում է։

Անհնար է չնշել, որ ծաղկող գյուղերի ու բանավանների զարգացման բնույթով ու ընթացքով Հայաստանը գերազանցում է մեր Միության շատ գյուղերի, բանավանների։

Ուրախալի, հաճելի էր տեսնել գյուղական կյանքի արմատական, վիթխարի վերակառուցումը Սովետական Հայաստանում՝։

Որպեսզի գալիք սերունդներին և այժմյան երիտասարդությանը չթվա, թե շատ քիչ բան է փոխվել, մեր կարծիքով, անհրաժեշտ է հին քաղաքի տերիտորիայում, առանձին շրջաններում, բանվորական խոշոր ավաններում պահպանել որոշ հին տներ, դարձնել դրանք տեղական, գավառագիտական թանգարանի մասնաճյուղը, իսկ մի մասն էլ, համապատասխան վերականգնումից, վերակառուցումից հետո, հատկացնել բնակիչներին։

Հայաստանում աչքի է զարնում ուրախալի մի առանձնահատկություն. բնակչության մեծ մասը գիտե ռուսերեն։ Գուցե դրանով (և ո՛չ միայն դրանով) է բացատրվում, որ ամենուրեք, թե՛ քաղաքում, թե՛ գյուղում, տարբեր մարդկանց հետ հաղորդակցվելիս, միշտ էլ զգացել ենք, որ շրջապատված ենք հարազատ մարդկանցով։ Իմ՝ հայերեն չիմացողիս նկատմամբ մարդիկ ամենուրեք զգայուն էին, սիրալիր։ Պետք է խոստովանել, որ ազգային հանրապետություններից մի քանիսում տեղական լեզվին չտիրապետելու հետևանքով, շատ անհարմար վիճակում ենք եղել։ Այդպիսի պատահականություններից զերծ մնացինք Հայաստանում։

Հայ ժողովուրդը գիտե և սիրում է իր պատմությունը, գրականությունը։ Բոլորովին պատահական մարդիկ մեծ հաճույքով հանգամանորեն պատմում էին հին դարերի, նոր պատմության ու գրականության, ամեն քայլափոխի հանդիպող հուշարձանների մասին։ Դա շատ հաճելի էր։ Եվ մենք ցավով հիշեցինք, որ լայնածավալ Ռուսաստանում պատմական հուշարձանները պահպանվել են միայն հյուսիս-արևմտյան և եվրոպական մասի կենտրոնում։

Բնակչությունն այստեղ այնպես քաջատեղյակ է պատմությանը. ուստի և առավել տարօրինակ էր էքսկուրսավարների ակներև սակավիմացությունը. նրանք հաճախ սահմանափակվում էին վերապատմելով հուշատախտակի վրա գրված համառոտ բովանդակությունը— կառուցվել է այսինչ թվականին, քանդվել այսինչին, վերակառուցվել այսինչին և վերջացնում «պահպանվում է պետության կողմից» նախադասությամբ։

Հայաստանն, անշուշտ, սովետական և արտասահմանյան տուրիստների համար հետաքրքրաշարժ հուշարձաններով հարուստ երկիր է։ Ահա թե ինչու էքսկուրսավարի պարտականությունը միայն իրեն հանձնված խումբը տվյալ վայրը բերելը չէ, այլ նրանց հոգում հետաքրքրասիրություն հարուցելը, իր՝ ոգևորությամբ պատմածը բալլադներով, լեգենդներով համեմելը։ Այսպես, օրինակ, հայտնի է, թե ինչու է հենց Գառնիում կառուցվել այդ բերդ-ամրոցը։ Երեք կողմից այն շրջափակված է ժայռակոփ զառիթափերով, կիրճերն ու խորխորատներն էլ լրացուցիչ պատ են հանդիսացել պատմական այն պայմաններում և ունեցել են պաշտպանական նշանակություն։ Չորրորդ կողմից մի քանի մետրանոց հաստ, բարձր պատն անմատչելի է դարձրել այդ բերդը։

Բոլորովին այլ է Գեղարդը։ Այրիվանքի կառուցման պատմությունն առանց ավանդական լեգենդի մեկնաբանության ճիշտ չի լինի։ Դրանցից մեկում ասվում է, որ քարայրի մենաստանը հիմնադրվել է քրիստոնեություն տարածող Գրիգոր Լուսավորչի կողմից, որը փրկվելով հեթանոսների հետապնդումներից, ապաստանեց այս քարայրում։ Մենաստանի առաջացման բավականին հավանական բացատրությունն է այդ։ Ցավոք, նույնիսկ Ս. Ա. Սահինյանն իր Գառնի և Գեղարդ վերտառությամբ գրքում (Երևան, 1969), նշելով, որ Գեղարդը գոյություն է ունեցել դեռևս IV դարից, ավանդույթներ ու լեգենդներ չի հիշատակում. այդ կհարստացներ գրքի բովանդակությունը, կըմեծացներ հետաքրքրասիրությունն ինչպես պատմական այդ հնության, այնպես և օգտակար ու հաջողված այս գրքի նկատմամբ։

Անուշադրության են մատնված պատմական հուշարձանները Սևանում, հատկապես՝ ս. Կարապետի եկեղեցին։ Էքսկուրսավարները լռելյայն անցնում են կանգուն շենքի և փլված բեկորների միջով, նայում քարակույտերին, կարդում շինարարության ժամկետի լակոնիկ հուշատախտակն ու հեռանում տարբեր վայրերից եկած այցելուների հետ, որոնց համար անհասկանալի են մնում տվյալ շինության կառուցման պատճառները և այլն...

Պատմական հուշարձանները պատշաճ ձևով պահպանելու, ինչպես և սովետական ու արտասահմանյան տուրիստներին պատշաճ ձևով ըսպասարկելու նպատակով լավ կլիներ Էջմիածնի մայր տաճարի, Գեղարդի Այրիվանքի նըման, վերանորոգել նաև մի շարք այլ հնագույն եկեղեցիներ։

Ինչո՞ւ միայն հնությունները։ Ցավով ենք նըշում, որ Գյումուշի հիդրոէլեկտրակայանի աշխատակիցը չկարողացավ բացատրել, թե ինչո՞ւ վայրկյանում 90 խ. մ. ջրի թողունակությամբ օժտված կայանն այժմ վայրկյանում ըստանում է ընդամենը 5 խ. մ. ջուր։ Ստացվեց այն տպավորությունը, որ այդ հիանալի ՀԷԿ-ը (ինչպես և Սևան—Հրազդան հիդրոհանգույցի մյուս կայանները) պիտանի չէ։ Էքսկուրսավարը չուներ ամբողջ հիդրոհանգույցի սխեման և մոռացավ ասել, որ այդ հանգույցի բոլոր հիդրոէլեկտրակայանները բանում են միայն Սևանից արտահոսող, Արարատյան դաշտավայրի ոռոգման համար նախատեսվող ջրի հաշվին։

Ինչ խոսք, վերջին տարիներս իջնում է էլեկտրաէներգիա ստանալու նպատակով օգտագործվող ջրի տեսակարար կշիռը, քանի որ դրա համար նոր աղբյուրներ են հայտնագործվել (գազ, նավթ և այլն), բացի դրանից Արփա-Սևան կառույցի ավարտից հետո հնարավոր կըլինի մեծացնել հանգույցի ՀԷԿ-երի կարողությունը։ Անշուշտ, զարմանալի չէ, որ փոխվել է կառույցների դերը. միայն հարկ է որ այդ ամենը պատշաճ լուսաբանվի, բացատրվի այցելուներին։ Դրա համար անհրաժեշտ են բանիմաց էքսկուրսավարներ։

Հավանաբար կգտնվեն Սովետական Միության հնագույն ժողովուրդներից մեկի տեսարժան վայրերի կազմակերպված ու անկազմակերպ տուրիզմի ծավալման և ինֆորմացիայի նորանոր ձևեր։ Մեր կարծիքով, լավ կլինի հնագույն հուշարձանների մոտերքում զետեղել ցուցափեղկեր՝ դրանց ստեղծման պատմության, մատենագրական ու պատմական, համառոտ տեղեկություններով, որոնցում ցույց տրվի, թե ինչու հատկապես այդտեղ է կանգնեցված այն, բացահայտվի շրջակայքի անցյալ ու ներկա նշանակությունը։ Այդպիսի հուշատախտակներ երեք լեզուներով (հայերեն, ռուսերեն, անգլերեն) արդեն դրված են Հայաստանի պատմական որոշ հուշարձանների մոտ։

Տուրիստական վայրերի մասին հաղորդելու, դրանց ծանոթացնելու համար անհրաժեշտ է լայնորեն օգտագործել մամուլը։ Հայաստանում տակավին չկան տեղեկագրքեր տուրիստների համար. դրանց պահանջը չափազանց մեծ է ո՛չ միայն սովետական և օտարերկրյա զբոսաշրջիկների, այլև սովետական այցելուների, հանգըստացողների շրջանում։ Լավ կլինի մեծ տպաքանակով ու որակով լույս ընծայել հուշաբացիկներ Հայաստանի պատմական վայրերի, ճարտարապետական կոթողների, ականավոր մարդկանց դիմանկարներով, գեղեցիկ, հետաքրքրական բնապատկերներով։ Թե չէ ինչի՞ նման էր, որ նույնիսկ հոբելյանական տարում՝ 1970 թ. սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին, Հայաստանում հնարավոր չէր ձեռք բերել նրա տեսարժան վայրերը պատկերող բացիկներ։

Շրջելով լեռնային այդ երկրում, մարդ հիանում է այն վիթխարի աշխատանքով, որ կատարված է նրա քաղաքներում ու գյուղերում՝ ճամփեզրերը, բարձունքներն ու սարահարթերը ծառապատելու, կանաչեցնելու համար։ Ծառերի մեծ մասը դեկորատիվ են։ Ինչ խոսք, դրանք գեղեցկացնում, բազմատեսակ են դարձնում երկրի բնությունը, սակայն, չպետք է մոռանալ, որ ամեն ինչ իր տեղն ունի։ Այսպես՝ եթե նման ծառազարդումը շատ հարմար է խոշոր քաղաքներին— Երևանին, Լենինականին, Կիրովականին, ապա քաղաքամերձ վայրերում, հատկապես գյուղերի ջրովի հողատարածություններում ու սարալանջերում (Աբովյան, Հրազդան և այլն) հարկ չկա այդպիսի ծառեր աճեցնելու։ Նման կանաչապատումը մի երկրի, ուր ամեն մի ծառ, ամեն մի թուփ կարող է տալ բարձրարժեք մըրգեր ու հատապտուղներ, հանգեցնում է միջոցների և աշխատանքի աննպատակ ծախսումների։ Այսպես, օրինակ, Արզնի № 1 առողջարանին կից ոռոգելի խոշոր անտառազանգվածում պտղատու ոչ մի ծառ չկա։ Այստեղ աճեցվում է սրնգենին, գարնանն իր սպիտակ, աշնանը՝ սև ծաղկաբույլերով, որոնք նման են հատապտղի փայլուն ողկույզների. այն հարմար է միայն այգիների, ծառուղիների և բնավ անտառային մացառուտների համար։ Նույնը կարելի է ասել և իրգայի մասին։ Այդպիսի բույսերը ոչ պտուղ են տալիս, ոչ փայտանյութ և ոչ էլ ստվերոտ են։ Ծառաստաններում և բուսաբանական այգիներում դրանք, թերևս, անհրաժեշտ են. իսկ դեկորատիվ նպատակներով, այլազանության համար, տեղ-տեղ միայն կարելի է աճեցնել սիբիրյան կպչուն ձիափուշը, որն Արզնու անտառապուրակներում ստեղծել է անանցանելի մացառուտներ։ Եթե իր հայրենիքում ձիափշի պտուղը տարածված է, օգտակար և, նույնիսկ, կոչվում է սիբիրյան խաղող, ապա արևավառ Հայաստանում, ուր կան բազում ու բազմատեսակ բարձրարժեք բույսեր ու ծառեր, դրա մշակությամբ զբաղվելու հարկ չկա։ Անտառում շատ կան նաև բազմատեսակ հացենի, ամերիկյան թխկենի և այլ ծառատեսակներ, որոնք վաղ են զրկվում տերևներից, շատ քիչ ու ոչ պիտանի փայտանյութ են տալիս։

Հայաստանը բավականին հարուստ է ջրապակաս վայրերին հարմար օգտակար ծառատեսակներով ու թփերով, որոնք, չգիտես ինչու, ինչպես հարկն է չեն օգտագործվում։ Ակներև է, որ անջրդի վայրերում լավ է աճում սոճին։ Այսպես՝ Արզնիում, Զանգվի աջ ափի երկայնքով ձգվում է սոճու պուրակը։ Երեսնամյա ուղղաձիգ այս ծառերն աչք են շոյում։ Բայց ինչպիսի՞ տեսք կտան սոճու ցանցառ տնկիներն Աբովյանում. կամ՝ հարմա՞ր են արդյոք թխկենիներն ու բարդիները Նոր Հաճն բանավանի բարձրահարկ շենքերի միջև գտնվող տարածություններում։ Ավելի լավ չէ՞ աճեցնել այդտեղ

ընկուզենիներ, որոնց հանգստավետ ստվերում կդրվեն նստարաններ...

Բուսականությունից զուրկ է Արզնու ապակետարայի գործարանի շրջակայքը։ Հնարավո՞ր չէ արդյոք բուսաբանության ուսուցիչների ղեկավարությամբ, դպրոցականների ուժերով կանաչապատել, մրգատու և արժեքավոր այլ ծառերով պատել բանավանների փողոցներն ու հրապարակները, շրջկենտրոնները... Անշուշտ, հնարավոր է։

Կոլտնտեսականների ու սովխոզի բանվորների տնամերձ օժանդակ տնտեսություններում փարթամ աճած մրգատու ծառերը սփռել են իրենց ճյուղերը նաև փողոցների վրա, և ոչ ոք ճյուղ չի կոտրում, ձեռք չի տալիս պտղին։ Հարկ է կազմակերպել, ձեռնարկել բոլոր բնակավայրերի ծառապատումը։ Մեր կարծիքով անհրաժեշտ է կրճատել քաղաքների զառիթափերի, ճամփեզրերի դեկորատիվ կանաչազարդումը, սահմանափակելով այն առանձին տեղամասերում, մեծացնել արտադրական նշանակություն ունեցող անտառամշակության ծավալը։

Ծառատունկի ժամանակ պետք է հաշվի առնել բույսի ցեղատեսակները, հողակլիմայական առանձնահատկությունները և այլ հանգամանքներ։ Հյուսիսային, մասամբ արևելյան թեքություններում, որոնք ենթակա են սակավ գոլորշիացման, պետք է տնկել համեմատաբար խոնավասեր ծառատեսակներ, իսկ հարավային, արևմտյան թեքություններում՝ չորադիմացկուն։ Որոշ թեքություններում, հավանաբար, օգտակար կլինի հիմնել այնպիսի անտառաշերտեր, ուր հնարավոր է խոտ աճեցնել։

Մի քանի խոսք Երևան—Էջմիածին գեղեցիկ մայրուղու մասին։ Նրա երկարությամբ, երկու կողմից աճում են խաղողի վազեր, տեղ-տեղ էլ դրանք երկաթաձողերի վրա են։ Սակայն կան և ամայի վայրեր (0,25—0,5 հեկտար տարածությամբ), որոնք անավարտության տպավորություն են թողնում։ Մեծ մասամբ դրանք պատահականության արդյունք են, սակայն, աղարտում են ճանապարհի տեսքը։ Այս տեղերում այգիները ճանապարհից բաժանվում են թխկենու, բարդու և այլ ծառատեսակներով, որոնք ոչ դեկորատիվ և ոչ էլ տնտեսական նշանակություն ունեն։ Դրանց մեջ, խիստ սակավադեպ, բարձրանում են գեղեցիկ, փարթամ ճյուղապըսակով ընկուզենիներ և այլ ծառեր։ Ակամա մըտածում ես. ինչո՞ւ այդ անօգուտ բուսականությունը չփոխարինել մայրուղին եզերող ընկուզենիներով և պտղատու այլ ծառերով։ Փորձը ցույց է տալիս, որ խաղողի ճանապարհամերձ այգիները բնավ չեն տուժում նման հարևանությունից։ Այսպիսով, առավել ռացիոնալ կօգտագործվեն Արարատյան դաշտավայրի բերրի հողերը։

Ինձ վիճակվել է լինել Տաջիկստանում, ուր նույնքան շատ են ժայռերն ու քարերը, որքան Հայաստանում։ Բայց այնտեղ բոլոր զառիթափերն ու թեքությունները ծածկված են սոճու անտառներով, և երբ նայում ես ծառերի անծայրածիր շարքերին, ակնապարար կանաչին, համակվում ես մարդու աշխատանքի, նրա կարողությունների նկատմամբ անսահման հարգանքով։ Հայաստանի բնակչության խտությունը տասն անգամ ավելի է ՍՍՀՄ միջինից. այդ հանգամանքը հույս է ներշնչում, որ արդյունաբերական անտառատնկումների կազմակերպման լայն հնարավորություններն իրականություն կդառնան։

Գ. Ն. ՊԵՏՐՈՎ

Տեխնիկական գիտությունների թեկնածու, հիդրոտեխնիկայի և մելիորացիայի հյուսիսային գիտահետազոտական ինստիտուտի Կազանի բաժնի վարիչ



Адрес редакции.— Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

ՎՖ 03390 Պատվեր 701 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 12900 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 13/V 1971 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաչատրյան փող. № 28։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ընտիր երկեր։ *Երեք հատորով, հ. 2, Մ., Քաղհրատ, 1971 թ., 836 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Վերջին նամակներն ու հոդվածները։ *1922 թ. դեկտեմբերի 22-ից, 1923 թ. մարտի 2-ը։ Մ., Քաղհրատ, 1971 թ., 72 էջ։*

Վ. Ի. Լենինի երկերի ժողովածու— *Մ., Քաղհրատ, 1971 թ., 496 էջ։*

*Նախատեսված է միջնակարգ դպրոցների և միջնակարգ մասնագիտական հաստատությունների համար։*

ԴՈԼԳԻԽ Ֆ. Ի.— Վ. Ի. Լենինը աշխարհի միասնության մասին։ *Մ.,* «Высшая школа» *հրատ., 1970, 124 էջ։*

*Ուսումնական ձեռնարկ բուհերի և միջնակարգ ուսումնական հաստատությունների համար։*

ԿՐՈՒՊՍԿԱՅԱ Ն. Կ.— Լենինի մասին։ *Հոդվածների ու ճառերի ժողովածու, Երրորդ հրատ., Մ., Քաղհրատ, 1971, 304 էջ։*

*Ժողովածուն պատրաստել է Վ. Ս. Դրիձոն։*

ՇԱՀԻՆՅԱՆ Մ. Ս.— Առաջին համառուսականը։ *Ժամանակագրական վեպ. «Հայաստան» հրատ., 1970 թ., 423 էջ։*

*Վեպը նվիրված է Ուլյանովների ընտանիքին։*

Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմություն. *Վեցհատորյակ, հ. հինգերորդ։*

*Կոմունիստական կուսակցությունը սոցիալիզմի ամրապնդման ժամանակաշրջանում, Հայրենական մեծ պատերազմի տարիներին, ժողովրդական տնտեսության հետպատերազմյան վերականգնման ու զարգացման տարիներին։ 1937—1952 թթ., Մ., Քաղհրատ, 1971, 736 էջ։*

Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն մամուլի մասին. *Մ., Քաղհրատ, 1971 թ., 312 էջ։*

*Այս ժողովածուով սկսվում է «Լրագրողի գրադարանի» հրատարակությունը։ Այստեղ զետեղված են Վ. Ի. Լենինի՝ մամուլը բնութագրող հոդվածներն ու նամակները, կուսակցական փաստաթղթերը. բացահայտված է Իլյիչի խմբագրական աշխատանքի հարուստ փորձը։*

Աշխարհի երկրները. *Քաղաքական-տնտեսական համառոտ տեղեկագիրք. Մ., Քաղհրատ., 1971 թ., 432 էջ։*

*Այն նախատեսված է աշխարհի երկրների արդի զարգացման հարցերով հետաքրքրվող ընթերցողների համար։*

Տնտեսական-մերողական նյութեր տարրական քաղաքական դպրոցների պրոպագանդիստների համար։ *Պրակ երկրորդ, «Հայաստան» հրատ., 1970 թ., 219 էջ։*

ԱՌԱՔԵԼՅԱՆ Մ. Հ.— Ազատագրական մեծ միսիա։ *«Հայաստան» հրատ., 1970, 452 էջ։*

*Բազմաթիվ նյութերի, արխիվային փաստաթղթերի հիման վրա հեղինակը ներկա մենագրության մեջ բացահայտել է երկրորդ համաշխարհային պատերազմում սովետական բանակի ինտերնացիոնալ, ազատագրական դերն ու էությունը և պատմական հետևանքները, ցույց տվել նրա վճռական դերը ազգերի ջախջախման ու ժողովուրդների ազատագրման գործում։*

Հայ ազգագրություն և բանահյուսություն։ *Նյութեր և ուսումնասիրություններ, Եր., ԳԱ հրատ., 1970, 203 էջ, 5 նկար-էջ։*

*Ժողովածուում զետեղված են Վ. Թեմուրճյանի Գամիրքի հայերը (պատմա-ազգագրական ուսումնասիրություն) և Եր. Տեր-Մկրտչյան Վանեցոց հարսանիքը (կենցաղագրական պատկերներ)։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍԱՐՔԸ ՆԱԽԱԶԳՈՒՇԱՑՆՈՒՄ Է ՎԱՐՊԵՏԻՆ

*Հունգարիայի ժողովրդական հանրապետությունում մի խումբ գիտաշխատողներ նախագծել են էլեկտրոնային մի սարք, որը չափում է ավտովարորդի հոգնածության աստիճանը։ Մի քանի հազար մասերից բաղկացած այդ սարքը դյուրակիր ռադիոընդունիչի չափ է և տեղադրվում է ավտովարորդի խցիկում։ Ավտոմատ կերպով համադրելով ու վերլուծելով տվյալները, այն թվացույցի վրա նշում է, թե մինչև երբ կարող է վարորդը մնալ ղեկի մոտ. կրիտիկական պահին վառվում է կարմիր լույսը։ Այդ սարքը ոչնչով կապված չէ ավտովարորդի հետ, ուստի և չի խանգարում նրան։*

## ԽՈԼԵՐԱՅԻ ԷԼ-ՏՈՐ ՎԻՐՈՒՍԻ ԿԵՆՍՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՍՆՆԴԱՄԹԵՐՔՆԵՐՈՒՄ

*Ուսումնասիրվել են Տաիլանդի, Իրանի, Ֆիլիպինների, Հնդկաստանի այն շրջանների սննդամթերքները, ուր նկատվել են խոլերայի բռնկումներ։ Չվնասված կեղևով լիմոնը, նարինջը, խաղողը, կարտոֆիլը լաբորատոր պայմաններում արհեստականորեն վարակել են խոլերայի հարուցիչներով։ Գիտնականները պարզել են, որ ցիտրուսային թթու մրգերի և պոմիդորի վրա վիրուսները շատ կարճ են ապրում։ Լիմոնի վրա՝ մեկ ժամ, նարինջի՝ մեկ օր, պոմիդորի վրա՝ մի քանի օր։ Շաքարի մեծ պարունակությամբ արմավի վրա նույնպես մեկ ժամ, թզի, չամչի՝ մի քանի օր։ Վիրուսներն ավելի երկար են մնում օսլայակիր բանջարեղենի՝ կարտոֆիլի վրա՝ 8, սոխի և սխտորի՝ 3 օր։*

*Ուսումնասիրության նպատակն է հերքել այն կարծիքը, թե էլ-տոր վիրուսը պտղի մեջ կարող է թափանցել արմատների միջով և վարակել պտուղն ու բանջարեղենն ամբողջովին։*

## «ԱՊԱԳԱՅԻ ՏՐԱԿՏՈՐԸ»

*Ճապոնական «Կումբոտա» ֆիրման ստեղծել է տրակտորի նոր մոդել, որի շարժիչն ունի 25 ձիաուժ հզորություն։*

*Տրակտորիստը շրջանակի տակ դրված երկու հեռուստացույցների միջոցով կարող է հետևել թե ինչ է կատարվում հետևում և առջևում։ Տրակտորն ունի նաև ռադիոսարքավորում երկկողմանի կապի համար, արհեստական եղանակի ստեղծման սարք և օդամաքրիչ սիստեմ։ Տրակտորը կարող է կառավարվել և հեռավորությունից։*

## ԲԱԿՏԵՐԻԱՆԵՐՆ ԸՆԴԴԵՄ ՄԵԹԱՆԻ

*Անգույն, անհամ, անհոտ, օդից երկու անգամ թեթև գազ է մեթանը՝ ածխի վտանգավոր ուղեկիցը։ Նրա 5—15 տոկոսանոց կոնցենտրացիան միանալով օդին, առաջացնում է բացառիկ ուժեղ պայթուցիկ խառնուրդ։*

*Դրա դեմ պայքարի հիմնական մեթոդն օդափոխությունը և գազազերծումն է (արհեստական եղանակով մեթանի կորզումը ածխից)։ Բայց հաճախ դժվար է լինում օդափոխել հանքը։*

*Մոսկվայի լեռնային ինստիտուտի գիտնականներն առաջարկել են մեթանի դեմ պայքարել նավթահանքերում, գազահանքերում, ածխաշերտերում, լճերում ու ճահիճներում գտնվող բակտերիաների միջոցով։ Պարզվել է, որ միկրոօրգանիզմները շատ արագ օքսիդացնում են մեթանը։ Փորձերից մեկի ժամանակ գազի 8 տոկոսանոց կոնցենտրացիան վերացվեց մի քանի օրում։*

*Մեթանի դեմ պայքարելու նոր մեթոդն այժմ ուսումնասիրվում է մեր երկրի հանքերից մեկում։*

## ՀՍԿԱՅԻ ԱՌԱՋԻՆ ԵՐԹԸ

*Բելոռուսական ավտոգործարանի դարբաններից ելավ «Բել ԱԶ—549» նոր վիթխարի ինքնաթափ ավտոմեքենան։*

*Գործարանի կոնստրուկտորական բյուրոյի աշխատակից Յու. Ի. Բեխտերևը տեղեկացրեց նոր ավտոմոբիլի հիմնական տվյալների մասին. քաշը՝ 50 տոննա, շարժիչի կարողությունը՝ 850 ձիաուժ, արագությունը՝ ժամում 60 կիլոմետր։ Մեքենայի չափերի վերաբերյալ կարելի է գաղափար կազմել նրա երկուսուկես մետրանոց անիվների տրամագծով։*

*«Բել ԱԶ—549»-ը ինքնաթափ-ավտոմեքենաների և հատկապես մեծ բեռնունակության ավտոգնացքների ընտանիքի նախահայրն է։ Դրա հանգույցների հիման վրա կստեղծվեն մի շարք այլ, մինչև 300 տոննա բեռնունակության համատեսակ մեքենաներ։*